ՍՈՒՐԷՆ ՊԱՐԹԵՒԵԱՆ

# ԿԻԼԻԿԵԱՆ ԱՐՀԱՒԻՐՔԸ



ԳՐԱՏՈՒՆ

Նշան-Պապիկեան

Կ. ՊՈԼԻՍ

1909



# ՉԱՐԻՔԻՆ ՀԱՆԴԷՊ(*)



## (ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ)



*Կիլիկեան աղէտները մեր ազգային գոյութեան ամենէն ողբատըխուր ճգնաժամը կ'երկնեն այս պահուս, անոր համար մա-նաւանդ որ Հայութիւնը հազիւ թէ ազատ ու ապահով կեանքի մը կարելութեան հաւատալ սկսած, երբ իր նորածին յոյսին սրտաշարժ մխմխութեանը մէջ բրտօրէն յանկարծակիի կուգայ եւ ինքզինքը նորէն դէմ յանդիման կը գտնայ նահատակութեան իր վաղնջական ճակատագրին հետ, ի զուր կը փնտռէ այս անգամ յոյսի պատառ մը որ սնունդն ըլլար իր մահամերձ գոյութեան, եւ ուրկէ կարենար, հոգիին ակռաներովը, քաշել, փրցնել պէտք եղած ուժը՝ կարենալու համար տանիլ իր անհնարին խաչը, ընդունիլ իրեն եղած այս ահաւոր ու ա՛լ աւելորդ զրկանքը։*

*Կը զգա՞ն արդեօք մահացու անձկութիւնը, շուարումը, հոգիի խուճապական փախուստը սա դատապարտուած ժողովուրդին, որ փրկութեան բոլոր անողոք դուռներուն զարնելէ զարնուելէ պարտասած ու ջախջախուած, բոլոր ելքերուն հետապնդուելէ խոնջած, պատրանքի բոլոր հորիզոններէն հիասթափած, յուսալէ յու-*

(*) *Կիլիկեան Արհաւիրքին իսկական պատճառներուն այս վերլուծումը Նախապէս Ֆրանսերէն հրատարակելու առաջադրութեամբ գրուած է Սուրէն Պարթեւեանի եւ Միքայէլ Կիւրճեանի աշխատակցութեամբ։* Ծանօթ. Հրատարակչին

Բ

սահատած, Սահմանադրութեան նորածագ արեւին տակ իր վէրքերը չորցնելու եւ դարմանելու տեղ մը, հանդրուան մը գտած ըլլալ կը կարծէր, եւ որուն բազմախոց կուշտին յանկարծ նոր վէրքեր փորելով, զայն կը բռնադատէին ուրիշ ապաւէն մը փնտռելու, ուրիշ տեղ փոխադրելու իր յոյսը, երբ ան ոչ այլ ինչ կրնար տեսնել իր հրմշտկուած, խոշտանգուած գոյութեան առջեւ, եթէ ոչ անդունդ, եթէ ոչ գերեզման:

95-96ի աղէտները Հայ ազգին կողմէ կրուեցան այն մարտիրոսական արիութեամբը, տոկունութեամբը զոր իրեն կուտար իր «մօտալուտ» փրկութեան կեցուցիչ հաւատքը: Այսօր, փրկութեան յոյսը չէ, այլ 10 ամիսներէ ի վեր դաւանած, երկրպագած կարծեցեալ փրկութիւնն իսկ է որ զինքն ի կորուստ կը մատնէ ա՛հա, զինքը անակնկալ կերպով կը նետէ վերջնական ողջակիզումներու խարոյկին վրայ, անյուսութեան գիշերի մը մէջ:

Արդարեւ, ո՞ւր, որո՞ւ դիմել, ո՞ր կողմը դառնալ...: Հին Թուրքիան, իր հոգեվարքի պարբերութիւններուն մէջ, ուժասպառ Հայուն արիւնովը կը գինովնայ տակաւին եւ կ'ուզէ կործեւ վերկենցաղիլ. Նոր Թուրքիան, անկարող հինին եղեռնախառն մոլուցքը զսպելու, անկարող իր ամէնէն անկեղծ ու հարազատ եղբայրը պաշտպանելու Հայուն մէջ, տակաւին կասկածել ի տեսակէտներէ կը թուի առաջնորդուիլ եւ թոյլ կուտայ որ զոհերու, նահատակներու կոչկոճման այս եղերական վայրկեաններին իսկ՝ դահիճները փաստաբաններ գտնան իր շարքերուն մէջ, եւ մեռածներին ու վիրաւորողները դաժանօրէն զրպարտուին զանազան աւազակելներով եւ վարկածներով, որոնց արեան գինը Հայ ազգը պէտք եղածէն աւելի վճարած էր, բաւէ՛:

Ի՞նչ կը մնայ ուրեմն. հորիզոններէն անդի՞ն նայիլ եւ արտաքին միջամտութի՞ւն սպասել...: Բայց Թուրքիոյ Հայերը շատոնց այդ կողմը տեսած էին շիջելափառ մարիլը քաղաքակիրթ արդարութեան, քրիստոնէական մարդասիրութեան շողշողուն իտէալներուն, եւ ա՛լ ոչ մէկ գնով յանձն պիտի առնէին կաթիլ մը արիւն իսկ թափել այդ խաւարած երկինքէն վերադարձած ո՛եւէ նշոյլի մը սիրոյն:

Հայ ազգը, ապշեցուցիչ անյիշաչարութեամբ մը, մոռնալ ուզած ու մոռցած էր իր անցեալ դժոխքը, ներած էր, Նոր Թուրքիոյ ախոյեաններուն հետ խանդավառագին եղբայրակցութեան վսեմ փարումի մը մէջ, բոլոր զրկանքն ու զուլումը զոր տեսած էր երէկուան Թուրքիայէն: Ան իր փլփլած տունը վերաշինելու, իր

քայքայուած առողջութիւնը կազդուրելու միայն կը խորհէր, ապրիլ, պարզ, չոր ու ցամաք ապրիլ մը միայն կ'երազէր ...: Ու այս ժողովո՞ւրդն է, իր կենսական ուժերուն մէջ աղէտալիօրէն նուազած, իր արժանապատուութեանը մէջ նահանջած, իր բաղձանքներուն մէջ իսկ պզտիկցած, չքացած այս ժողովո՞ւրդն է զոր կ'ուզեն, անգամ մըն ալ աշխարհի պէս — աւա՛ղ, ամօթով կ'ըսենք — մորթուած ատենինին, ապստամբի ամեհի ու դաժան կեցուածքով մը ցցել ներկայացնել, կարենալու համար չքմեղել անգամ մըն ալ անոր ցամքած արիւնաքամ կողերուն վրայ կատարուած անկուշտ ջարդաղի իրենց գազանային գործը:

Ու կը սոսկանք հաստատել թէ զրպարտողներն ամէնքն ալ հին Թուրքիոյ արարածները չեն:

Եւ ի՞նչ կ'ըսեն անոնք:

Ճի՛շդ այն վայրկեանի [illegible] ուր Համիտեան կառավարութիւնը Հայերու սիսթեմաթիկ բնաջնջումը կ'արդարացնէր, ընդունելով զայն իբր անհրաժեշտ միջոց մը ու պայման մը Տէրութեան անվթար պահպանումին: Հայկական անջատողականութեան, հայկական անկախութեան ծթուած ու սնանկ վարկածն է որ կրկին երեւան կ'ելլէ իր ակնապարար ուժովը եւ այս անգամ կը զինէ իսլամութիւնը հայաբնակ այն գաւառներուն որոնք ողջ մնացած էին 95-96 ի արեան ընդհանրական տուրքէն եւ յարաբերաբար անդորր ու բարեբաստ ապրած մինչեւ հին րէժիմին յետին վայրկեանները, — եւ ատիկա անո՛ր համար որ Հայերը, Հայաստանի վերին նահանգներուն մէջ իրենց երազները իրականացնելէ յուսահատած, կ'ուզեն եղեր Կիլիկիոյ ափերուն վրայ ձեռնարկել անոնց իրագործումին, ինչպէս որ Ատանայի Նոր-Թուրք թերթը, Իթթիսալ, — ահաւոր ինքնամատնութեամբ մը որ ահաւոր ամբաստանութիւն մը ըլլալ պիտի ուզէր, — խոստովանեցաւ ճի՛շդ այն ատեն երբ ի կատար կը հանուէր Ատանայի հաւաքական Եղեռնը:

Ի՞նչ ըրած էին Հայերը այսպիսի աղետաբեր կասկած մը հրաւիրելու համար իրենց վրայ:

Հայերը իսլամներուն աչքին մեծ յանցանքը, ոճի՛րը գործած էին հաւատալու Սահմանադրութեան, լրջօրէն առնելու անոր հաւասարութեան ու արդարութեան մեծաբարբառ խոստումներն ու հռչակումները: Այդ հաւատքը բնականաբար իրենց վարմունքին, կեցուածքին, ժէսթերուն եւ նայուածքներուն մէջ ի յայտ պիտի գար հանդէպ դրացի Իսլամներուն եւ զիրենք անհանդուրժելի պիտի ընէր անոնց, անոր համար մանաւանդ որ երէկուան գետնամած ու դողահար ստրուկին այսօրուան ազատ քաղաքացի

## Դ

փոխարկումը յեղակարծօրէն կատարուեր էր, եւ իսլամ մտայնութեան, իսլամ խղճմտանքին համար անընդունելի, անըմբռնելի եւ ընդվզեցնող էր այս հրաշալի վիճակափոխութիւնը։ Իր դարաւոր տիրապետի, բռնաւորի ժառանգական, եւ Համիտեան րէժիմէն անհեղօրէն քաջալերուած բնազդներուն բոլոր ուժովը՝ դրացի իսլամը կը մերժէր կեավուրին հետ հաւասարութեան Սահմանադրածին իրականութիւնը։ Իսլամութեան սրբապիղծ նուաղութիւնը, նուաստացումը կը հաստատէր քրիստոնէին, ր ա ե ա յին մինչեւ իրեն այդ քաղաքական ու ընկերական բարձրացումին մէջ։ Կիրքով եւ ատելութեամբ կուրցած, իսլամը տեսաւ թէ Սահմանադրութիւնը, որ իր ուրիշները գերելու կեղեքելու տարապայման ազատութիւնը կը սանձէր, որ իրմէ ոչ ակնկալուած ոչ ալ բաղձացուած էր, որ իրեն ոչինչ կը բերէր շօշափելիօրէն շահաւոր, իրապէս Հայուն համար եղած էր, Հայուն միայն ուզածն էր։ Ուրեմն, մտածեց ան պարզօրէն, այն նպատակը որուն համար Հայը տարիներով աշխատեր, տառապեր ու հալածուեր էր, որուն անունով, որուն պատրուակով իսլամը անոր դահիճն էր եղեր, այդ նպատակը իրագործուե՞ր էր ուրեմն։ Հայը իր «մուրատ»ին հասե՞ր էր, քանի որ ան այնքան ուրախ էր, քանի որ ա՛լ չէր վախնար իրեն հետ հաւասարէ հաւասար վարուելէ։

Ասիկա է Անատոլուի իսլամին հոգեբանութիւնը Հայերուն հանդէպ. ասիկա է Կիլիկեան Արհաւիրքին պարզ, հասարակ, վրան-բաց գաղտնիքը։ Ասիկա կ'ամբողջանայ կողոպուտի, աւարառութեան ու ըլկումի առհաւական մարդախանձ ախորժակներուն գոյութեամբը իսլամ հոգիին մէջ որ չի կրնար հանդուրժել, ո եւ է տեղ, իր քրիստոնեայ դրացիներուն, մանաւորապէս Հայուն, տնտեսական բարգաւաճումը, անոր խաղաղ տիրացումը բարօրութեան, անոր ալւոր աղջիկները, անոր հանգստաւէտ տուները, անոր շէն այգիներն ու ագարակները, անոր լիառատ խանութները, անոր ասկելից դրամարկղները, — շինարար քաղքենիի եւ քրտնաջան գեղացիի անոր արդար վաստակը, բերքն ու արդիւնքը։ Եւ Ատանայի դաշտը, որ իր երկրաբուղխ շռայլութեանը մէջ ցեղային խտրականութիւն չէր դներ իր արգաւանդ մայրութեանը դիմող զաւակներուն, հայ ըլլային թէ թուրք, այդ պատուական, այդ օրհնուած հողը բարիքով, լիութեամբ եւ առատութեամբ կ'ողողէր կոր Հայուն ձեռքերը, անոր ճակտէն իր վրայ թափուած աշխատանքի նուիրական քրտինքին փոխարէն։ Ու ճի՛շդ այն տարին ուր հունձքի ու բերքի անօրինակ, աննախընթաց առատութեամբ

մը էնեա պիտի ըլլար Հայը, պէ՛տք էր որ կորսնցնէր ան ունեցածն ալ ունենալիքն ալ, ու մախիրի եւ արեան ճապաղիքներու վրայ նստէր։ Աւելցուցէ՛ք ասոնց վրայ խլամ այս զգացումները մութի եւ լռութեան մէջ վառ ու արթուն պահող Ըլտըզի յետաշրջական դիւային ուժը որ Ապրիլ 13 ի միապետական հարուածին, ժամանակը հասած նկատեց պայթեցնելու դաւը որ երկարաշունչ կերպով պատրաստուած էր ձեռամբ տեղական կառավարութեան, սկսեալ վալիէն՝ ճէվատ պէյ, Համիտի նախկին թիկնապահ մը, մինչեւ Քօմիսէրը՝ Ջօր Ալի, Յուլիս 11 ին խայտառակաբար ինկած ցած բոլիս մը։

Բայց ի՞նչպէս մեկնել աղէտքին հանդէպ կեդրոնական կառավարութեան երկդիմի դիրքը, Ատիլ պէյի քաշած եւ ստացած դայթակղեցուցիչ հեռագիրները, անոնց շնորհուած պաշտօնական վարկը, Հայ դիմումներուն տրուած պատասխանները, բոլոր այն նշանները, խռովիչ երեւոյթները, ի մի բան, որ Հայը ապստամբ եւ նախայարձակ ցոյց տալու հակում մը, տրամադրութիւն մը ի յայտ բերին, եւ որոնք չարաչար մտածել կուտան մեզի թէ Նոր Թուրքիոյ վարիչներն ալ Կիլիկիոյ կործանումին մէջ հայկական «մեղաւոր ձգտումներու» արիւնոտ քաւումը եւ բարեպատեհ մահացումը կը թուին տեսնել։ Միթէ կարելի՞ էր որ կեդրոնական կառավարութեան մէջ գտնուէին այնքան անիրազեկ եւ բարեմիտ մարդիկ որոնք կարենային պահ մը հաւատալ թէ ափ մը Հայեր, քաղաքական ոեւէ յետին-միտքերով, համարձակին նախայարձակ ըլլալու իրենցմէ անհամեմատ կերպով ստուարաթիւ ու զօրաւոր, պաշտօնապէս եւ անպաշտօնապէս զինուած խլամ տարրին դէմ....։ Բայց մինչ Հայերը անդին հուրի եւ սուրի մատնուած էին խուժդուժօրէն, կեդրոնական կառավարութիւնը, ասդին, հաւատալ կը ձեւացնէր թէ ապստամբներ էին անոնք, — թէ ջարդուողնե՛րն էին որ կը ջարդէին։

Եւ ապստամբական ի՞նչ ահեղ պատրաստութիւն տեսած, ռազմական ի՞նչ միջոցներ կրնային տրամադրած ըլլալ Հայերը, այսպիսի կասկած մը ներշնչելու համար։

Իրենց առօրեայ զբաղման, շուկայի ու դաշտի իրենց աշխատանքներուն անքոյթ պարապումին մէջ յանկարծակիի գալէ, ջարդուելէ կոտրուելէ վերջը, Ատանայի մէկ քանի թաղերուն մէջ պաշարուած իրենց գոյութիւններուն սպառնացող եղերական ըստոյգ մահուան դէմ յուսահատութեան քաջութեամբը եւ իրենց կարգ մը ողորմելի զէնքերովը, — զորս Սահմանադրական ազա-

տութեան շնորհիւ ճարելու կանխահոգ մտածումն ունեցեր էին ոմանք, — երեք օրուան իրենց ինքնապաշտպան դիմադրութիւնն էր որ պիտի կազմէր ապստամբական-յեղափոխական պատրաստութեան մը բաղձացուած ապացոյցը, — դիմադրութիւն որ հրացանի մէ՛կ հարուածով մը իսկ չի շարունակուեցաւ երկրորդ եւ անհուսագոյն կատարածին :

Այո՛, որովհետեւ Հայերը ինքնապաշտպան ըլլալու իրաւունքը չունէին Թուրքիոյ մէջ՝ իրենց կեանքին, պատուոյն եւ ինչքին վրայ յարձակող խուժանին դէմ : Սահմանադրական Թուրքիան ալ գոգցես նուիրագործել կը թուի այս հակամարդկային ու հականասնական սկզբունքը :

Տո՛ւր երկիր, ուր ամբողջ ժողովուրդի մը կոտորումին, իր կիներուն, աղջիկներուն ու ծերերուն խողխողումին իբր արդարացում, իբր պատրուակ պիտի առնուէինք ընդունիլ ապստամբական դիտումներ եւ ձեռնարկներ, եթէ իրականութեան մէջ գոյութիւն ունենային անոնք, — մինչ եթէ գոյութիւն ունենային անգամ կառավարութիւնը ուրիշ բան պէտք չէր որ ընէր՝ բայց եթէ խռովարարները, ապստամբները, յեղափոխականները գտնել եւ զանոնք դատել հարկ եղած խստութեամբը . . . : Բայց ամենաբացարձակ ճշմարտութիւն մըն է, — եւ հրաւէր կը կարդանք ո՛եւէ զինուորական կամ քաղաքային ատեանի հակառակը ապացուցանել, — թէ Հայ Գօմիթէները, Սահմանադրութենէն առաջ, անպայման ու անվերապահ կերպով, դադրած էին դաւադրական ամէն տեսակ գործունէութենէ, եւ ամենէն խանդավառ գործաւորները հանդիսացած՝ Սահմանադրական Թուրքիոյ վերածնութեան, ամենէն ջերմեռանդ երդուեալները հայեւթուրք եղբայրակցութեան դաշինքին : Հայկական անջատողականութիւնը, որ համիտեան րէժիմին տակ իսկ, անկախութեան, թագաւորութեան ո՛ եւ է երազ չէր փայփայեր եւ տարրական բարեկարգութեանց իրականացումը միայն կը ձգտէր, Յուլիս 11 էն հանդիսաւորապէս վերջ կը գտնէր Սահմանադրութեան հռչակումովը : Երբ Թուրքիան ազատ ու ժամանակակից նոր րէժիմ մը կը փորձարկէր, ուր Հայերը իրենց ամենապարզ, ամենատարրական պահանջքներուն լիակատար գործադրութիւնը կը յուսային վայելել ընդհանուր, խանդավառ անկեղծութեան այդ երջանիկ պահուն չէր որ յետադարձ տարօրինակ նպատակ մը պիտի գար նորէն՝ յղանած, հոգին բերանը եկած այս հէգ ազգը խելայեղօրէն վազցնել ունայն եւ կործանարար ցնորքներու ետեւէն :

Եւրոպական դիւանագիտութենէն խայտառ լքուած մատնուած, եւ անկէ ա՛լ յոյսը կտրած Հայութիւնը այս անգամ, իր անհուն կսկիծին մէջ, չունեցաւ նոյն իսկ մխիթարանքը՝ Եւրոպայի կարծիքին եւ մամուլին կարեկից համակրութիւնն, ու իրեն պատահած անլսելի դժբաղդութեան ճիշդ եւ յստակ հասկացողութիւնը վայելելու: Եւրոպան անտարբեր ու ձանձրացած ականջով մը լսեց հայկական կոտորածներու այս նոր գոյժը. եւ ինչպէս Ժուռնալի քրոնիկագիրը Հ. Մառէ, իր Վայրենիի մը Նօթատետրին մէկ զմայլելի էջին մէջ կը բողոքէր, Հայերը ա՛լ ջարդուելուն չափը կ'անցնէին կոր, Հայերը «ա՛լ էրկան կ'ընէին կոր», ա՛լ անտանելի կը դառնային կոր...:

Իսկ աւելի տխուր է հաստատել վարմունքը մամուլին, որուն մէկ կարեւոր մասը արձագանգ տուաւ խեղաթիւրուած լուրերու, անճիշդ եւ ձգտումնաւոր հաւաստումներու, որոնք բնաւ թէ ունէին, եթէ ոչ արդարացնելու կատարուած բարբարոսութիւնները, գոնէ բացատրելու ջանանք, անոնց պատասխանատուութիւնը չափով մը բեռցնելով աղէտեալ Հայուն ուսին, եւ մոլորեցուցիչ ծաւալում մը տալով այսպէս՝ մեղապարտ ոճրագործներուն անկարելի չքմեղանքին համար իսկ յերիւրուած ստայօդ պատրուակներու:

Եւ այսօր, ո՛չ միայն չունինք քաղաքակիրթ աշխարհի խղճմտանքէն բղխած համակրութեան եւ պայքարի խօսքերու սփոփանքը, այլ եւ ստիպուած ենք տաժանքը յանձն առնել Եւրոպական մամուլին մէջ սպրդած անճշդութիւնները ուղղելու, հիւրընկալուած ձրի զրպարտութիւններուն դէմ բողոք բառնալու:

Թէ Հայերը անջատական դիտումներ կը սնուցանեն, — իրենց դէմ արձակուած այս գլխաւոր ամբաստանութեան կատարեալ ժխտումն է՝ քաղաքական [Է]կալ կուսակցութիւններու փոխուած իրենց նախկին յեղափոխական ծրագիրներուն եւ ընդհանուր ազգին Սահմանադրութենէն ասդին ունեցած ընթացքն ու գործունէութիւնը, որ կրող նորահաստատ կարգին ամրապնդման եւ արդիւնաւորման ու խաղաղ զարգացման ճիւղերու մէջ կը կայանար սակ:

Հայերը զէնք են առեր, այո՛. եւ Ատանայի խուժանին առաջին յարձակման դէմ հայ քաղաքացիներու սրտոտ փոքրամասնութեան մը զինեալ դիմադրութիւնը հաստատեց զայդ: Բայց այդ քանի մը զէնքերը եւ քանի մը կռուողները, ինքնապաշտպանութեան նուիրական գործին համար իսկ ողբալիօրէն անբաւական, ապստամբական պատրաստութեան ստուերն անգամ չէին

ներկայացներ։ Ինչ որ պատահեցաւ, կ'արդարացնէ միայն՝ եղերականօրէն՝ Հայոց մէջ ի հեճուկս Սահմանադրութեան յարատեւող այն որչա՛փ իմաստուն ու մարգարէական երկիւղը կրկին ջարդուելու վտանգին, որուն հանդէպ չէին կրցեր սակայն պէտք եղածին չափ կանխահոգ ըլլալ։

Թէ Հայերը գրգռած ըլլան իսլամ խուժանին ատելութիւնն ու մոլեռանդութիւնը իրենց շարժումներովը, խօսքերովը, պատկերներովն ու ներկայացումներովը, ինչպէս Ժուռնալի եւ Ֆիկառօի պատահական թղթակիցները կը տեղեկագրեն օտարազգի մակերեւութային դիտողներէ լսելով, ատիկա բացարձակապէս անհիմն է։ Թրքական իրերուն մօտէն տեղեակ ո՛ եւ է անձ չանգիտեր թէ ոչ մէկ տեղ Թուրք խուժանը, որքան ալ գրգռուած ըլլայ, ջարդելու չելլար ինքէ՛ն՝ եթէ նախապէս տեղական իշխանութեանց քաջալերանքը չունենայ եւ մեղսակցութիւնն ու աջակցութիւնը չապահովէ։ Առանց ատոր ջարդ եղած չէ Թուրքիոյ մէջ եւ չի կրնար ըլլալ։

Գալով Հայոց վերագրուած գրգռութիւններուն (provocations), անոնց նանրութիւնը ապացուցանելու համար կը բաւէ հաստատել թէ այդ այնքան մեղադրուած պատկերներն ու ներկայացումները, որոնց մօթիֆները փոխ առնուած են ազգային պատմութեան աւանդավիպային շրջանէն, որ ատեն աշխարհակալ Թուրքին սուրը չէր փայլատակած դեռ Հայ աշխարհին վերեւ, — այդ ողորմելի ու միամիտ վիմագրութիւնները հայ տուներուն պատերը կը զարդարէին, ուրուցիկ ռօմանթիզմով այդ պարզամիտ, անմեղունակ թատերգութիւնները հայ բեմերու վրայ կը խաղցուէին արձակ համարձակ ասկից 20-25 տարի եւ աւելի առաջ, երբ Հայերը պետական մասնաւոր եւ արտասովոր հալածանքի չէին ենթարկուած իբր օրէնքէ դուրս եւ Տէրութեան անհաւատարիմ տարր։ Ինչ որ բռնապետական Թուրքիան կրցեր էր թոյլատրել ու հանդուրժել, սահմանադրական ազատ Թուրքիան ոճի՞ր մը պիտի ընէր Հայերուն։ Ասոնք իբր պատրուակ անգամ չեն կրնար ըմբռնուիլ, մնաց որ Հայ Քօմիթէները, Թուրք դիւրազգածութեանց համար իրենց փափկանկատութիւնը ծայրայեղութեան տանելով, խնամքն ունեցած էին՝ Սահմանադրութեան վաղորդայնին՝ յորդորելու պարզամիտ ժողովուրդը որ ետ կենայ այդ անմեղ ցոյցերէն անգամ։

Ատանայի առաջնորդ՝ Մուշեղ Սրբազանը իբրեւ խռովարար եւ յեղափոխութեան քարոզիչ ներկայացուած տեսնելով Ֆիկառօի եւ Ժուռնալի թղթակցութեանց մէջ, չենք կրնար դառն ծիծաղէ մը արգիլել զմեզ։

Կ'երեւի՝ մեր բարեպաշտօն եւ երկիւղած Ֆրանսայի միսիօնարները, որոնցմէ թղթակից սպաները առած են իրենց տեղեկութիւնները, — եւ որոնց զմայլելի անձնուիրութեանն ու նախախնամական պաշտպանութեանը, պէտք է ըսել, պիտի յաւիտենապէս պարտինք հազարաւոր հայ կեանքերու փրկութիւնը, — կ'երեւի թէ այդ սպատուական Հայերը կը դատեն զՄուշեղ Սրբազան այն ընական խորշանքին մէջէն զոր իրենց կ'ազդէ իր կրօնական հանրածանօթ ազատամտութիւնը, եւ սխալ հետեւութեամբ մը ( déduction ) կը վերագրեն անոր քաղաքական կարգին մէջ համապատասխան subversif գաղափարներ եւ ձգտումներ: Որչա՛փ սխալ դատում:

Հայ բարձրաստիճան կղերին այս ամենէն երիտասարդ այլ պատկառելի ներկայացուցիչը, այս ժրաջան ու անձնուէր հովիւը որուն կեանքը հոյակապ արդիւնաւորումներու շարք մը եղած է ամբողջ, հին ահաւոր ռէժիմին տակ տուած է իր քաղաքական իմաստութեան եւ շրջահայեաց ազգասիրութեան բովանդակ չափը, յաջողելով, ի գին անլուր երկանց, պահել պահպանել իր ընդարձակ հայաշատ թեմը համիտեան «չար» էն, ստոյգ կոտորածներու վտանգը քանիցս հեռացնելով անկէ, շնորհիւ, մէկ կողմէն, այն վստահութեանն ու յարգանքին զոր իր ուղղամտութեամբ ու բարձր արժանեօք կրցեր էր ներշնչել նախորդ կուսակալ Պահրի փաշայի, եւ միւս կողմանէ, Հայ քօմիթէներու վրայ բանեցուցած իր խոհական ու բարերար ազդեցութեամբը: Եւ այս մա՞րդն է, հին եւ նոր ռէժիմներու ներքեւ, ամէն ատեն եւ ամենուրեք, իրեն յանձնուած հօտին խաղաղ զարգացումին, մտաւոր ու տնտեսական բարգաւաճման միայն աշխատող, խորհող այս ճշմարիտ առաջնո՞րդն է որ պիտի ելլար, Սահմանադրական ազատ Թուրքիոյ օրով յիմարօրէն փորձէր այն ազգավնաս գործը զոր բռնապետութեան օրով զգուշացած էր ընելէ:

Բարոյական անճշդութեանց քով, կան իրողութեան բացարձակ անճշդութիւններ, պօռացող սխալներ: Ասոնց ամենէն խոշորը Ֆիկառօյ թղթակիցը կ'ընծայէ մեզի հաւաստելով թէ «Հայ Լուսաւորչականաց Առաջնորդը փախեր է ջարդերու միջոցին»: Բովանդակ հայ հասարակութիւնը գիտէ թէ Մուշեղ Սրբազան, Աղէտքէն գրեթէ ամիս մը առաջ, Եգիպտոս գացած էր Կիլիկիոյ մէջ անխոնջ կերպով կատարած իր խաղաղ զարգացումի, մտաւորական ու նիւթական շինարար գործը շարունակելու: Մուշեղ Սրբազան Եգիպտոսի հայ ունեւորներուն գացած էր դիմել՝ հաւաքելու համար

Ատանայի մէջ երկրագործական վարժարանի մը հիմնարկութեան համար հարկաւոր եղած դրամագլխին մէկ մասը։

Ու այնքան քիչ փախուստներուն միջոցին, որ առաջին ջարդին գայթը առնելուն պէս, փութացուց իր մեկնումը եւ անյապաղ ճամբայ ելաւ դէպի հոն ուր պարտականութեանց ամենէն հրամայականը կը կոչէր զինք։ Ու Թուրք կառավարութիւնն էր որ արգիլեց խստիւ իր մուտքն Ատանա, իրեն միայն յայտնի պատճառներով։ Ու իր մարտիրոսացած հօտին մահը սրտին մէջ, Մուշեղ Սրբազան ստիպուեցաւ վերադառնալ Եգիպտոս, ուրկէ չի դադրեցաւ բնաւ հեռագրով եւ նամակով խնդրելէ, պահանջելէ Ատանա իր երթին դիւրացումը։

Բայց երբ ինչ ինչ թերթերու տպած անճշդութիւններուն եւ զրպարտութիւններուն դէմ կը գրենք ցաւած սրտով, պարտականութիւն մըն է մեզ համար յիշել Թանի 8 Մայիս թուակիր ծանրախոհ խմբագրականը, որ ի յայտ կը բերէ պատահած դէպքերուն ամենէն ճշգրիտ հոգեբանութիւնը եւ հայկական նոր ցաւին ամենէն արդար ու ազնիւ համակրողութիւնը զոր կարենայինք, զոր իրաւունք ունենայինք ակնկալելու մամուլ Եւրոպայէն, որ, առ ի չգոյէ ուրիշ բանի, գոնէ՛ բարոյական արդարութիւն մը պարտական է մեզի, գոնէ խնայելու է մեզի, չարաչար ջարդուելէ վերջ, իր մամուլին մէջ անգթօրէն զրպարտուելու յաւելուածական ցաւը։

Այս բոլորէն վերջ, սակայն, անգամ մըն ալ աղէտեալ Հայերը ուրիշ ելք չեն տեսնար, ուրիշ ճար չեն գտնար, չեն ուզեր գտնալ՝ բայց եթէ սպասել որ արդարութիւն ըլլուի իրենց Նոր Թուրքիոյ վարիչներուն կողմէ, որոնց իրենք ալ կը բանան այն վարկը զոր Պ. Բիշոն, Փրանսական խորհրդարանի բեմէն, յանուն դիւանագիտական Եւրոպային, կը շնորհէր Ժէօն-Թիւրք կառավարութեան։

Վերջին միակ յոյսերնիս դրած ենք ամբողջովին անոր վրայ. եւ կը զգանք այդ յոյսին զօրանալը երբ կը խորհինք որ թէական հայասիրութենէ մը կամ մարդասիրութենէ մը աւելի՝ իրենց Թուրք հայրենասիրութիւնը միայն, հոյակապօրէն ապացուցուած, պիտի բաւէր որ ի դերեւ չելլար մեր գերագոյն յոյսը ամբողջական արդարութեան՝ որուն իրաւունք կուտայ մեզի՝ մեր անսահման աղէտը։



# ԿԻԼԻԿԵԱՆ ԱՐՀԱՒԻՐՔԸ

## ԴԷՊԻ ԿԻԼԻԿԻԱ

—— · ——

Իզմիրի ծոցէն, 13/26 Ապրիլ

Վեց ամսուան ընթացքին չորրորդ մեկնումս է Իզմիրէն։ Բայց այս անգամ որքան տարբեր ու յեղակարծ կերպով կը մեկնիմ... Առտուն մտքէս իսկ չէր անցներ, թէ իրիկուան ճամբայ ելած պիտի ըլլայի դէպի Կիլիկեան ափերը։ Ու յաջորդ օրուան համար կը պատրաստէի Պոլիս վերադառնալ։ Կէսօրին հասած նամակ մը ուրիշ ուղղութեամբ կը վճռէ մեկնումս։ Եւ հազիւ ժամանակ կը գտնեմ պայուսակ մը կապելու և շունչս «Assouan»ին վրայ առնելու, առանց կարենալ մնաս բարովս ըսելու բարեկամներուս։

«Մեկնիլը քիչ մը մեռնիլ է» զրուցեր են։ Տարտամ այլ թելադրական արտայայտութիւն։ Մեկնումները խռովքը կուտան վերջացող բաներու։ Բայց ինծի կը թուի, թէ անոնք վախճանական վայրկեաններու հոգեկան սրատեսութիւնն ալ կուտան մեկնողին, մանաւանդ ծովու ճամբէն մեկնողին, անդրադառնալու համար ապրուած կեանքի իր վերջին պատառին և զայն ամբողջապէս, մինչեւ իր յետին մանրամասնութեանց

մէջ վերյիշելու, վերապրելու։ Միջոցը, որ կը բաժնէ քեզ ցամաքէն, կարծես անոր ու քու միջեւ կը դնէ մշուշ մը, որուն մէջէն աւելի յստակ կը տեսնես թողուցած իրականութիւնդ, աւելի պայծառութեամբ կ'ընդգրկես եւ աւելի արդարութեամբ կը դատես զայն։ Կարծես հողին բոլոր կիրքերը կը մեղմանան, կը նուաղին, բոլոր պատկերները կ'իտէանան, բոլոր դէմքերը կը ժպտին ու կ'աղուանան, բոլոր նայուածքները կ'աղերսեն ու կը ներեն...։ Այսպէս, այս անուշ ու խանդաղատիչ տպաւորութեան տակ, մեկնած եմ ամէն անգամ Իզմիրի աղուոր ծոցէն։ Այսպէս ձգեցի զայն, դեռ երկու ամիս առաջ, Եգիպտոս երթալուս։ — Փետրուարի զմայլելիօրէն ջինջ գիշեր մըն էր։ Լուսնկան, առկախ կանթեղի մը պէս, կը շողար Իզմիրի գլխուն վերեւ, որ իր բիւրաւոր լոյսերով վիթխարի տիատեմի մը ձեւն առեր էր։ Ու ամբողջ այդ լոյսի սեպ զանգուածը կը ցոլանար, կը հայելիանար այս պաշտելի ծովախորշին մէջ։ Գիշերուան Իզմիրին այս դիւթական տեսիլքէն յափշտակուած՝ աչքերս կը պտտցնէի Քորտոնին լուսաշող երիզէն մինչեւ Կէօզթէփէի մթասքօղ անորոշութիւնները։ Եւ Իզմիրեան ընտանի սիլուէթներ՝ հրաժեշտի հուսկ ողումով մը՝ կը տողանցնէին մտածումիս առջեւէն...։

Բայց այս անգամ անտարբեր նայուածքով մըն է որ նաւուն կամրջակէն կը դիտեմ Իզմիրը, պարպուած, գրեթէ կրաւորական նայուածքով մը, կարծես սա շքեղ համայնապատկերը բան մը չըսէր ինծի, տրտում ու մտերիմ բան մը, կարծես աչքերս ու հոգիս չուզէին լեցուիլ կարօտովը սա սիրուած եզերքներուն, այլ՝ ընդհակառակը՝ կարծես անոնք ուզէին՝ դեռ չի հեռացած՝ հոս, այս երջանիկ ծոցին մէջ իսկ դուրս թափել բոլոր քաղցրութիւններն ու գեղեցկութիւնները, զորս անկէ




ԱՏԱՆԱՅԻ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐԸ

վայելեցին և որոնցմով երկարօրէն հմայուեցան, գինովցան, դուրս թափել վերջին ցոլքերը հեշտալիօրէն կըրուած թմլանքին, աւելի կոյս ու անխառն անաղտութեամբ մը կարենալ սեւեռուելու համար աղէտքի ու աւերի դաժան, արիւնոտ ու աղեխարշ պատկերներուն, որոնք կը սպասեն անդին, Կիլիկեան արհաւրամած հորիզոններուն տակ...։

Հեւասպառ անձկութեան, խելայեղ սպասումի, փոխնիփոխ յոյսի ու յուսահատութեան այս դալարող, խենդեցնող օրերուն՝ ո՞վ սիրտ պիտի ունենար Իզմիրի առջեւ յափշտակուիլ յամենալու։ Այս հանդարտ ու յանկուցիչ տեսարանը ի՞նչպէս ազդէ ներսիդիս խառնուող խռովակոծ զգացումներուն։ Փոթորիկի շրջափակ մը չընծայեր սա դողարիկ նաւահանգիստը, այլ խաղաղութեան ու գուցէ լուռ հատնումի։ Ու փոթորիկը իմ գլխուս մէջն է...։ Բան մը միայն դեռ զիս կը կապէ դիմացի ցամաքին, և ան ալ երեք-չորս օրէ ի վեր անհամբերօրէն, ջղագրգռօրէն սպասուած լուրին յամառ անկայութիւնն է, մեծ, ահաւոր, ճակատագրական Լուրին, որ Թուրքիոյ բաղդը պիտի վճռէ, որուն վայրկեանէ վայրկեան կը սպասուի հոգեւին, և որ սակայն չի գար, չի գար...։ Ու « Assouan »ը կը վերցնէ իր խարիսխը ու ճամբայ կ'ելլէ, առանց որ մեր անձկայրեաց սպասումը յանգած ըլլայ՝ Պոլսոյ հեռաւոր բարձունքներուն վրայ թաւալող հսկայական տռամին յանգումէն հասնելիք բաղդորոշ լուրին...։

Մինակ չեմ նաւուն մէջ, մանաւանդ սփոփիչ բաղդաւորութիւնն ունիմ ընկերակցելու Ազգային Ժողովին կողմէ Ատանա գացող պատուիրակներուն, որոնք քանի մը օր Իզմիր մնալէ և օգնութեան անհրաժեշտ մթերքը տրամադրելէ ետք, կ'աճապարեն դէպի Մերսին։

Ներկայացնելու պէտք ունի՞մ ձեզի Վեհապետեան Սրբազանը, Ասլանեան Վարդապետը և Պրն. Սուրէնը, պատուիրակութեան անդամները, ճամբու պատուական ընկերներ, որոնց հետ ժամանակը շատ արագ կ'անցնի։ Իրա՛ւ որ կարելի չէր ինծի ակնկալել աւելի հաճելի, աւելի խորհրդաւոր ու շահեկան ուղեկցութիւն մը Կիլիկեան այս առաջին ուխտաւորութեան համար։ — Վեհապետեան Սրբազանը՝ իր մտերմութեան մէջ՝ եզական տիպար մըն է պարզուկ, աւիւնոտ ու չարժառուն վաթսունամեանի։ Կեանքին դառնութիւններէն տառապած, բայց անոնցմէ չի դառնացած, չի խստացած ու չընկճուած մարդու անսպառ ու սահմռկող զուարթախոհութիւն մը, որ կ'արտազեղու իր խօսքերէն ու ժեստերէն, և որմէ ամենէն պղտոր ջիղերն ալ կը վարակուին, կը թուլնան իր շուրջը։ Խղճի խայթ ունենալու չափ կը խնդանք երբեմն իրեն հետ, դէպի տրտմութիւն տանող այս ճամբուն երկայնքը։ Երանելի է ան, և այսպէս կը դաւանի ինքզինքը, քանի որ տասնըհօթը տարուան տարագրութենէ մը ետք՝ կը տրուի իրեն վերադառնալ իր սիրական երկրին ու ժողովուրդին գիրկը։ Տարօրինակ ու հիանալի բան մը ունի այս արի ծերունին լաւատեսութիւնն ու վստահութիւնը ապագային վրայ։ Ամէն բանի կը հաւատայ, և ամենէն հրաշալի բաներուն կարելիութեանը՝ իր դժբաղդ ու գեղեցիկ Կիլիկիային համար։

Վեհապետեանը — ի՛նչ ալ անհամեմատ անուն՝ իր հասակին — հոգի՛ն է մեր փոքրիկ կարաւանին, որուն հազուադէպ բաղադրութեան միւս տարրերը կը կազմեն Գէորգ Ծ. Վ. Ասլանեան, Խարբերդի նորընտիր Առաջնորդը, մեր երիտասարդ եկեղեցականութեան ամենէն

*համակրելի դէմքերէն մէկը, և Պրն. Սուրէն, Գում-Գափուի Ազգ. երեսփոխանը, 95-96 թուականներու Պոլսոյ Յեղ. ապայակոյտին գլխաւոր անդամներէն, կենդանի պատմութիւնը Իզմիրլեան շրջանի մեր ազգային-յեղափոխական գործունէութեան։*

*Բայց այս խումբին մէջ ներշնչումի ու խանդաղատանքի նօթ մը բերողը Իզմիրցի Հայուհի մըն է, Օր. Անթառամ Երկանեան, որ պարզ թելադրութեան մը վրայ սիրայօժար յանձնառու եղած է պատուիրակութեան ընկերանալ, իբրև հիւանդապահ՝ երթալ իր անձն ի սպաս դնելու համար վիրաւորուածներու և ցաւատանջներու դարմանումի գործին։ Կտրի՛ճ աղջիկ, որ իր անձնուիրութեան մեծութիւնը չուզեր հասկնալ, որ իր զոհաբերութեան արդար հպարտութիւնը չընդունիր, որ իր համեստութեան, բարութեան ու հեզութեան մէջ կարծես զարմացած, վրդովուած, վիրաւորուած՝ երեսդ կը նայի, երբ զինքը կը շնորհաւորես իր ըրածին համար, — ազնի՛ւ, աղջիկ՝ որ չի գիտեր, չի կասկածիր իսկ, թէ մեր քաղքենի իգական սեռին պատիւը փրկել կ'երթայ, փրկած է զայն արդէն, իր արարքին սխրալի վեհութեամբը...։*

Քիոսի առջեւ, Իրիկուան ժամը 10ին

*Կղզիին պզտիկ ծովախորշին խորը քանի մը ցանցառ ու աղօտ լոյսերու պլպլուքը կը տեսնուի։ Մութին մէջէն նաւակները կը հանեն և կը պաշարեն շոգենաւը որ ժամուան մը համար կը խարսխէ։ Սանդուխին գլուխը կը փութանք՝ վեր ելլողներէն լսելու համար գերագոյն լուրը, զի թերևս ընդծովեայ հեռագրաթելը հաղորդած է զայն արդէն, մինչ մենք Արշիպիղագոսի կապոյտ ջուրերը կը ճեղքէինք։*

*Նորէն յուսախաբութիւն ։*

*Սրտաբեկ վեր կ'ելլեմ ու կամրջակին վրայ կը պըտըտիմ։ Մանրավաճառ յոյն տղեկ մը կը մօտենայ ինծի, ու անձկոտ աչքերը վրաս վերցուցած՝ կը հարցնէ.*

*— Ձեր եկած տեղէն նոր լուր մը կա՞յ...։*

*— Ո՛չ կը պատասխանեմ, հապա հո՞ս, ի՞նչպէս կ'ըլլայ որ հեռագիր չէ եկած դեռ...։*

*— Հեռագրաթելը աւրուեր է եղեր, կ'ըսէ, ու կ'անցնի յուսախաբ կերպարանքով մը։*

*Ինչո՞ւն պէտք — կը մտածեմ — սա հեգ Սախըզցի լաճին, որ օրական մէկ քանի* մեթալիկին *տէրտը ունենալու էր լոկ իր անդորր ու անշուք աղքատութեան մէջ, ինչո՞ւն պէտք՝ թէ Սուլթան Համիտը վար առեր են կամ ոչ...։ Բայց չէ՛, ան ալ իր հոգեկան խոշոր հաշիւն ունի կարգադրելիք բանակալութեան վերջին մարմնացումին վերջնական տապալմանը մէջ։ Քիոսի լանջքին վրայ խողխողուած իր պապերուն վրէժխնդիր արեան առհաւութիւնն է որ զայն կը խռովէ, անհանգիստ կ'ընէ։ Ան ալ անհամբեր կը սպասէ տիեզերականօրէն սպասուած ու Կայսրութեան մէկ ծայրէն միւսը ամենուքէն տենչացուած երանաւէտ լուրին...։ Եւ կը նախընտրէ հաւտալ, լակո՛տը, թէ կղզիին հեռագրաթելը աւրուած ըլլայ, թէ ընա՛ւ հեռագրաթել գոյութիւն ունեցած չըլլայ, քան թէ Համիտին դեռ թաւալգլոր եղած չըլլալուն համար՝ աւետաբեր լուրը հասած չըլլայ...։*

Հռոդոսի առջեւ, 14/27 Ապրիլ

*Իրիկուան ժամը 5ին Հռոդոսի նաւահանգիստը կը հասնինք։ Կամրջակին վրայէն յառած՝ կարծես արտառոց նշան մը, տօնական դրօշազարդում մը կը փընտըռենք փողոցներուն մէջ ու չէնքերուն վրայ՝ Լուրը*

*առնելէ առաջ՝ անոր եկած ըլլալն եզրակացնելու համար։ Բայց քաղաքը ոչինչ ունի սովոր կերպով բարեգուշակ իր ընդհանուր երեւոյթին մէջ։ Ծովախորշին մէկ անկիւնը, Օսմանեան փոքրիկ անպաճոյճ դրահաւոր մը իր հանգիստը կը շարունակէ։ Ծովեզրին վրայ կը ցցուի բերդաձեւ զօրանոց մը, որուն համար պատմական հնութիւն մըն է, ըսին։*

*Առաջին շոգենաւ ելողներուն շուրջ կը փութկոտինք, կը հարցափորձենք։ Վերջնական ու որոշ բան մը չեն գիտեր, կամ մեր Իզմիր գիտցածները կ՚ըսեն մեզի։*

*Նորէն յուսախաբութիւն։ Ա՛լ չի տարուիր ասիկա։ Ի՛նչ, խնդիրը Մերսինի՞ պիտի մնայ, աղէտքի նաւահանգիստի՞ն, և ի՞նչ պատճառ ունինք այլեւս չի տարակուսելու, թէ՝ իրերու այս ընթացքով՝ վերջնական հրաժարումը վերապահուած չըլլայ մեզի հոն, արդէն Կիլիկիոյ դուռը։ Արդէն չէ՞ մի որ վերջին օրը Իզմիրի մէջ տարաձայնութիւնը շրջեցաւ Եըլտըզի ու Իթթիհատի բանակին միջեւ համաձայնութեան մը, ըստ որում ճշճիմ ստիպարկութեամբ մը կը փակուէր Օսմանեան պատմութեան ամենաշքեղ այս դրուագը...։*

*Այս տխուր խորհուրդներով ջլատուած՝ Հաղթանէն ալ յոյս կտրելու վրայ եմ, երբ խրախանցում մը ծայր կուտայ շոգենաւին մէջ։*

*— Հեռագիրը եկե՛ր է, հիմա Թնդանօթի 101 հարուածները պիտի արձակե՛ն...։*

*Կատակ կ՚ընեն՝ կը խորհիմ, ու չեմ ուզեր նախ հաւատք ընծայել։ Բայց աւետաբերը շոգենաւին բժիշկն է, որ ցամաքէն կուգայ, և որ հիմա անձամբ մեր առջեւ կը հաստատէ իրմէ բղխող լուրին ստուգութիւնը։*

*Սիրտերը կը սկսին բաբախել։*

*Դիտակները կը լարուին, ու քաղաքին կը սեւեռ-*

ունինք...։ Դիմացի բերդին վրայ զինուորներու խումբ մը անմիջապէս մեր ուշադրութիւնը կը գրաւէ։ Հոնկէ է որ աւետաւոր Թնդանօթաձգութիւնը պիտի կատարուի։ Քաղաքին փողոցներուն մէջ եռուզեռը կը շեշտուի։ Բերդին աջ կողմը, քարափին վրայ, Թնդանօթաձգութեան սպասողներու բազմութիւնը կը հոծնայ, կը զանգուածանայ։

Գերագոյն րոպէն է։ Ժամը ճի՛շդ 6...

Եւ ահա՛, բերդին գագաթէն, Թնդանօթի առաջին հարուածը կը պայթի... Պո՛ւմ... Վե՛րջապէս, Տէր-Աստուա՛ծ, ի՜նչ վայրկեան... Պո՛ւմ, պո՛ւմ, պո՛ւմ...։ Տիեզերական բերկրանքի դղրդիւն մըն է կարծես, ծովն ու երկինքը կապոյտ հեշտանքով մը կը խայտան, հորիզոնները պայծառօրէն կ'արձագանգեն...։ Ցամաքէն բարձրացող ահագնագոռ հուրրաներն ու ծափերը ծովուն վրայ պար կը բռնեն մերիններուն հետ...։ Կամրջակին վրայ գտնուող ճամբորդներուս յուզումն ու փղձկումը անմոռանալիօրէն սրտաշարժ բան մը ունի։ Հայ, Թուրք, հրեայ, յոյն, սուրիացի՝ գիրար կ'ողջագուրենք, արտասուաթոր աչքերով։ Վեհապետեան Սրբազան, իր ամբողջ հասակով, դիմացը եկողին վիզը կը նետուի։ Նաւուն օտար պաշտօնեաներն իսկ, անտարբեր ու անմասն չեն մնար այս ընդհանուր գիրկընդխառնումին ու խանդավառութեան մէջ, և մինչ Թնդանօթները կ'որոտան բերդին բարձրէն և ծովախորշին մէջ խարսխած զրահաւորին կուշտէն՝ երկրորդ նաւապետը, Անգլիացի համակրելի երիտասարդ մը, հրթիռներ ու պայթուցիկներ բերել կուտայ և կ'արձակէ իր ձեռքով ի նշան խնդակցութեան։

Բայց շոգենաւը, որ հազիւ ժամ մը պիտի կենար Հռոդոսի առջեւ, արդէն՝ այս անզուգական առթիւ՝

*երկու ժամէն աւելի յամեցած է հոն, երբ ճամբայ կ'ելլէ վերստին։ Ու մենք վերջին անգամ մըն ալ կը դառնանք պատմական կղզիին, որ մեր յիշողութեան մէջ ա՛լ արձանացած է, և անկէ մեզ աւետուած լուրին գինովութեամբը դեռ արբշիռ, ակամայ կը հեռանանք յաղթանակի ու աստուածացումի հրաշափառ մթնոլորտէն զոր այս գողտրիկ ծովածոցին մէջ կը շինեն թնդանօթի որոտն ու ծուխը, նաւերուն ու շէնքերուն անմիջական դրօշազարդումը և խնծղանքի ճիչերն ու զինաձգութիւնները ցամաքի ժողովուրդին, որուն հիմա դրօշակիր թափօրներ կազմելն ու կառավարական պալատին հրապարակը դիմելը կը տեսնենք, հրաժեշտի մեր հուսկ նայուածքին մէջէն...։*

Տորոսի երկայնքը, 15/28 Ապրիլ

*Արշիպեղագոսի դիւթական լաբիւրինթոսէն ելած ենք հիմա, ու Միջերկրականի ասիական ափերն եզերելով կ'երթանք։ Մթնոլորտին պայծառութիւնը զգալապէս կ'աւելնայ, կը սաստկանայ հետզհետէ, եղծանելով, տժգունեցնելով ծովուն կապոյտը, որ եթերային, գրեթէ սպիտակ երանգ մը կ'առնէ հոս։*

*Տարօրինակ է այս ցամաքը. եզերքի գիծը, հիւրընկալ տարածումը չունի ան։ Տորոսի լեռնաշղթան է որ ծովուն կարծես մէջէն սեպ ու այլամերժ կը ցցուի, ու իր ջրամոյն ստորոտէն մինչեւ իր ձիւնապատ գագաթներն անմատչելի երեւոյթով մը կը յաղթանայ, կ'երկարաձգուի անծայրօրէն։*

*Մտածումս յանկարծ կը խռովուի՝ առաջին անգամ Տորոսին ի տես։ Կոյս ամայութեան մէջ սկսած այս լեռնաշղթային Կիլիկեան օղակներն են — կը խորհիմ դառնօրէն — որ ցեղիս արիւնովը կը կարմրին անդին...։*

*Բայց երէկ իրիկուան աւետաւոր թնդանօթներուն արձագանգը դեռ կը թրթռայ ներսիդիս, ու կամովին կը մտասուզուիմ Պոլիս կատարուած հսկայ իրողութեան խոկումին մէջ։*

*Թուրքիոյ համար նոր դարագլուխ մը սկիզբը պիտի ըլլայ այսօր, զի վերջապէս ինկաւ ան, որ երեսուն երեք տարի շարունակ աշխարհիս է՛ն աղուոր ու է՛ն դժբաղդ այս երկիրը զրկանքի ու տանջանքի դժոխք մը դարձուց իր բնակիչներուն համար։*

*Այս անկումը, այս թաւալումը անհրաժեշտ պայմանն իսկ էր տասն ամիսէ ի վեր մեզի հրամցուած ազատութեան իրականացումին։*

*Հակառակ բոլոր խանդավառ ցոյցերուն ու խելայեղ ուրախութիւններուն, որով ան ողջունուեցաւ ու տօնուեցաւ ամենքէն, տակաւին չէինք ուզեր, չէինք կրցեր հաւատալ անակնկալ կերպով ձեռք բերուած այդ ազատութեան, և անոր տեւականութեանը ինքզինքնիս համոզելու համար՝ բանազբօսիկ լաւատեսութեան մը կը կառչէինք յամառօրէն։ Բայց կասկածը որդի պէս կը կրծէր մեր սրտերը․․․։*

*Յուլիսեան «խաղաղ» յեղափոխութիւնը անհեթեթութիւն մըն էր, պատմութեան մէջ աննախընթաց։ Պէ՛տք էր որ պատմական ճշմարտութիւնը տեղը երթար. պէ՛տք էր որ ազատութիւնը նուաճուէր, իրական ու տեւական ըլլալու համար։ Եւ ատ ալ անկարելի պիտի ըլլար ցարդ նախասիրուած «անարիւն» մեթոտներով։*

*Եւ ազատութիւնը նուաճուեցաւ, արիւնով նուիրագործուեցաւ։ Մակեդոնական բանակը արծիւի երամի մը պէս խոյացաւ, հասաւ, ինկաւ Րէաքսիօնի վիշապին վրայ ճի՛շդ այն պահուն, երբ այս վերջինը՝*

ողջնցած, գլուխը վերցուցած՝ սկսեր էր ազատութեան տասնամեայ մատղաշ մանկիկը յօշոտել :

Սուլթան Համիտ չի գիտցաւ ինքզինքը փրկելու միակ առիթէն օգտուիլ. ազատութեան փարելով, զայն սիրով բռնելով՝ չի գիտցաւ ինքզինքը, իր անսրբելի պղծութիւնը սահմանադրական վեհապետի նոր կուսութեամբ մը պարուրել, պատմուճանել, իր անհամար ոճիրներուն հանդէպ դէթ լռութիւնը գնել իր կենդանի զոհերուն, քանի որ ձրի ազատութեան մը հեշտանքալ գոհացումին մէջ ամէն բան մոռացումի պիտի տրուէր, բոլոր հին արիւնոտ հաշիւները պիտի փակուէին :

Համիտ՝ մէկ ոտքը գերեզմանին մէջ՝ միւսով անգամ մըն ալ ճզմել փորձեց իր զոհերուն գլուխը, և այդ գել ազգին փորձն իր վերջնական ու անյարիր անկումը եղաւ :

Վե՜րջապէս քեզի համար ալ արդարութեան ժամը պիտի հնչէր, ու դուն պիտի չի վրիպէիր անոր վճիռէն, ու քու նենգութիւնդ, քու գերմարդկային նենգութիւնդ ա՛լ պիտի չի կրնար փրկել քեզ, ո՛վ չարիքի դժոխազանգ հանճար... Վե՜րջապէս պիտի թաւալէիր անիծակոծ գահէդ, ու պիտի քանդուէր քու գլխուդ ոճիրի տաճարը զոր կառուցեր էիր բիւրաւորներու գանկերուն ու ոսկորներուն վրայ... Վե՜րջապէս պիտի մարէր Եըլտըզիդ եղեռնաշխոյլ լոյսը, ու տիեզերքի դէմ ցցուող այդ վիթխարի նախատինքը հողին երեսէն պիտի ջնջուէր... Մարդկային խղճմտանքն այսօր իր մեծագոյն հատուցումներէն մին է որ կը ստանայ... Վե՜րջապէս պիտի չանթահար գետին փռուէիր իրաւարար արիւններու նայուածքէն, պիտի դողայիր անոնց ոտքին տակ, պիտի սողայիր, պիտի սատկէի՛ր քու զգենուած ամենակարողութեանդ մէջ, ու քեզի հետ պիտի սատ-

կէին ամբողջ վոհմակներն արիւնախանձ չունները ու չաքալներու․․․։

Արդեօ՞ք․․․։ Ու տարակոյսը դժնդակօրէն ծայր կուտայ մտքիս մէջ՝ կրկին ջլատելով հոն հազիւ ծլող յոյսին կորովը։ Միթէ Համիտին հետ կը վերջանա՞յ իսպառ համիտականութիւնը, մի՞թէ վերջին անգա՞մն է որ մեր արիւնը կը թափուի, մեր ժողովուրդը կը ջարդուի Համիտի անունով, և միթէ Համիտը պիտի կրնա՞ր Հայ արիւնի այս հուսկ լոգանքն առնել, եթէ իրեն հետ չունենար խուլ ու խորունկ մեղսակցութիւնը իսլամ մարդազանգուածներուն․․․։ Վերջէն պիտի իմանայի, աւա՜ղ, թէ ազատարար բանակին Տէտէ-Աղաճէն ղրկուած՝ զօրքերն են որ կատարեր են Ատանայի երկրորդ ու անեղագոյն կոտորածն ու հրկիզումը, մինչ մենք՝ անգիտակ այս նոր ու լրացուցիչ աղէտին՝ ճամբայ կ'ելլէինք դէպի Կիլիկիա․․․։ Վերջէն պիտի հանդիպէի ազատամիտ ու զարգացած Թուրքի մը, որ պաշտօնով Մէքքէ կ'երթար, և որուն բերնէն պիտի լսէի սա նշանակալից խօսքերը․ «Սուլթան Համիտը սխալ բրաւ գահավիժելով դէպքերու ընթացքը․ անիկա փառաւորապէս պիտի յաջողէր բռնակալութիւնը վերահաստատել, եթէ քիչ մըն ալ համբերելու իմաստութիւնն ունենար։ Բայց համբերութիւն չունեցաւ, ու կորսնցուց խաղը։ Անիկա չարգիլէր, որ ամբողջ Անատոլուն իրեն հետ ըլլայ։ Միմիայն Դամասկոսի մէջ — ուրկէ կուգամ — 40,000 զօրք կայ իրեն բոլորանուէր՝ Իզզէթի մարդոց ձեռքին տակ։ Կը ցաւիմ Ատանայի կոտորածներուն համար, կը յուսամ ու կը մաղթեմ որ վերջինն ըլլան անոնք։ Բայց մի՛ անկնալէք որ Անատոլուի իսլամ ժողովուրդը Համիտի տապալումովը ու սահմանադրական ընժիմով փոխուի հանդէպ քրիստոնեաներուն, մանաւորապէս

Հայերուն։ Անոնուագն 25 տարի պէտք է տոր համար. նոր սերունդ մը հասնելու է, կրօնական ու քաղաքացիական նոր դաստիարակութեամբ...։»

Ի՞նչ պիտի ըլլայ մեր ազգին վիճակը՝ մինչեւ որ այդ սերունդը հասնի. մենք սերունդ պիտի մնա՞յ...։ Յուսահատութի՛ւն, Համիտին օրով նուազ կը ճնշէիր դուն մեր հոգիները, քան հիմա, երբ ան գլորած է իր պատուանդանէն...։

Գիշեր՝ Անամուրի բացերէն

«Assouan»ը մութին մէջէն կը յառաջանայ հանդարտօրէն։ Վերջին գիշերնիս է իր վրայ։ Վաղ առտու Մերսին կը հասնինք։ Աչքերնիս խաւարին բացած՝ մեր սրտերու սուգին նմանող կը ծծենք անկէ, ու վաղորդայնին անստուգութեան խուովքը ներսերնիս՝ կը յառինք աստղերուն, որոնց ո՛չ մէկը ճամբայ մը ցոյց կուտայ մեր առջեւ։

Յանկարծ մռայլ ցամաքին մէկ կէտէն լոյսեր կը նշմարուին։ Պահիկ մը վերջը այդ լոյսերը կը խառնան, ու զարմանքով կը դիտենք, որ անոնց մէջէն հրթիռներ կը նետուին, կը լուսաւորեն խաւարին գիրկը...։

«Անամո՛ւրն է», կ'ըսեն այս կողմերը ճանչցող ճամբորդները։

«Անամո՛ւր», ինչ սիրուն, ոգեկոչող անուն։ Եւ ըսել թէ այդ մենաւոր անկիւնը, այդ հեռաւոր ու անգիտուած խորշին մէջ ալ Համիտի անկումը կը տօնեն այս պահուս, զի ուրիշ ի՞նչ պատճառ գտնել գիշերին մէջ պլպլացող այս լոյսերուն ու անոնց մէջէն արձակուող երկնասլաց հրթիռներուն։

Մերսինի առջեւ, 16/29 Ապրիլ

*Հինգ մարտանաւեր, որոնցմէ մին, Թրքականը, Համիտի անունը կը կրէ, կարծես զայն պաշտօնապէս ներկայացնելով հայ աւերումին ու մորթոտման այս միջազգային հանդիսատեսութեան մէջ, Մերսինի ծովախորշը բռներ են իրենց դաժան ու տիրական երեւոյթով։ Ցամաք ելլելէ վերջ պիտի հասկնայինք, թէ այդ տիրականութիւնը ո՛րքան պատրական՝ ու այդ դաժանութիւնը ո՛րքան ունայն ու անմեղունակ է եղեր։ Բայց ցամաք պիտի ելլա՞նք...։*

*Նաւակները չեն ի գար ճամբորդներն առնելու, ու երեք ժամ է որ հասած ենք արդէն։ Եւ երբ անոնցմէ մէկ քանի հատ վերջապէս կը հասնին, դեռ շոգենաւին սանդուխը չի բռնած՝ արաբ նաւավարները կը պոռչտան վարէն. «Հայ չե՛նք կրնար առնել, արգիլուա՛ծ է, տուգանք ու բանտ կայ՝ եթէ առնենք, Հայերը թո՛ղ չիջնեն...»։*

*Կը հասկնանք որ Կիլիկիոյ դռները գոց են Հայուն առջեւ։ Պիտի՞ թոյլ տրուի՞ մեզի ներս մտնել՝ վերապրողներուն հաց հասցնելու համար։*

*Ու բանակցութիւն մըն է կը սկսի Պատրիարքարանի պատուիրակութեան ու Մերսինի իշխանութեանց միջեւ։ Միւթէսարրըֆին դիմում։ Ոստիկան մը կու գայ շոգենաւ եւ պատուիրակութեան պաշտօնաթղթերը կ'ուզէ՝ արգիլելով զիրենք դուրս ելլել։ Կրկին գրաւոր դիմում։ Վերջապէս կէս-օրէն վերջ Վեհապետեան Սրբազան, Ասլանեան Հայր Սուրբ եւ Սուրէն Էֆէնտի կը թոյլատրուին ցամաք ելլել, խոստանալով մեզի, կարաւանին մնացորդներուս համար ալ, դուրս ելլելու արտօնութիւն ձեռք բերել։*

*Հիմա երեք հոգի ենք շոգենաւուն վրայ հրամանի սպասող, ես՝ պատուիրակութեան օգնական-քարտուղարի հանգամանքիս մէջ, Օր. Անթառամ Երկանեան՝ իբր կամաւոր հիւանդապահ, և բարի մարդ մը՝ իբրեւ պատուիրակութեան սպասաւոր։*

*Օրը իրիկուն պիտի ըլլայ։ Շոգենաւը կէս ժամէն ճամբայ պիտի ելլէ, երբ մեզի ալ թոյլտուութիւն կ՚ըլլայ ցամաք ելլելու։*

*Արիւնի աշխարհի մը սեմին վրայ կոխելու զգացումով մըն է, որ Մերսին ոտք կը դնեմ։*



# ԲՈԹ ԵՒ ԱՀԱԶԱՆԳ

Մերսին, 17/30 Ապրիլ

*Մինչ անդին, Վոսփորի պայծառացած ափերուն վրայ, պաշարման ու պատերազմի դրութեան մը կարճատեւ մղձաւանջէն դուրս գալով, Մայրաքաղաքին ժողովուրդը կը մասնակցի վերնուաճուած ազատութեան յաղթապանծ տօնին, անդին՝ Կիլիկեան արգաւանդ կողերը կը գալարուին քանդումի չղթայազերծ փոթորկի մը, խժդժութեան ու մորթոտուքի արիւնազանգ արհաւիրքի մը մէջ։*

*Թուրքիան վիթխարի ու սահմռկիչ հակապատկերներու երկիրն է միշտ։*

*Օսմանեան Սահմանադրութեան առաջին հռչակման վաղորդայնին՝ հրդեհուած Վանը ողբալով՝ Խրիմեան Հայրիկ, իր աղեխարշ «Վանգոյժ»ին մէջ, կը հեծկլտար. «Թուրքիոյ ազատագրութեան խորանին վրայ քաւութեան նոխազ մը, ողջակէզ մը պէտք էր, եւ ան ալ դուն եղար, ո՜վ տարաբաղդ Վան»։ Այսօր, մինչ մենք ալ հազիւ կը պատրաստուէինք Երկրորդի ջախջախումովը տիրացուած ճշմարիտ ազատութեան տօնին, ահա՛ ցեղին կուշտին մխուած սուրը մեր հոգին կը յօշոտէ եւ մեր աչքերէն արցունք կը վազցնէ։ Եւ ընդհանուր ուրախութեան այս հանդիսաւոր պահուն՝ սուգի անսահման մռայլն անգամ մըն ալ կը պատէ մեր հայրենի հորիզոնները։ Մայրաքաղաքէն հրաշափառօրէն բացուող արշալոյսին առջեւէն, հեռուէն, դարձեալ Հայութեան*

դագաղն է որ կը տարուի խուճապական, Հայութեան գերեզմանն է որ կը փորուի անդնդախոր...։ Եւ այս անգամ Կիլիկիային, անոր սիրտին իսկ է որ կ'իջնէ մահացու հարուածը, անդարմանելի, անփոխարինելի աղէտը։

Ատանայի կոտորածին, հրկիզման ու հիմնայատակ աւերման վերջին դրուագը, որուն ծանօթացանք Մերսին հասած-չհասած, իր ահաւոր ու եղերական համեմատութիւններովը, տասնապատիկ կը գլէ, կ'անցնի ութն օր առաջուան իր չարաչուք նախաբանը։

Հոս առնուած վաւերական տեղեկութիւններուն նայելով Ատանայի մէջ Հայ տուն, շուկայ և ազգային հաստատութիւն գրեթէ չէ մնացած։ Խանութներն ու բնակարանները կողոպտելէ, թալլելէ վերջ այրած լըմնցուցած են ամբողջովին։ Մուշեղեան դպրոցն ու նոր շուկան, որ դէպքին սկիզբը վրիպած էին հրդեհէն, այրուեր, մոխրացեր են, իրենց մէջ ապաստանած հարիւրաւոր էակներ ածխացնելով։ Եկեղեցիներէն մէկը միայն դեռ կը մնայ Առաջնորդարանին հետ, և ան ալ՝ վայրկեանէ վայրկեան միւսին բաղդին դատապարտուած ըլլալ կ'ըսուի։ Ժողովուրդին մնացած մասն ապաստանած է Գերմանական գործարանը, Թրիփանիի գործարանը, որ Անգլ. հիւպատոսին թարգման Հելլէնի մը կը պատկանի, Միլլէթ Պահչէսին, և մաս մըն ալ վերոյիշեալ գործարաններուն շուրջը։ Աւերակներու վրայ քաշկռտուող այս մարդային խլեակները զուրկ են կեանքի բոլոր տարրական միջոցներէն։ Օգնութեան գործը դեռ կազմակերպուած չէ։ Որբեւայրիներուն ու որբերուն թիւը չի կայ։ Անօթութիւնը եղեռնի արհաւիրքին հետ ասոնց ներսիդին ահռելիօրէն կը զուգաւորուի։ Մերսինի ու Ատանայի միջև յարաբերութիւնն

արգիլուած է Հայերուն համար։ Այսուհանդերձ առաջին դէպքէն ի վեր հարիւրաւորներ Կիպրոս և այլուր փախած են, և Մերսինն ալ լեցուած է Ատանայէն փախստական աղէտեալներով։

Իսկ Ատանայի շրջակայքը գտնուող Համիտիյէ, Օսմանիյէ, Պաղչէ և ուրիշ հայաբնակ գիւղեր բացարձակապէս բնաջինջ եղած են։ Թարսուսի կոտորածը յարաբերաբար աննշան եղած է, մօտ 100 հոգի, բայց հրդեհն ու աւերումը՝ կատարեալ։ Հաճըն, Մարաշ, Զօք-Մարզուան ճգնաժամի մէջ են։ Առաջին երկու վայրերուն վիճակն անստոյգ է դեռ, բայց վերջինը պաշարուած է, և Աստուած գիտէ ինչ քաշելի նախճիր մը պիտի կատարուի հոն, եթէ նախախնամական միջամտութիւն մը չի հասնի կեդրոնական կառավարութեան կողմէ։ Ու կը սոսկա՛մ մտածելով թէ արդէն շատ ուշ ըլլայ... Ներսինններուն թիւը 15,000ի կը հասնի, շրջականերէն հոն ապաստանած Հայերով։

Ամբողջ Ատանայի վիլայէթին մէջ Հայ կեանքի կորուստը նուազագոյն հաշուով 20,000ը կ'անցնի։ Եւ դեռ բոլոր երեւոյթները կը դուժեն թէ Կիլիկեան Արհաւիրքն իր վախճանին մօտեցած չէ։ Անիկա արդէն սկսած է վիլայէթին սահմաններէն դուրս ալ ճարակիլ։ Բէսնիի մէջ 2000 Հայ ջարդուած են և քաղաքին փլատակներուն մէջ գերեզմանուած։

Կիլիկիոյ ճգնաժամը 95-96 կարմիր թուականներուն սարսափներն ալ կը գերազանցէ։ Պէ՛տք է որ հասկցուած ըլլայ այս կացութեան գերագոյն ծանրակշռութիւնը, ըստ այնմ անմիջական, ճգնաժամային դիմումներ ըլլան աղէտքին ծաւալումն արգիլելու և դարմանումի հնարաւոր միջոցներ ձեռք առնելու։

Արտասահմանի ազգային բոլոր մարմիններուն ու



ՀԱՅՈՑ ԹԱՂԸ

1. *Հայ Կաթոլիկ Թէրզեան Վարժարան* այրելէն առաջ *1. Բողոքականաց Եկեղեցի*

հաստատութիւններուն ուշադրութիւնը կը հրաւիրեմ Կիլիկիոյ ներկայ մահասարսուռ կացութեան վրայ։ Եթէ անմիջական ու բաւարար օգնութիւններ չի հասնին, աղէտքին անհագնութեան պիտի յաջորդէ ընդհանուր անքարոյացումը, և կարելի պիտի չըլլայ դիմագրաւել արտագաղթի զանգուածային հոսանքին, որ Կիլիկիան պիտի պարպէ իր Հայ բնակչութենէն։

Առայժմ 100 ոսկի հասած է Եգիպտոսի Բարեգործական Ընդհ. Միութենէն, որ՝ տարակոյս չունիմ՝ պիտի աւելի խոշոր գումարներով օգնութեան հասնի այս հսկայական թշուառութեան։ Այս դրամով և Չէլէպեան Եղբարց բացած վարկով կարելի եղած է սա քանի մը օրերը քիչ մը հաց դնել Ատանայի կարօտեալներուն։ Իզմիրի Հայոց ճամբայ հանած ուտեստեղէններն ալ այսօր պիտի հասնին։ Նպաստից Սնտուկին տրամադրած 300 ոսկին դեռ գանձուած չէ մեր Խառն ժողովին փութացուցած Օգնութեան Յանձնախումբին կողմէ, որ երէկ քիչ մնաց կարող չըլլար ցամաք ելլել, և որ այսօր գործի կը ձեռնարկէ։ Յանձնախումբը, առայժմ, Մերսին պիտի մնայ, անկէ կատարելու համար իր սահմանուած դերը, քանի որ երկիրը զինուորական դրութեան տակ է, յարաբերութիւններն անկարելի, և քանի որ Նպաստի առաքումները կեդրոնացնելու համար Մերսին ամենէն ապահով տեղն է, շնորհիւ իր լուսամիտ, արթուն ու բարեխիղճ կառավարչին, որուն տեղացի Հայերն երախտապարտ կը զգան՝ զիրենք Ատանայի սեւ բաղդէն փրկած ըլլալուն համար։

Պիտի աղաչէի Խորհրդարանի մեր Հայ երեսփոխաններէն, Զօհրապէն, Վարդգէսէն, Մուրատէն, ու միւսներէն, որ իրենց ձայնն հասած տեղն հասցնէին, թէ Կիլիկիա տեղի ունեցածն անանուն, անասելի, աննկա-

բագրելի բան մըն է: Հոս Հայերուն ջարդուիլը, քանդուիլն ու քայքայուիլը չէ՛ միայն որ մեզ մահու չափ կը դառնացնէ ու կը յուսահատեցնէ, այլ սա գերազանցապէս տխուր, խշխշացնող իրողութիւնը՝ թէ Հայ-Թուրքական Եղբայրութիւնն իսկ է զոր Կիլիկիոյ դահիճները կը սպաննեն, կը խեղդեն, կը թաղեն այս արիւններուն ու մոխիրներուն տակ, Հայ-Թրքական Եղբայրակցութիւնը, որ Եըլտըզի բռնակալութեան վերջնական խորտակումին յաւիտենապէս կընքուէր Հայութեան կսկիծոտ հոգիին մէջ...: Եւ հիմա որ երախտագիտութեան արցունքոտ դափնիներ միայն պիտի ուզէինք բոլորել յաղթական Իթթիհատի ճակտին, ի՞նչու ստիպուած ըլլայինք ցաւագինօրէն հաստատել թէ Կիլիկեան այս արհաւիրքը զերծ չէ ստուեր ու արատ բերելէ իր հոյակապ փառքին: Այստեղի իր կարգ մը ներկայացուցիչներուն բռնած դիրքն աւելի քան վրդովիչ ու գայթակղեցուցիչ է՝ աղէտքին հանդէպ: Ասոնք կ'արդարացնեն կատարուած ու չարունակուող սոսկավիթխար հրէշութիւնը: Եւ դեռ այսօր, այս անդունդի ու սուգի հեւասպառող, մահասարսուռ վայրկեանին, կը համարձակին, սիրտ կ'ընեն արիւնի մէջ լողացող Կիլիկեցին ամբաստանել իբրեւ ապստամբ ու անջատական ձգտումներու գործիքն ու արտայայտիչը: Կիլիկեցի Հայերը «Թագաւորութիւն» կ'ուզեն եղեր, Մուշեղ Սրբազանը Թագաւոր և Կէօկտէրէլին չեմ գիտեր ինչ պիտի ընեն եղեր: Ատանայի Իթթիհատ թերթին մէջ Իհսան Ֆիքրի ամենախուժդուժ կերպով կ'ամբաստանէ Հայերն իբրեւ նախայարձակներ կոտորածի ու հրդեհի առաջին դէպքին և անոր երկրորդ ու աւելի զարհուրելի կրկնութեան մէջ, մինչդեռ ապացուցուած իրողութիւն մըն է թէ՝ առաջին դէպքէն ետք՝ մունետիկներով ու պաշտօնական

յայտարարութիւններով Հայ ժողովուրդն ապահովցուցեր. իր ապաստաններէն դուրս հաներ, կրկին իր բանին գործին դարձուցեր և 8-9 օր վերջը զայն յանկարծակիի բերեր են: Այս արիւնոտ խաբէութիւնէն վերջ՝ ելլել գետինը փռւած դիակներն ամբաստանե՜լ, մանաւանդ երբ այս անգամ ինքնապաշտպանութեան ամենադոյզն փորձն իսկ չէ եղած Հայերու կողմէն, ո՛չ մէկ փամփուշտ արձակուած, ո՛չ մէկ քար նետուած... Ի՞նչպէս, ի՞նչպէս որակել, ի՞նչպէս հասկնալ այս զրպարտութիւնը, ըսէ՛ք, ո՛վ Իթթիհատի յաղթական ախոյեաններ, վերցուցէ՛ք մեր սրտերուն վրայէն անձկութեան, կասկածի ու յուսահատութեան այս երկմտաքարը: Ըսէ՛ք, մենք այս երկրին, այս հողին վրայ պիտի չապրի՞նք, չէ՞ք ուզեր որ ապրինք: Մինչեւ ե՞րբ մեր արիւնն ու արցունքը պիտի հոսի «Հայկական Թագաւորութեան» մը ցնորական, զաւեշտական վարկածին անունով; որուն դուք չէք հաւատար, և որուն՝ չէք կրնար հաւատալ որ Հայերն այնքան ապուշ ըլլան հաւատալու համար... Իսկ եթէ կը կարծէք թէ սա ափ մը ժողովուրդն ուշքը կ'առնէ իրմէ տասնապատիկ ստուարաթիւ Իսլամ մարդազանգուածին դէմ ցցուիլ և կանոնաւոր բանակի մը սուիններն ու գնդակները դիմագրաւել՝ սա դիմացի ջուրերուն մէջ քանի մը օտար մարտանաւեր ողջունելու սիրոյն, կը սխալի՛ք, չարաչա՛ր կը սխալիք, որովհետեւ տառապող, խաչուող, քաշկռտուող Հայը շատ աղէկ հասկցած է թէ այդ հսկայ և ունայնապանծ մարտանաւերն իր տաժանքն ու տուայտանքը հեգնելու կուգան և այս գեղեցիկ ու դժբաղդ երկրէն պատառ մը յափշտակելու վայրագ ցանկութեան մէջ զիրար արգիլելու: Ամենէն միամիտ, ամենէն գեղջուկ, ամենէն տիրացու Հայն իսկ բան մը չակնկալեր շահախնդիր ուժի, տիեզերա-

*կան վատութեան ու կեղծիքի այդ խորհրդանշաններէն, և իր դահիճներէն աւելի կ՚ատէ ու կ՚արհամարհէ զանոնք...։*

*Բայց դո՛ւք ըսէք մեզի, թէ ո՞ր կողմ դառնայ սա խելայեղ ժողովուրդը, ո՞ր կողմ փնտռէ իր փրկութեան ելքը, երբ կը տեսնէ որ Մայրաքաղաքին մէջ կատարուող հրաշալի յեղաշրջումը, Իթթիհատի բանակին ազատարար խոյանքը, բռնակալութեան մողոգին վերջնական կործանումն իսկ չազդեր, չանդրադառնար այստեղի կացութեան վրայ, եւ չընկրկեցներ մութ ու եղեռնախանձ ուժերը, չի կասեցներ աւերումին ուրախանը, չի սահմանափակեր արիւնին արհաւիրքը... Ըսէ՛ք, ի՞նչ ընէ, ո՞ւր դիմէ, ո՞ր հորիզոնին կառչի, ո՞ր պաշտպանութեան ապաւինի, այս անբաղդ ժողովուրդը, երբ օսմանեան ազատականութեան տեղական ներկայացուցիչներն անգամ իրենց անխիղճ զրպարտութիւններով դահիճներուն դաստակները կը զօրացնեն, որոնց մոլեգնութիւնը կը գրգռեն՝ Հայուն կողերէն Եըլտըզի թողուցած պուտ մը արիւնն ալ քամելու համար... Եւ ըսե՛լ թէ Եըլտըզի օրով,* իսթիպտատի *մարդ հռչակուած Պահրի փաշայի վարչութեան տակ Ատանան հանգիստ ապրեցաւ, Կիլիկիան չի ճանչցաւ այս ջուլումը, այս արհաւիրքը... Եւ ազատութեան արշալո՛յսն է, նորէն, անդի՛ն...*

*Ո՛վ պիտի պատասխանէ փոթորկած խղճմտանքներու այս աղաղակին...։*

---

Մերսին, 20/3 Ապրիլ

*Երբ ամէն բան լռուած, ամէն մանրամասնութիւն արձանագրուած ըլլայ այս աղէտքին վրայ, տակաւին վստահ եմ որ քիչեր իսկապէս հասկցած, ըմբռնած պիտի ըլլան անոր խորութիւնն ու տարածութիւնը... Եւ անձկութեամբ կը գալարուիմ մտածելով թէ ա՛յսօր, ա՛յս*

րոպէիս, աշխարհի ամէն կողմը, մանաւանդ Պոլիս՝ այս թշուառ ազգին տիրութիւն ընել կոչուած մարդիկն ու մարմինները դեռ ո՛ւ և է որոշ լուր չունին շաբաթէ մը ի վեր Կիլիկիոյ մէջ ստեղծուած յուսահատ կացութեան վրայ:

Այսօր, Իզմիրէն, Եղիշէ Սրբազան հեռագրով կը հարցնէր Պատրիարքարանի զրկած օգնութեան յանձնախումբին, թէ Ատանայի առաջին դէպքէն ի վեր նոր դէպք մը պատահա՞ծ է հոն:

Նո՞ր դէպք... Ահ, անուշի՛կ Սրբազան, Ատանան լմնցա՛ւ, քար քարի վրայ չի մնա՛ց: Առաջին դէպքէն ինը օր վերջը աղէտքը կրկնուեցաւ, այս անգամ տասնապատիկ աւելի ահաւոր համեմատութեամբ: Հարիւրաւորներ վառեցան ազգային կանգուն մնացող հաստատութեանց մէջ, մէ՛կ հատիկ Հայ չի մնաց որ մոխիրի վրայ նստած չըլլայ, և վերապրող մերկերուն ու անօթիներուն մէջ են տեղւոյն ամէնէն հարուստները ու երեւելիները, որոնք հիմա պատառ մը հաց կը մուրան՝ տասնեակ հազարաւորներու կարգին...:

Բայց միայն Ատանա՞ն ունենայինք ողբալու... Աւա՛ղ, ամբողջ Ատանայի կուսակալութիւնը, ամբողջ Կիլիկիան անոր սեւ բաղդին դատապարտուած է այսօր:

Աղէտքի Հայ տարեգրութիւններուն մէջ աննախընթաց բան մըն է ինչ որ եղաւ, ինչ որ կ՚ըլլայ կոր հոս, զի այս արիւնոտ տռամը հեռի է վերջացած ըլլալէ: Շաբաթէ մը ի վեր ամէն օր, ամէն կողմէ հասած գոյժերը հոգեվարքի ղօղանջի մը պէս յուսակտուր թախծութեամբ սպառի համակէին մեզ, եթէ ահազանգը չըլլային միանգամայն չարագուշակ ու կարծես ա՛լ անխուսափելի ճակատագրականութիւններու...: Արիւնի ու կրակի մէջ լմնցածներուն խօսքը չեմ ըներ, բայց

Թէքէլի Ապտուլլա՛, Տէպպաչզատէ Հաճի Ալի, Համալը-զատէ Հասան, Իպրահիմ Բաղըխ, Պօմպալը Սալիհ և Մէհմէտ, Բամպուքճը Մօտիլլի, Դասապզատէ Հիւսէյին են., — վալիին, Մէհմէտ Ճէվատ պէյի, և զինուորական հրամանատար Մուսթաֆա Րէմզի փաշայի հետ, միթխարի եղեռնը սարքեցին և իրագործեցին: Ու խուժանին հետ ոստիկան զինուորական ույժն ալ, եղբայրօրէն, ջերմե-ռանդօրէն, մասնակցեցաւ արիւնի ու քանդումի գործին: Ի՞նչ կ'ըսեմ, Տէտէ Աղաճէն զրկուած զօրքը Ադապազարը Եանըքլըն մաքուր ու պաշտուած դրօշն Հայ արիւնով ներկեց՝, Ատանայի երկրորդ ջարդին, խաբուելով, կամ միւսներուն աւերիչ թափէն տարուելով . . . :

Հիմա, այս ոճրագործներու արիւնկզակ վոհմակը՝ փոխանակ իր իսկ իրականացուցած աղէտքին անազ-նուութենէն սարսափելու և իր սոսկալի պատասխանա-տուութեան առջեւ ընկրկելու՝ սանձարձակօրէն կը չա-րունակէ հալածել վերապրող Հայերը, կամայականու-թեան ու սարսափի ռէժիմին ենթարկելով զանոնք: Ու, քամահելի երեւոյթ, զոհերը դատախազ ու դատաւոր են ցուցեր իրենց զոհերուն դէմ: Ամէն բան Հայերը ըրին (?!?): Եւ մինչեւ այսօր չարունակուող հրձիգու-թիւնները Հայերու գործն են (?!?):

Երէկ գիշեր Ատանայի մէջ Մէօրերու՝ դպրոցը այրե-ցին: Կ'երթան կ'ըսեն Մայրապետին, թէ Հայ՝ մըն է կրակ ձգողը: Բաւական ծիծաղաշարժ պիտի ըլլար այս կա-տակերգութիւնը, եթէ չափազանց եղերական թատե-րաբեմէ մը չի խաղացուէր ան:

Այս վայրկեանիս ամէնէն ահռելի իրողութիւնը ձեր-բակալութիւններն ու բանտերու խորը նետուածներու ան-հետացումներն են: Հայերը սարսափէ կը հեւասպառին նոյն իսկ Մերսինի մէջ, մարտանաւերու կոյր աչքերուն առջեւ,

ցի այստեղ ալ ամէն օր կամայական ձերբակալութիւններ և խուզարկութիւններ տեղի կ'ունենան ամենաբիրտ կերպով մը, որ Համիտեան ամէնէն բռնակալ օրերուն ալ հազուադէպ էր: Հնչակեաններէն քանի մը հոգի բանտարկուեցան, Հ. Ս. Ռ. Կ. Տեղական Ակումբին Ատենապետ Պրն. Մոստիչեանն ալ՝ չաբաթ մը կ'ըլլայ՝ ծակը նետեցին և դուրս չեն ձգեր: Ատանացիները փողոցին մէջ՝ գրգռուած խուժանին առջեւ՝ կը հալածեն, կը բռնեն, և ուղղակի Ատանա կը ղրկեն: Այս խոչտանգիչ միջոցներն Հայերուն մէջ ընդհանուր խուճապ յառաջ կը բերեն, իսկ Իսլամ խուժանը կը քաջալերեն: Եթէ Պոլսոյ կեդրոնական կառավարութենէն անմիջական ու ամենախիստ հրամաններով այս սարսափի րէժիմին վերջ չի տրուի, ամբողջ ժողովուրդը ծովը պիտի թափի, փախչելու, հեռանալու համար: Արդէն հարիւրաւորներ ամէն նաւով կը փախչին ընտանեօք, ճիժ ու պիժով:

Թչուառութեան, անսահման ու յարաճուն թչուառութեան խօսքը չեմ ըներ: Ատանայի, Տարսոնի, Համիտիէի, Լաթաքիայի, Բէսապի, Հասանպէյլիի, Գօզլուքի և ուրիշ չատ մը կէտերու վրայ 40,000 անօթիներ անէացումի վտանգին մատնուած են: Անպատսպար, բացօդեայ տեղեր խռնուած, ցրտեկուան տօթերուն և գիշերուան խոնաւին ենթարկուած, անոնք պիտի փճանան, պիտի ոչնչանան, համաճարակ հիւանդութիւններէ, եթէ տեղական կառավարութիւնը չի վերցնէ անոնց չուրջ դրած չղթաները, եթէ հաղորդակցութեանց արգելքը չի վերնայ, եթէ անօթիներն ու հիւանդներն ահաբեկելու ճիւաղային, սպաննիչ դրութիւնը վերջ չի գտնէ անյապաղ, եթէ ազգային, կառավարական ու մարդկային ամէն միջոցներով օգնութիւն չի հասցուի ամէն կողմէ:

*Մեր Պոլսառաք յանձնախումբին միջոցները Մերսինի 1000 ապաստանեալներուն իսկ չեն բաւեր քանի մը շաբաթ, և ամէն օր Տարսոն և Ատանա քիչ-չատ հաց կը ղրկուի։ Օգնութի՛ւն, օգնութի՛ւն տեղացնելու է ամէն կողմէն, եթէ ո՛չ Կիլիկիայի Հայը ձեռքէ կ'ելլայ, հարիւրաւորներ, հազարաւորներ պիտի մեռնին ամէն օր։ Զանգուածային մահացումը պիտի ըլլայ այս՝ անօթութենէ, մերկութենէ, հիւանդութենէ...։ Աւելի մանրամասնութիւններ պիտի հաղորդեմ յաջորդով։ Վաղը Կիպրոսէն կացութիւնը պիտի հեռագրուի Պոլիս և այլուր։ Ամէնէ՛ն առաջ՝ արհաւիրքը դադրեցնել տալու համար՝ թո՛ղ ազգը իր գերագոյն ճիգը թափէ հոս։*



# ՎԵՐԱՊՐՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

## ՕԳՆՈՒԹԵԱՆ ԿՈՉԵՐ

### ԱՄԵՐԻԿԱՅԻ «ԱԶԳ»ԻՆ

Մերսին, 18/1 Ապրիլ

*Կիլիկիան արիւնի ու կրակի մէջ է։*

*Աղէտքը, իր ահագնութեան մէջ արդէն անդարմանելի, վերջացած չէ դեռ, և այս վայրկենին զօրաւոր պատճառներ ունինք տագնապելու, թէ ամբողջ Կիլիկիոյ Հայութիւնը բնաջնջումի դերագոյն ճգնաժամին մատնուած ըլլայ։*

*Ատանան դիակներու և մոխիրներու կոյտ մըն է այսօր։ Անկէ փրթած աւերումը և եղեռնի ուրուականը շրջակայ գիւղերը քարուքանդ ընելէ վերջ՝ տարածուեցաւ վիլայէթին ամէն կողմերը, և անոր սահմաններէն ալ անդին անցնելով՝ Հայութիւնը իր տունին մէջ վառեց, իր արիւնին մէջ խեղդեց ահաւորօրէն։*

*Մերսինի քիթին տակ Տարսոնի Հայը կոտորուեցաւ, այրուեցաւ։ Մերսինէն քանի մը ժամ հազիւ հեռու գիւղերու մէջ Հայեր մորթուեցան, թալլուեցան։ Մարաշ, Հաճըն, Այնթապ չարագուշակ լռութիւն մը կը պահեն՝ աղէտքի առաջին հառաչներն արձակելէ ետք։ Զօր-Մարզուան պաշարուեցաւ, ու չի գիտցուիր տակաւին, թէ անձնատուր եղա՞ծ է, և գիտէք թէ ի՛նչ ըսել է անձնատուր ըլլալ այս անաւոր պայմաններուն մէջ...*

երբ մէկ կողմէն զօրք կը դրկուի ասկէ դէպի «վեր», դէպի ներսերը, և ինչ զօրք:

Քէսապը լմնցաւ, 2000 ջարդուած, մնացածները՝ 2000ի չափ Իսպանացի Ֆրանչիսկեան վարդապետի մը և Ֆրանսական փոխ-հիւպատոս Պ. Էսկար Ժէօֆրուայի հերոսական առաջնորդութեամբ՝ Սուէտիոյ ամայի եզերքներէն Մէսաժըրիի Nigèr նաւը և Ֆրանսական մէկ երկու մարտանաւեր կը փախցուին և Լաթաքիա կը փոխադրուին: Ասոնց և ուրիշ օտարներու Ատանայի մէջ Հայերը պաշտպանելու և պատսպարելու համար ունեցած սխրալի անձնուիրութիւնը՝ անկարելի դրուագ մը կը կազմէ զոր հիմա չեմ կրնար ուրուագծել անգամ:

Մինչեւ հիմա լսուած զոհերուն թիւը 20,000ի կ'անցնի, և դեռ կանգ առած չէ շղթայազերծ արհաւիրքը...: Կեդրոնական կառավարութիւնը բան մը ըրած չունի: Պոլսոյ մէջ վերջերս կատարուած հսկայ յեղաշրջումը դեռ ո՛չ մէկ բարերար ազդեցութիւն ըրած է այս ատելի դժոխային կացութեան վրայ: Իսկ տեղական իշխանութիւնները, որոնք այս աղէտքին բացարձակ ու ակներեւ սադրիչներն ու պատասխանատուներն են, ո՛չ միայն չեն սանձուած դեռ իրենց ճիւաղային գործին մէջ, այլ՝ վիթխարի ոճիրը գործելէ վերջ՝ հիմա ալ դատախազի ու դատաւորի դերն ստանձներ են, և աջ ու ձախ Հայերը կը ձերբակալեն, անոնց վրայ բեռցնելու համար իրենց մեղքին ահագնութիւնը...:

Բայց ձգե՛նք այս քստմնելի պատմութիւնը: Թերեւս ուրիշ տեղ պիտի կարդաք զայն իր խուժդուժ մանրամասնութիւններովը:

Ես այս քանի մը անձկոտ ու հապճեպ տողերով կ'ուզէի դիմել Ամերիկահայ տարագիր եղբայրներուս սրտին, անոնց անմիջական կարեկցութեանն ու աջակցու-

թիւնը հրաւիրելու այն անսահման, անչափելի թշուառութեան վրայ զոր այս աղէտը ստեղծած է Կիլիկիոյ մէջ:

Չեմ կրնար գտնել բաւական ճիչդ, բաւական աղեխարշ, բաւական եղերական բառեր, ըսելու, նկարագրելու համար այս օրերս աչքերուս առջեւ պարզուած խեղճութեան լացնող, խենդեցնող տեսարանները...: Միայն Մերսինի մէջ 1000է աւելի է ապաստանեայներու թիւը, Հայոց Եկեղեցիին, Ֆրանսացւոց Քօլէճին և Ամերիկեան Միսիօնարական հաստատութեան մէջ: Մեծ մասամբ որբեւայրիներ և որբեր, ամենքն ալ անօթի, ամենքն ալ կիսամերկ, ամենքն ալ քարերու և տախտակներու վրայ փռուած...: Ա՜հ պզտիկնե՛րը, պզտիկնե՛րը մանաւա՛նդ, ի՜նչ անուշիկ, ողորմուկ ու պաշտելի դէմքեր, ի՜նչ ադուորիկ չօճուխներ կան ասոնց մէջ... Ու ոմանք հիւանդ ինկեր են իրենց մայրերուն ծունգին վրայ, հարսանիքէ կը տառապին: Եւ ուրիշներ կը ժպտին, կը խաղան՝ տառապանքի այս շրջանակին մէջ, անգիտակից՝ իրենց շուրջ անցած-դարձածին... Վա՜խ, եավրո՜ւմ, վա՜խ, ձեր ճակատագի՞րն ալ արիւնի մղձաւանջներու մէջ անմեղութեան ձեր աչքերը մեծ-մեծ բանալ ու զարմանալ պիտի ըլլայ եղեր... Դժբա՜ղդ, դատապարտուա՜ծ սերունդ:

Եւ դեռ ասոնց պէս հազարներ, տասնեակ հազարներ կան Ատանա և այլուր:

Ո՞վ պիտի ամոքէ այս անհուն կարօտութիւնը, ո՞վ պիտի հասնի, ո՞վ պիտի դիմագրաւէ թշուառութեան այս ծովացեալ հոսանքին:

Պոլսոյ մեր ազգային վարչութեան կողմէ դրկուած օգնութեան յանձնախումբին տրամադրած ճղճիմ միջոցները կաթիլ մը ջուր են կարօտութեան ովկիանոսին առջեւ: Այսչափով միայն Մերսինի ապաստանեայներուն իսկ կարելի չէ չոր հաց տալ քանի մը շաբաթ:

Պէտք է ամբողջ ազգը Կիլիկիա դարձնէ իր ուշադրութիւնը և հոն տեղացնէ իր նիւթական բոլոր հնարաւոր օժանդակութիւնը։ Եւ ասիկա՛ ո՛չ թէ աղէտքը դարմանելու միամիտ յաւակնութեամբ, այլ անոր արդէն ահագնավիթխար համեմատութիւնները կասեցնելու և անոր ահարկու հետեւանքները — սովամահութիւն, համաճարակ, անբարոյացում, արտագաղթ ևն. — կանխելու, արգիլելու համար։

Թո՛ղ Ամերիկահայ բոլոր կազմակերպութիւնները այս կենսական գործին նուիրուին անմիջապէս։ Թո՛ղ Ազգը, Հայրենիքը, Ե. Հայաստանը, Կոչնակը, Ասպարէզը հանգանակութեան սիւնակներ բանան։ Թո՛ղ մեր քաղաքական կուսակցութիւնները, որոնք վերջերս այնքան անուշ և ունայն երգեր հրամցուցին Կիլիկեցիին, համերաշխաբար գլուխ կանգնին այս օգնութեան գործին և ամէն գնով ջանան որ յաջողի ան, և շուտո՛վ...։

Կը խնդրեմ Ամերիկայի ու արտասահմանի բոլոր հայ թերթերէն որ արձագանգ տան այս ճգնաժամային կոչին, որ ահազանգ մըն է միանգամայն, զի դեռ խելայեղ հնչունքն ունինք նորանոր զարհուրելի գոյժերու... Գէթ ազգային այս մեծ ցաւին մէջ հոգեխառնուիլ, եղբայրակցիլ գիտնա՛նք։

Արիւնի մէջ թաւալող Կիլիկեցիին աղերսանքն է ասիկա...։

---

## ԵԳԻՊՏՈՍԻ «ԼՈՒՍԱԲԵՐ-ԱՐԵՒ»ԻՆ

Մերսին, 19/1 Ապրիլ

Եթէ Կիլիկեան արհաւիրքին շարունակման ու ծաւալման անդոհը մեր հոգին խափանած ու մեր սրտին զարկը բռնած չըլլար ա՛յս վայրկեանիս, թերեւս աւելի

ազդու, աւելի զգայացունց աղաղակներով կարենայինք վերապրողներուն օգնութեան կանչել Հայութեան դեռ չի ջարդուած մասերը և ջարդի վտանգէն դուրս ապրող եղբայրական գաղութները :

Բայց հիմա, չե՛նք գիտեր, Կիլիկիոյ մահացումին զօղա՞նջը զարնենք, թէ հայկական ընդհանուր մահավճռի մը դէմ հաւարի ահազանգը հնչեցնենք :

Մէկ կողմէն աղէտքին անհունութիւնը մեր կորովը կը ջլատէ, կ'անդամալուծէ, միւս կողմէն՝ Կիլիկիոյ սահմաններէն մինչեւ Անատօլուի խորերը յաւերժացող սա ճգնաժամային կացութիւնը թոյլ չի տար մեզի կուռ ու ամփոփ մտքով սեւեռուելու օգնութեան ու դարմանումի ահագնածանր խնդրին վրայ :

Ի՞նչպէս բոլորանուիրուիլ բացուած վէրքերը գոցելու, ծովացած ցաւերը ամոքելու գործին, երբ անդին ցեղին կուչակէն արիւնը դադրած չէ հոսելէ, երբ հայաջինջ մղձաւանջը կը տեւէ, երբ աղէտքը ահեղագոյն համեմատութիւններ կը սպառնայ առնել... :

Ասիկա թո՛ղ դատալիք մտածում մը չի կարծուի ձեր անսահման տառապանքին հանդէպ ; ո՛վ Կիլիկեցի ցաւագին հարազատներ, որոնց անօթութեան ու անձկութեան հեւքը չնչեցի, և որոնց արցունքի աղբիւրէն աչքերս իրենց բաժինը խմեցին :

Վերապրողները թո՛ղ վստահ ըլլան, թէ Հայութիւնը չանտեսեր, չի մոռնար զիրենք, թէ ան իր սպառած երակներն իսկ բանալու պատրաստ է կեանք ջամբելու համար իրենց :

*
* *

40,000 Հայեր՝ մոխիրի՜ վրայ նստած՝ մերկ ու անօթի են այսօր Կիլիկիոյ մէջ : Ասոնցմէ 15,000էն աւելին

*Ատանա կը գտնուին, Միլլէթ Պանչէսին ու Թրփանիի գործարանը կուտակուած, աւելի քան 3000 Թարսուսի մէջ, 1300 Մերսին, Հայ Եկեղեցիին, Ֆրանչիսկեան ու Ամերիկեան հաստատութեանց պատերուն ետին, 40,000՝ Քէսապ եւ շրջակաները, գրեթէ նոյնքան Ալեքսանտրէթ ու Տէօրթ-Եօլ, ու դեռ հազարաւորներ՝ քիչ մը ամէն կողմ: Եւ եթէ նկատի ունենանք վերջին սարսափներուն հետեւանքով ամէնուրեք կենսական աշխատանքի դադարը՝ պէտք կ'ըլլայ 40,000ը առնուազն կրկնապատկել՝ Կիլիկեան կարօտեալներու թիւին վրայ մօտաւոր գաղափար մը կազմելու համար:*

*Ասոր ալ փա՛ռք տալու ենք, զի գէթ այսքան վերապրողներ ունենալու մխիթարանքէն ալ զուրկ պիտի ըլլայինք այսօր, եթէ տեղ տեղ օտարներու կողմէն նախախնամական ապաւէն մը բացուած՝ կամ փըրկութեան լաստ մը նետուած չըլլար Եղեռնին առջեւէն փախչող Հայերուն:*

*Ո՛րքան ալ դառնաթոյն խաբուած ըլլան մեր սըրտերը Եւրոպայի դէմ՝ մեր կոչկոծամա՛ն բնաջնջումին իր անայլայլ հանդիսատեսութեանը համար՝ պիտի չի կրնանք բնական երախտագէտ ըլլալ մէկ քանի Եւրոպացիներու, որոնք այս ահաւոր աղէտքին մէջ անձնուէր պաշտպանութեան ձեռք երկնցուցին մեզի: Ասոնց շարքին — ինչ որ ալ եղած ըլլայ իր քաղաքական դերը — առաջին տեղը կը գրաւէ Ատանայի Անգլ. Հիւպատոսը, Մր. Տօթի-Ուիլի, իր դիւցազնական կնոջ հետ: Տիեզերական վատութեան այս օրերուն չերեւակայուելիք ազնուութեամբ մը այս Անգլիացին կրակի տարափներու տակ իր կեանքին հետ խաղաց, եւ իր գնդակահար դաստակէն վազող արիւնին անտարբեր՝ ձիէն վար չիջաւ, հազարաւոր Հայերու փրկագործումին հետապնդելով, մինչ*

իր կինը, իր արժանաւոր ու պաշտելի կինը, չորս էրիկմարդու խտացեալ կորովովը գօտեպինդ, հասաւ բոլոր վիրաւորներուն, և անոնց վէրքերը կապեց, բոլոր հոգեվարքներուն, և անոնց զրաւուող հոգիները կէս ճամբէն ետ դարձուց...։

Ինչպէս մոռնալ, մանաւանդ, սխրալի ընթացքը, վեհագոյն վարմունքը Ֆրանսացի միսիոնար հայրերուն ու քոյրերուն, Ճիզուիթ ըլլան թէ Ֆրանչիսկեան, Քաբուչին թէ Քարմէլիթ, որոնք ամէն տեղ մահահալած Հայուն առջեւ իրենց դուռն ու գիրկը բացին, իրենց բերնին հացը տուին անօթիներուն, իրենց անկողինը՝ վիրաւորներուն, հիւանդ մանկիկներուն ու ծոցւոր կիներուն։ Ատանայի մէջ երբ կառավարութիւնը պաշտօնապէս կը դիմէր իրենց՝ յանձնելու համար իրենց շէնքերն ապաստանած Հայերը՝ «Նա՛խ մեզ սպաննեցէ՛ք» պատասխանեցին անոնք, սեմերնուն վրայ կեցած, «Նա՛խ մեզ սպաննեցէ՛ք, ապա կը յանձնենք այս թշուառները»... Անոնք Ամերիկեան միսիոնարներուն պէս պէտք չունեցան վարանելու կառավարական նենգ սախսումներուն տակ, պէտք չունեցան, որ Հայերն իրենց ոտքն իյնային, խելայեղ արցունքներով ու թախանձանքներով։ Եւ երբ հարկ եղաւ կրակի սեղմուող շղթային մէջէն ապաստանեալները դուրս հանել՝ հերոսական Բէր Րիկալն ու Բէր Ժիւլն էին որ անոնց առջեւն անցան և զանոնք սէրայէն պարտէզը տարին, անոնց կեանքին պատասխանատուութիւնը ծանրացնելով կառավարութեան ոճրաբեռն ուսերուն...։ Հապա՝ Քէսապի կոտորածէն փախստական՝ սովալլուկ լեռներն ինկած Հայերուն փրկագործո՞ւմը, որ ամէնէն եղերական դրուագը կը կազմէ ամբողջ այս արիւնի ու աւերի եղերերգութեան։ Քէսապի Ֆրանչիսկեան հայրերէն Բէռ Սապաթինօն էր, որ գիշերանց



ՀԱՅՈՑ ԹԱՂԸ

1. Հայ Կաթոլիկ Թէրզեան Վարժարան այրելէ ետքը 1. Բողոքականաց Եկեղեցի

Լաթաքիա կը չապէր հեւ ի հեւ, ու անդրայն Ֆրանսական փոխ-հիւպատոս Պ. Էսկար Ժէոֆրուայի հետ Կրդրայէն եկող Մէսաժըրիի Նիժեր նաւը կը նետուէր, վայրկեան առաջ Պասիթի առջեւ հասնելու եւ Բէյրութի վերադարձները, մեծ մասամբ կին ու մանկտի, մահուան անդունդներու եզրէն ազատելու: Թնդանօթի ու փողի ձայներով փախստականները կը կանչէին, որոնք հետըզհետէ մրջիւնի պէս դուրս կուգան քարերու եւ թուփերու տակէն: Նիժերի վրայ 2300ի չափ կը լեցուին: Կերակուր ու խմելիք կը սպռուի առնց: Հետզհետէ կը հասնին Ժիւլ Ֆեռրի եւ Վ.էրիքէ զրահաւորները, որոնք մնացեալ փախստականները կը ժողվեն ու Լաթաքիա կը փոխադրեն ամենքն ալ Ֆրանսայի «բարոյական» հովանաւորութեան տակ...: Եւ ըսե՛մ թէ այս տողերը գրած պահուս՝ Լաթաքիոյ Ֆրանսական հիւպատոս Պ. Էսկար Ժէոֆրուայի բերնէն իսկ կ'իմանամ, թէ այսքան դժուարութեամբ փրկուած Բէյրութի վերադարձները դարձեալ իրենց տեղերը փոխադրուելու եւ փլատակներու վրայ տեղաւորուելու ստիպեր են...:

*
* *

Ո՞վ պիտի հասնի այս բաղձանքին: Կշտացնել, պատսպարել, ազդեցնել պէ՛տք է վերադարձները: Եւ սակայն չի լմննար ամէն բան: Պէ՛տք է Կիլիկեցի աղէտեալներուն վաղուան ճակատագրովն ալ զբաղիլ: Ո՞ւր պիտի երթան, ի՞նչ պիտի ընեն, ի՞նչպէս պիտի կրնան այս քարուքանդ ու այրեաւյուեր երկրէն իրենց համար ապրուստի կռուան մը վերստեղծել: Օգնութիւնը, ո՛րչափ ալ առատ ըլլայ, չի կրնար ամբողջ բնակչութիւններու կեանքին միայն պայմանը դառնալ: Պիտի թողլ ուրո՞ւի, որ Կիլիկեցին զանգուածովին գաղթէ ու Սուրիա-

սահմանի ովկիանոսին մէջ լուծուի, կորսուի, թէ ոչ՝ կարելի ըլլայ վերապրողները իրենց հայրենի հողին կառչած պահել՝ իրենց մոխրացած օճախները վերականգնելով և իրենց ապրելու միջոցներ ստեղծելով։

Բայց թողո՛ւնք հիմա այս տագնապալից հարցը։ Արդէն թուրք կառավարութեան ցոյց տալիք արդարութիւնն է որ այդ հարցին վճռական լուծումը պիտի տայ մէկ կամ միւս կերպով։

Հիմա պէ՛տք է մեր բոլոր ճիգերը, ամէն կողմէ, նուիրուին օգնութեան անմիջական գործին։

Նպաստները պէտք է կեդրոնացնել Մերսին, Պատրիարքարանի պատուիրակներուն տրամադրութեան տակ։ Այս կէտը կը շեշտեմ, ու կը խնդրեմ որ Արտասահմանի ամէն կողմէ նկատի առնուի այս յանձնարարութիւնս։ Որովհետև Պոլսոյ մեր ազգային իշխանութեան կողմէ ղրկուած մարմինն է միայն որ ժողովուրդին կարօտութեանց խորունկ գիտակցութեամբ և անաչառ ու բարեխիղճ կերպով կրնայ կատարել օգնութեանց բաշխումի փափուկ դերը։



# Տուր, Տո՛ւր...



Պէյրութի առջեւ, 25/8 Մայիս

*Քաղաքին մուտքը արգիլուած է Հայերուն, նո՛յնիսկ անցողակի այցելութեան մը համար: Արդէն՝ Մերսին՝ Միւթէսարրըֆին կողմէ չոգենաւային գործակալութեանց հրամայուած էր Պէյրութի և ուրիշ որ և է Թուրք նաւահանգիստի համար տոմսակ չի տալ Հայերուն:*

*Կիպրոս անմիջական հանգրուանը կը հանդիսանայ փախստական Կիլիկեցիներուն: Եւ անկէ է որ Կիլիկիոյ իրական կացութիւնը՝ իր բովանդակ արհաւիրքով կրնայ արձանագրուիլ՝ հեռագրական* ամփոփ *և թղթատարական անապահովութեան այս խափանիչ, արգելիչ պայմաններուն մէջ:*

*Ցարդ Կիպրոս ապաստանածներուն թիւը 2000ի կը հասնի: Ատոնց մէջ են Ադանայի ու Տարսոնի ականաւոր ընտանիքներ, մեծ մասամբ կիներ ու տղաքներ, զի ողջ մնացած այրամարդիկը քանի մը կը դրուին կառավարութեան կողմէ որ գէթ կարելին չընեն զաւակնին պատսպարելու և սնուցանելու համար:*

*Մարդկային այս եղկելի խլեակներէն հարիւրի չափ ալ երէկ Լառնաքա նաւուեցան: Նաւուն մէջ իրենց կ'ընկերանայի և ծովուն վրայ անգամ մըն ալ ցաւագինօրէն մտիկ ըրի իրենց դժնդակ պատմութիւնը...:*

Կիպրոսի մէջ Նպաստամատոյց յանձնախումբ մը կազմուած է տեղացի մէկ քանի Հայերէ, որոնք ամէն ուղղութեամբ տխրողական դիմումներ ըրեր են, որպէս զի օգնութիւն փութացուի իրենց... Ո՞ր մէկուն, Տէր Աստուած, ո՞ր մէկուն պիտի հասնի այս թշուառ ազգը, ո՞ր մէկ կարօտութեան պիտի բաւէ: Տո՛ւր, տո՛ւր, տո՛ւր, տոլապներուդ, դաշթականներուդ, աջէստաններուդ տո՛ւր, ու թո՛ղ մէկ կողմէն Ազատ Թուրքիան խարխլած տունդ քանդէ, արդար հացիդ ալիւրը չորցնէ, երակներուդ արիւնը ցամքեցնէ, քեզ օճախէդ ու հողէդ հալածական փախցնէ: Տո՛ւր, հոգ չէ՛ թէ ա՛լ քամուեցար տալէն, ա՛լ վրադ ձոր ու քախաք չի մնաց: Տո՛ւր... Բայց ուրկէ՞ց պիտի տաս զայն, խե՛ղճ ազգս, երբ տուող, հանող, դատող ձեռքերդ իսկ մուրալու կ'երկննան մէկ օրէն միւսը... Տո՛ւր, տակային, որովհետեւ եղբայրներուդ ամենէն պատուականներուն ու ամենէն անհեզօրէն անիրաւուածներուն համար է: Տո՛ւր, որովհետեւ քեզի միայն ապաւինած հազարաւոր անմեղ ձագուկներու, խեղճ մայրերու եւ անոնք ու ախտաբեկ քոյրերու համար է: Տո՛ւր, որովհետեւ այսքան արիւնոտ զրկանքներու եւ ահարկու աղէտներու պատճառանատու «բարեխնամ» կառավարութիւնդ ՉԻ ՏԱՐ. ա՛ն առնել գիտէ միայն, եւ ի՛նչպէս առնել... Տո՛ւր, դըժբաղդ ազգս, տո՛ւր, որովհետեւ Օսմանեան ազատ, «երիտասարդ»ացած ու սահմանադրական պետութիւնը քարսիրտ մօրուքի մը չափ ալ հոգածութիւն չունի քու անսահման տառապանքիդ համար: Տո՛ւր, վերջապէս, ունեցածդ-չունեցածդ ալ տո՛ւր, որովհետեւ դուն իրաւունք չունիս արդէն բան մը ունենալու այս երկրին մէջ, ու ողորմելի միամտութիւնդ է եղեր կարծել թէ այսօր ունեցածդ վաղը քուկդ ըլլայ. դուն տարը, քեզն,

երեսուն տարի չարաչար պիտի աշխատիս, պիտի տըք-նիս, քու և քուկիններուդ բարօրութեան շէնքը կանգնելու համար, ճակտիդ քրտինքովը պիտի շաղախես անոր քարերը, բայց պիտի չի մոռնաս թէ դուն հիւր մըն ես լոկ հոն, և թէ ուշ կամ կանուխ պիտի գան զայն պարպել, և իրենց սուները պիտի տանին քու թանկագին գորգերէդ մինչև խոհանոցիդ կաթսաները, պիտի թալլեն խանութդ, պիտի տանին ստացուածքդ, պիտի ոսկիներդ յափշտակեն գաձայիդ մէջէն, կնիկիդ կուրծքէն ու աղջկանդ ճակտէն, և եթէ քեզ ու քուկիններդ չի մորթեն ալ՝ երդիքիդ մախիրներուն վրայ պիտի նստեցնեն, և քանդումով ու կողոպուտով յըղփացած այս մարդիկը յաղթականօրէն պիտի երթան շարունակել իրենց ոճրաբոյծ, խէնէշ, այլ տիրական ծուլութիւնը, մինչ դուն մուրալով պիտի վերսկսիս պատրաստել իրենց յառաջիկայ աւարը... Ասիկա է եղեր — երէկ բռնակալութեան՝ այսօր «մուսավաթ»ի րէժիմին տակ — այս երկրին մէջ քու գոյութեանդ տիրող անյեղլի դատավճիռը, և եթէ տասն անգամ ալ Պոլիս արշաւեն Սելանիկի ազատարար լէգէոնները, դուն պիտի չի կրնաս դեռ յուսալ՝ թէ քու վրայէդ վերցած ըլլայ դատապարտութիւնը Ատամաններու դժխեմ ու եղերական ճակատագրին...:

Պէյրութի առջևն ենք հիմա: Դուրս չեմ կրնար ելլել, ու՝ Հայ ըլլալս գիտնալով՝ նաւապետը քաղաքավարութեամբ արգիլած է զիս մինչև անգամ կամրջակին վրայ երևալէ, զի՝ կ'ըսէ՝ այս տեղի իսլամ նաւավարները այնքան կատաղի դարձեր են, որ Հայ ճամբորդներու վրայ յարձակիլ կը ժպրհին, և անցեալները Երուսաղէմէն դարձող խումբ մը Հայ ուխտաւորներ ասոնց բիրի հարուածներուն ենթարկուեր են, կիւվէրթէին

իր անհնարին չքմեղանքը պատրաստելու ձեռնարկած է... Բանտերէն արիւնի հոտ կուգայ և մահուան լռութիւնը կը լսուի: — Շաբաթ մըն է որ նոր վալին պաշտօնին գլուխը անցած է և իրերու այս անպատմելի վիճակը կը յաւերժանայ... Ոճրագործները դեռ իրենց պաշտօնական դիրքերուն վրայ կը մնան՝ անարգել կերպով անձնատուր իրենց վայրագ կամայականութիւններուն... Կեդրոնական կառավարութիւնը ի՞նչ կ՚ընէ, ե՞րբ պիտի շարժէ իր մատը, ե՞րբ պիտի կեցնէ եղեռնագործ ձեռքերը, ե՞րբ օգնութեան պիտի հասնի մահացողներուն...:

Երէկ հեռագրով Պատրիարքարան հաղորդուեցաւ կացութեան գերագոյն ծանրութիւնը: Ազգային Կեդր. Իշխանութիւնը պէտք է ամէն գնով ձեռք բերէ կառավարութեան վայրկենական ու ամենաազդու միջամտութիւնը՝ կասեցնելու համար նախ սարսափը և արգիլելու՝ աղէտքին ծաւալումը:

Անկէ անմիջապէս ետքն է որ պէտք պիտի ըլլայ ազգովին զբաղիլ այս խնդրով, որուն լուծումէն պիտի կրնանք վերջնապէս եզրակացնել՝ թէ այս երկրին մէջ իբր օսմանեան քաղաքացի և իբր Հայ ապրելու իրաւունք ունի՞նք թէ ոչ:

Անկէ ուրիշ խնդիր չեմ համարեր այլևս Թուրքիոյ Հայութեան առջև, և կը յուսամ որ Պոլիսը, իբրև խտացած արտայայտութիւն թրքահայ զգացումներուն, արդէն սթափած է Իթթիհատեան ազատարար բանակին շուրջ իր վերջին տարփոտ գինովութենէն, և ստանձնած՝ իր լուրջ դերը:

Սան-Սթեֆանօի սպայակոյտին ծաղիկներ ու զբօսանքներ տանող մեր աղնիւ քոյրերը աւելի աղէկ գործ մը կ՚ընեն հիմա, եթէ տուներնին նստին և ճերմակեղէն կարեն հազարաւոր Կիլիկիոյ կիզիչ արևին տակ մերկ

պառկող հարիւրաւոր հիւանդ մանկիկներուն հասցնելու համար։ Վերջէն, սև դրօշակ մըն ալ գուցէ յանձնարարենք իրենց․․․։

Սելանիկի բանակին կամաւոր գրուող մեր կորիճները թո՛ղ սպայակոյտէն հրաման առնեն Կիլիկիա գալու և սովամահ ժողովուրդին հաց փութացնելու ճիգերուն աջակցելու։

Ուրիշ հարց, ուրիշ զբաղում չեմ հասկնար մեր բարեգործական ու քաղաքական մարմիններուն, և ամենէն առաջ մեր Ազգ․ Ժողովին համար։

Երբէ՛ք բաւական կրկնած պիտի չըլլամ, թէ Կիլիկիոյ այս սոսկալի աղէտքը փորձաքարը պիտի ըլլայ Հայ-Թրքական Եղբայրակցութեան։

Հիմա՛ է որ պիտի հասկնանք թէ ո՞ւր կ՚երթանք, թէ ի՞նչ վաղորդայն կըսպասէ մեզի՝ այդ նշանաբանին տակ և այդ ճամբով։

Դեռ յուսահատութիւնը մեր հոգին խորտակած չէ, դեռ վերջին բառը լսած ըլլալ չենք կարծեր, դեռ ապաւէն մը ունինք, և այդ ալ նոր կեդրոնական կառավարութեան վրայ դրուած մեր յոյսն է, Իթթիհատի արդարութեան մասին մեր պահել յամառած հաւատքն է։

Ատանայի եղեռնազարդ վալին լսեցինք որ Սելանիկ կանչուեր է։ Կախուելէ զատ ուրիշ բանի համար չի կըրնար երթալ 30,000 անմեղներու արիւնին մէջ թաթխըւած այդ ճիւաղը․․․ Ցաղթական Իթթիհատը պիտի գիտնա՞յ, պիտի ուզէ՞ անողոք արդարութեամբ մը պատժել զայն և անոր ոճրակիցները, պիտի գիտնա՞յ, պիտի ուզէ՞ պետական հատուցումով ամոքել Հայուն անդարմանելի կորուստը․․․ Այն ատեն այս արիւնին բողոքն ալ մեր ներսիդին պիտի ջանայինք զսպել, լռեցնել, եթէ կարելի է․․․ Չէ՞ որ արդէն 300,000 դիակներու վրայէն

ցատկեցինք, օսմանեան եղբայրութիւնն ընդգրկելով, երդուըննալով... Բայց ատիկա նորէ՛ն ջարդուելու, նորէ՛ն խաչուելու, նորէ՛ն կողոպտուելու, նորէ՛ն քանդըւելու, քայքայուելու համար չէ՛ր...։

Եւ եթէ այսպէս է ու այսպէս պիտի ըլլայ, ես՝ իմ մասիս՝ կը նախընտրեմ... տաճկընա՛լ, քան այդ գնով Հայ-Թրքական Եղբայրութեան մը համակերպիլ...։



# ԴԱՀԻՃՆԵՐՆ ՈՒ ԶՈՀԵՐԸ



Պէյրութէն Հայֆա, 24/7 Մայիս

*Պէյրութի «Le Réveil»ին մէջ Մայիս 4 թուակիր Պոլսէն քաղուած սա հեռագիրը կը կարդամ.* «Խորհրդարանը ցաւ յայտնելով Ատանայի կոտորածներուն համար, 20,000 ոսկի քուէարկեր է վերապրողներուն օգնելու:»

*Ժամանա՛կ էր: Առաջին նշանն է սա, որ յուսալ կուտայ ինծի՝ թէ Մայրաքաղաքին մէջ սկսած են ըմբռնել Կիլիկեան աղէտքին անօրինակ ծանրութիւնը: — Բայց օգնութեան պետական վարկի մը քուէարկութեամբ չի փրկուիր այս կացութիւնը, ո՛չ ալ Քննիչ Յանձնախումբի մը որոշման լուրը կրնայ մեզ ապահովցնել՝ բնաջնջումի արհաւիրքին ենթարկուած բնակչութիւններուն բաղդին նկատմամբ: Փա՜ռք Աստուծոյ, այն արագութեամբ ու ճշդութեամբ որով բարի բաները կը քալեն այս երկրին մէջ, մինչեւ այդ օգնութեան ու յանձնախումբին հասնիլը՝ «բանը բանէն անցած» կրնայ ըլլալ: Ասոր համար է որ նախորդ նամակներուս մէջ՝ Կիլիկեան աղէտքը դարմանելու, կարօտեալներուն օգնութիւն հասցնելու առժամական պէտքէն աւելի՝ վերապրողներուն — անվթար կամ աղէտեալ — սպառնացող վտանգը կանխելու անմիջական հարկին վրայ կը շեշտէի:*

*Կիլիկիոյ Հայութեան Մնացորդը ազգային պաշտ-*

նէութեան արխնոտ ճիրաններէն փրկել պէտք էր օ՛ր առաջ, ժա՛մ առաջ, վայրկեա՛ն առաջ։

Ի՞նչպէս փրկել, չեմ գիտեր, թող բան մը խորհէին, հրաշք մը յղանային Պոլիս և հեռագրով զայն գործադրէին Կիլիկիա։

Երբ «անգլական պաշտօնէութիւն» կ'ըսեմ՝ ամբողջ Ատանայի Վիլայէթները կը հասկնամ, և աւելորդ՝ կը սեպեմ ճշդել քանի մը նիհար բացառութիւններ։

Մերսինի միւթէսարրըֆը, օրինակ, որուն ներբողն հրամցուցի, Մերսինի Հայերը ջարդել տուած չըլլալու մեծագոյն առաքինութեամբն է որ այդ չքեղ բացառութիւններէն մին կը կազմէ։ Ան ալ չեմ գիտեր թէ մինչեւ ո՞ր աստիճան կը բացատրուի իր խղճական ազնուութեամբը, մինչեւ ո՞ր աստիճան անխառն ու վեր կը մնայ ամէն ասիական դիւանագիտութենէ։ Որովհետեւ, վերջապէս, Մերսինէ քանի մը քայլ հեռու Հայ ջարդեցին, և այս միեւնոյն պատուական միւթէսարրըֆն է, որ Մերսինի մէջ կառավարական ձեռնարկութիւններ ու խուզարկութիւններ կատարել կու տայ, վրան կամ տունը ատրճանակ մը բռնուողը բանտ կը նետէ, և Ատանայի փոխանորդներուն կը թոյլատրէ որ Մերսինի փողոցներուն մէջ Ատանայէն փախստական Հայերուն նաւէն իջնան և զանոնք ձեռք անցնելնուն պէս՝ ատենին Ատանայի բանտը նետեն, սուտ ամբաստանութիւններով։

Ահա թէ ի՛նչպէս անգլական պաշտօնէութիւնը մէկ կողմէն սարսափի ու մահացումի դրութիւնը կը շարունակէ, և միւս կողմէն իր անկարելի, աներեւակայելի չքմեղանքը կը պատրաստէ...։

Ամէն բան Հայերն են ըրեր, ամէն մեղք, ամէն ոճիր Հայոց վզին — կարծուած թէ անոր մնացած — կը ծանրացնեն։ Հայե՛րն են՝ իրենց վերջին ապաւէնն՝ օտար

*հաստատութիւններուն այրողները, Հայերն են իրենց տուներն ու հանրային շէնքերն հրկիզողները, Հայերն են...* իրենց զիրենց ջարդողնե՛րը...։

*Ատանայի կոտորածը երկարօրէն ծրագրող ու հրէշօրէն գործադրող տեղական կառավարութիւնը չի՛ ներեր Հայերուն ոչխարի պէս մորթուիլ չուզելով՝ առաջին դէպքին՝ երեքօրեայ յուսահատ ու հերոսական ինքնապաշտպանութիւն մը փորձած ըլլալնին։ Անիկա բնական կը գտնէ և իր արդար իրաւունքը կը նկատէ կառավարական* տէփօէն *խուժանին զէնք բաժնելը, կանոնաւոր զօրքին ու պաշը-պօզուքին եղբայրաբար Հայերուն վրայ խուժելն ու զանոնք սուրի, գնդակի ու կրակի բռնելը։ Բայց թէ ա՛լ մը տղայ քաջութիւնն ու անձնուիրութիւնն ունեցած ըլլան իր կազմակերպած, իր չղթայազերծած այս անագորոյն գազանութեան կուրծք տալու, զայն քանի մը օր ետ մղելու, անիկա աններելի ոճիր մը, անհանդուրժելի յանդգնութիւն մը կը նկատուի պաշտօնական դահիճներուն կողմէն... Եւ անիկա — յուսահատական հաստատում — մի միայն տեղական եղեռնազանգ կառավարութեան խորհելակերպը չէ՛, այլ ամբողջ այս կողմերու Թրքութեան, ըստ որում Հայերն ինքզինքնին պաշտպանելու իրաւունքը չունին, երբ խուժանն է իրենց վրայ յարձակողը, պէ՛տք է թեւերնին կախեն ու վիզերնին երկնցնեն, պէ՛տք է անշարժ ու անմռունչ դիտեն իրենց կիներուն ու աղջիկներուն լլկումը, իրենց զաւակներուն սրածութիւնը, իրենց ինչքին թալանումը, իրենց տունին ու տեղին աւերումն ու հրդեհումը. չա՛ր-չա՛ր կրնան լալ, պաղատիլ ու փախչիլ՝ եթէ վրիպին, վերապրին...։ Իսկ եթէ համարձակին ինքնապաշտպանութեան* ժեսթ *մը ուրուագծել, դիմադրութեան զէնք մը վերցնել՝ քաղաքակա՛ն յանցաւոր*

են, ապստա՛մբ են, տէվլէթ խայինի՛ են, «Թագաւորութիւն» կ'ուզեն, և՝ ատոր համար՝ իրե՛նք են բոլոր թափուած արիւններուն, բոլոր կուտակուած աւերներուն հեղինակներն ու պատասխանատուները...:

Ի՞նչ կ'ըսէք ասոր:

«Վա՛ր պապանը՝ ամտա կէօր», պիտի կարէր Վեհապետեան Սրբազան, դառնօրէն հեգնական: — Այսինքն՝ ա՛ս ա՛ս է, որո՛ւն որ զօրքին չի գար՝ թո՛ղ... «Մաւքօ փաշային» հասկցնէ իր տէրը:

Տասնամեայ ազատութիւնն այս մասին ոչինչ փոխած է «միապետող ցեղին» մտայնութեան մէջ:

Մերսինի մութէսարրիֆը, որուն հանդէպ յարգանքով, հիացումով ու երախտագիտութեամբ լեցուած ենք, անցեալին Հայերը ջարդել տուած չըլլալուն համար, անցեալ օր խօսակցութեան մը մէջ հետեւեալ անուշիկ այլ նշանակալից դատապարտութիւնը կ'ընէր Ատանացի Հայերուն. «Նէ՞ տէմէք օլուր քի պիր էրմէնի էվինտէն օրուզ պանէ սիլահ աթըլսըն»: Եւ կ'աւելցնէր. «Պիզ էօփիւշտիք, զարտաշըզ տէտիք քի պիզէ զարշը սիլա՞հ մը չըզարըրլար»: Այս խօսքերն ամբողջ հոգեբանութիւն մը երեւան կը հանեն իր անհուն անկեղծութեանը մէջ: Անոնք առարկութիւն չեն վերցներ, բացարձակ են ու անյեղլի, և ժամանակ պիտի կորսնցնէիր, եթէ ձեռնարկէիր հասկնալ կամ հասկցնել թէ իր տունին, իր պատիւին, իր կեանքին մէջ պաշարուած, սպառնացուած, մահուան ճգնաժամին ենթարկուած Հայուն ի՛նչ օրէնքով և ի՞նչ արդարութեամբ կրնայ եղեր զլացուիլ ինքզինքը պաշտպանելու իրաւունքը:

Չեմ գիտեր թէ Շէրիաթը ի՛նչպէս կը լուծէ այս հարցը. Շէյխ Վահտէթթինէն կամ Վոլքանի հեղինակաւոր խմբագիրներէն լուսաբանուելու էր այդ մասին:

Բայց գիտեմ որ վերի յառաջադիմական խօսքերն արտայայտող Թուրքը՝ ո՛րքան ալ Հայ արիւնէն մաքուր ըլլան իր ձեռքերը՝ բարոյապէս կը համերաշխի, cause commune կ՚ընէ Հայուն դահիճներուն հետ։

Եւ եթէ ա՛ս է ամբողջ Թուրք ազգին զգացումը, ինչ որ չեմ կրնար, չեմ ուզեր մտածել, եթէ մարդկային կեանքի նուիրականութեան տեսակէտով ալ՝ «հաւասարութեան» սկզբունքն այսպէ՛ս կը դատուի Թուրք խղճմտանքին մէջ՝ այն ատեն, վա՜յ մեր գլխուն, զի մեզի կը մնայ հրաժեշտ տալ ազատ քաղաքացիութեան ու խաղաղ զարգացումի մեր խանդավառ սպասումներուն և սորվիլ չղթան կամ տարագրի մախաղը նորէն վիզերնիս անցնել։

Ատանայի զարհուրանքին սեւ հերոսները կը զգան արդէն թէ իրենց առաջին կրակներուն դէմ Հայոց պարպած քանի մը տասնեակ տապանճաներուն համար ինքնապաշտպանութեան արդարացումը չափազանց բաւական ու իրաւացի ալ պիտի դատուէր ամենքէն, և այդ մասին կանխահոգ մտադրութեամբ մըն էր որ հայկական «ապստամբութեան» մը այլանդակ ու գռեհիկ մասալը մէջտեղ նետեցին. մասա՛լ՝ որ բերնէ բերան պտըտեցաւ հսկայական համեմատութիւններ առնելով և իրենց մոլեռանդութիւնն ու մոլեգնութիւնը գերազանցելով. մասա՛լ՝ որ Իթթիհատի խմբագիր Իհսան Ֆիքրիի գրչին տակ հետզհետէ ճոխացաւ պօմպայ-ի, տինամիթ-ի ու Հայ ազգային դաւերու խելայեղիչ պատմութիւններով, մինչ Հայերը պաշտպանութեան ամէն միջոցէ զուրկ՝ հարիւրներով կը վառէին իրենց դպրոցին մէջ և հազարներով ալ գնդակի կը բռնուէին. մասա՛լ՝ զոր օտար հիւպատոսներուն ալ կլլեցնելու համար ի զուր ատոնց մօտ պատգամաւորներ վազցուցին՝ հեւասպառ ազդա-

բարեկամ. «Լսեցի՞ք Հայոց նետած ռումբերուն ձայնը, մենք ձեզի չէի՞նք ըսեր»... Մնա՛ց, սակայն, որ զիրենք խայտառակելու միայն ծառայեց, իրենց քամինելի չահատակութեանց մրջացին իսկ, և հիւպատոսներէն մէկը, կարծեմ Անգլիականը, սա խարանիչ պատասխանով ճամբեց ռումբի ձայն մամանանչերու համար իր դուռն ափսանող պատուիրակը. «Ես զինուոր եմ, Պարո՛ն, եւ շատ լաւ գիտեմ թնդանօթի, տինամիթի եւ կազի սնտուկի պայթիւններուն տարբերութիւնը»...

«Ազատամարտութի՞ւն»... Սասունի՞ մէջ, սա քանի մը տասնեակ հրացաններո՞վ, սա ափ մը «ռէվօլվէր» բռնող տղաքներո՞վ, որոնց թիւն առաւելաբար հարիւրով չի համրուիր, «ազատամարտութի՞ւն»՝ քառասնապատիկ աւելի զօրաւոր ու բիւրապատիկ աւելի լաւ զինուած խաժամ ամբոխին դէմ. «ազատամարտութի՞ւն»՝ հազարաւոր ռազմամթերք տրամադրող կառավարութեան մը դէմ. «ազատամարտութի՞ւն»՝ երբ տեսա՛ք, սրունքներուն ստախօսնե՛ր, ձեր աչքերո՛վ տեսա՛ք, թէ առաջին երեք օրուան պաշտպանողական դիմադրութենէն ետք տապանաներուն փամփուշտը հատեր էր և ձեր երկրորդ խուժումին դէմ մէկ հատիկ զէնքի արձակումին ալ չլսեցիք ձեզի դէմ. «ազատամարտութի՞ւն»՝ երբ տեսաք թէ ժողովուրդը քանի մը օրուան հացի պատրաստութիւն անգամ չունէր, քաղաքին կեդրոնը, ամէն կողմէն ձեզմէ պաշարուած Հայոցին մէջ... Հո՞ս էր, որ «թագաւորութիւն» պիտի հռչակէին Սասունցի Հայերը... Սու՛տ, իրենց «թագաւոր»ցուն ալ մէջերնին չէր գտնէ...:

Ո՛վ անխիղճ Իհսան Ֆիքրի, ո՛վ ամենէն անարգն Սասունցի դահիճներուն, զի գաղափարի՛ ալ դաւաճան, դո՛ւն որ, դեռ քանի մը ամիս առաջ, Հայերուն Յուդայի համբոյրներ տալով՝ անոնց հետ եղբայրաբար Սասունցի

անիծապարտ վայրին կ'ամբաստանէիր Թերթիդ մէջ իբրեւ իսքիպտատի ու Երլաբզի սորմնագոյն արարած, ի՞նչպէս կրցար, դո՛ւն, ո՛վ զազրելի դրուժան, ի՞նչպէս կրցար ձեռք ձեռքի տալ անոր հետ Հայուն մուխը մարելու համար, եւ հիմա անոր գովքը կ'երգես սինիքօրէն. ի՞նչպէս լեզուդ փոխեցիր, ի՞նչպէս կրցար մոռնալ այս երկրին մէջ Հայուն եղած զրկանքներուն, Հայուն հասցուած զուլումներուն վրայ քու երէկուան բողոքներդ, միեւնոյն կեղտոտ քուրջիդ մէջ, զոր Հայուն արիւնին ու աւերին վրայ իբրեւ դրօշակ անկեր ես հիմա... Ու դո՞ւն էիր, ո՛վ ծախուած ու անմիտ Ֆիքրի, որ «ապստամբութեան» մասալիդ դըրդագին սնանկութենէն վերջ՝ եղեռնահրաւէր ցափսոսուքներովդ պիտի ողբայիր «սխալ»ը միամիտ ու անհեռատես «Բիւրօ»երուն, որոնք Հայոց տուները այրելով տաճիկ ռազմական մեծամեծ պատրաստութեանց մախիրներուն տակ փճացման ու անհետացման պատճառ եղած էին (!!!) Եւ այսպէս, կ'ուզե՛ս կողկողագին, որ կարելի չեղաւ ապացուցանել Ատանայի Հայոց «ապստամբական» դաւադրութիւնը...:

Հապա Տարսոնցիներո՞ւնը, Համիտիյէցիներո՞ւնը, Անտիոքցիներո՞ւնը, Բէսապցիներո՞ւնը, հապա Կիլիկիոյ բոլոր այն տեղերո՞ւնը, ուր Հայուն արիւնը հոսեցաւ, յորդեցաւ... Հո՞ն ալ «ապստամբ»... Կիլիկեան ընդհանուր «ապստամբութիւն» հռչակե՛ր է եղեր, ու պէտք էր՝ ան ջարդուէր որ մենք լսէինք տակիա, ի՞նչ եղերական հեգնութիւն...:

Ու թո՛ղ Ատանայի ոճրագործ քիւքը չի կարծէ թէ Հայ Բօմպիթէներու աղմկայոյզ գործունէութիւնը փաստ բռնելով պիտի կրնայ իր օձիքն ազատել: Այդ խօսքի ու ցոյցի ունայն ու պոռոտ աղմուկը զինք չի փրկեր եւ իր դժնդա՛կ զրպարտութիւններէն ո՛չ մէկը կ'ապացու-



**ՀԱՅՈՑ ԹԱՂԸ**

Առաջնորդարանին քովի փողոցը հրդեհէն ետքը :

ցանէ ։ Ո՛հ, այո՛, Սահմանադրութեան հռչակումէն ետքը, մեր քօմիթէները կարծեցին թէ արտօնուած ըլլար իրենց, ամէն ինչ որ երէկ արգիլուած էր. կարծեցին թէ իսլամ մոլեռանդութիւնը սմքած, լմնցած էր, թէ ազատութիւնն ու հաւասարութիւնը ամէն տեղ հաստատուած ու ամենքէն հասկցուած էին, թէ ա՛լ «տղերք»ը կրնային փողոցները թնդացնել ազգային ազատաշունչ երգերով, կրնային դաշոյնի և ատրճանակի ծայր ցոյց տալ երէկուան դահիճներուն, և գրգիռ նայուածքներով ու խապասայի կեցուածքներով ըսել թուիլ անոնց. «Հրամմեցէ՛ք, եթէ սրտերնիդ կ'ուզէ, մենք ա՛լ չենք վախնար ձենէ»... Գիտե՛նք այս բոլորը, և օդին մէջ պարպուած տապանճաներն ու փչուած սպառնալիքներն ալ գիտե՛նք, և արդէն այս վտանգաւոր տղայութիւններուն դէմ իր ամենէն հոյակապ յօդուածը գրած ըլլալուն համար չէ՞ր որ դեռ քանի մը շաբաթ առաջ խաչը հանել ուզեցին Բիւզանդ Քէչեանը...։

Բայց մինչ այդ բոլորը հիւլէի չափ արդարացում — ի՞նչ կ'ըսեմ՝ պատրուա՛կ անգամ — կրնա՞ր նկատուիլ Ատանայի սոսկավիթխար հրէշութեան։ Հինգ փարայի քաղաքական հասկացողութիւն ունեցող կառավարութիւն մը ինքնավստահ ու անտարբեր ներողամտութեամբ մը պիտի նայէր Քօմիթէներու այդ ամեհի աղմըկահարութեանց, ուրիշ բան չի տեսնելով անոնց մէջ, եթէ ոչ՝ երկարատեւ ճնշումներէ ու չոթայումներէ մէկէն ի մէկ ձերբազատուած ժողովուրդի մը հոգիին բընական պոռթկումներն ու արտազեղումները։ Պոռալէն, կանչուըռտելէն, ոռնքալէն պիտի յոգնէին տղաքը։ Աղմուկը հետզհետէ պիտի դադրէր, պիտի հատնէր ինքնին, և ամէն մարդ իր բանին-գործին պիտի ըլլար։ Կ'երեւի թէ այսքան մը քաղաքական իմաստութիւն Թուրքիոյ

*նոր վարիչներէն սպասելն ալ տարապայման խստապահանջութիւն մըն է մեր կողմէն։*

*Մնաց որ, ի՛նչքան ալ ողբալի ըլլան մեր քօմիթէներուն* քաֆքի *ու* քաֆքիճի *սխալները, բացարձակապէս կասկածէ վեր է անկեղծութիւնը իրենց այն յայտարարութիւններուն, որով մերժեցին ամէն անջատողական ձգտում ու ամէն դաւադրական-ապստամբական առաջադրութիւն։*

*Բայց եթէ կառավարութիւնը — սահմանադրութեան ու ազատութեան չեմ գիտեր ի՛նչ ըմբռնումով — կասկածելի կամ վտանգաւոր կը գտնէր քօմիթէներու գոյութիւնն ու գործունէութիւնը, ինչո՛ւ թոյլ տուաւ Թուրքիոյ մէջ անոնց մուտքը։ Եւ եթէ վերջէն անդրադարձաւ այդ անոնց վտանգին վրայ՝ ինչո՞ւ իր խոստութիւնները միմիայն քօմիթէներուն չի սահմանեց։ Ի՞նչ կ'ուզէին խաղաղ ժողովուրդէն, ի՞նչ կ'ուզէին կիներէն ու ծերերէն ու երախաներէն։*

*Քօմիթէներուն հետ իր ո՛ր մէկ առնչութեան կամ համակրութեան համար Ատանայի ամենէն պահպանողական Հայը, Վիլայէթի Իտարէի ժողովին ալ անդամ, Յարութիւն Ճամպազեան կառավարական չէնքին մէջ, վալիին աչքին առջեւ իսկ, սպաննեցին, անոր արիւնին* սիֆրանո*մը սխալով կարդածը։*

*Քօմիթէներուն հետ ի՞նչ դաւակցութիւն երեւցած ըլլալուն համար Ատանայի ամենէն պատուաւոր Հայուն, ա՛ն ալ Իտարէի անդամ, պատուաւոր Գարիպ Աղփաշեանի գլուխը փռեցին Ասլանի Պաղչէի մէկ ակնարկին վրայ, այդպէս ընդհանուր ջարդին ազդանշանը տալով։*

*Քօմիթէներուն հետ ի՞նչ խորհրդաւոր և անհասկնալի կապ ունեցած ըլլալուն համար՝ Վիլայէթին երկրաչափ*

*կուգայ թէ մեր Թուրք հայրենակիցները պէտք եղածին չափ չեն զգար կոր թէ բարոյապէս ի՜նչ անդարմանելի բան մըն է Կիլիկիա կատարուածը։ Գէթ Մերսինի մէջ փոխանակ արցունքոտ աչքերով մեր խոցոտուած սրտերն ողոքելու՝ խեթիւ կը նային Հայերուն, եթէ ամենքն ալ ակռայ չեն կրճտեցներ անոնց դէմ։*

*Ջա՜յն տո՛ւր, Թո՛ւրք խղճմտանք, ամենէն խուովիչը քու լռութիւնդ է….։*



# ՎԱՂՈՐԴԱՅՆԸ ԱՏԱՆԱՅԻ ՄԷՋ



Ատանա, 12/25 Մայիս

*Եղերականին ու ահաւորին մէջ խելայեղ մխրճում մը, հեւասպառ թայթլում մը՝ այս այնս քանդուած Ատանային։*

*Ահռելի իրականութեան հետ դէմ յանդիման եկած՝ անոր խարակ-ճակտին վրայ փշրումն ու ջախջախումը կը զգամ բովանդակ մտածումիս, ցաւագին ու յուսահատ խուճապը բոլոր խորհուրդներուս, և ի զո՜ւր բառեր կը փնտռեմ արտայայտելու համար խռովքը որ կը յորդի ներսիդիս։*

*Առաջին անգամն է որ այսքան չարաչար կը ճանչնամ անկարողութիւնը գրչի ցաւագար ճիգերուն, անբաւականութիւնը բանին բոլոր հնարքներուն, արձանացնելու համար առջևս պարզուող կեանքի պատկերները, չորսդիս ցցուող ու աչքերէս ներս խուժող դժխեմ երևոյթները, ամբողջ սա չարաչուք կացութիւնը, որ հոգիս կը ճմլէ, և որուն հանդէպ հազիւ բաւական կորով կը գտնեմ ոտքի կենալու, նայելու, հասկնալու...*

*Աղէտքի վաղորդայնի մը կերպարանքը պիտի ներկայացնէր Ատանան՝ իր աւերակոյտերովն ու անոնց շուրջ քաշկռտուող, անոնց վրայ լռնացող մարդկային անասելի թշուառութեամբը, եթէ թաղմանական անդորրութիւնն իջած, տիրած ըլլար հոն, մահուան ու քանդումի փոթորիկէն վերջ։ Ու պիտի փորձուէիր ոգե-*

կոչել զուն քեզի, թէ սոսկալի դէպքին յաջորդող այդ-պիսի մեռելական խաղաղութեան մը մէջ վերապրող-ները իրենց սուգը լալու ըլլային, մինչ ահարկու չա-րիքը գործողներուն համար ալ հնչած ըլլար ժամը խղճի խայթի, զղջումի ու մեղապարտ ինքնաստուերածման... Չէ՞ մի որ պատերազմի դաշտերուն վրայ անգամ յաղ-թականները՝ կռիւէն վերջ՝ սրտցաւ կարեկցութեամբ կը նային իրենց զգետնած թշնամիներուն:

Աստանկ չէ՛ վաղորդայնը Ատանայի մէջ: Դեռ մթ-նոլորտը պայծառացած չէ՛ հոս սարսափի, ատելութեան ու եղեռնի ճնշումներէն: Դեռ արիւնին մղձաւանջը փա-րատած չէ ողջ մնացող զոհերուն գլխէն, և դահիճները՝ այսքան նահատակներով չի յագեցած՝ դեռ ախորժակ ու-նին ակռայ կրճտեցնելու և վայրագ նայուածքներ նե-տելու մոխիրի ծովու մը վրայ տատանող սա մարդկային խլեակներուն:

Հոգեբանական ընդհանուր վիճակին այս ըլլալով հանդերձ՝ իրերու ընթացքը զգալապէս փոխուած է հոս քանի մը օրէ ի վեր: Կառավարական խստութիւնները մեղմացած են: Թէեւ հաղորդակցութիւնը բացարձակա-պէս արգիլուած կը մնայ Ատանայէն Մերսին, բայց ա-ղէտեալները տեղին վրայ սեղմող զինուորական շղթան թուլցած է, և անոնք ազատ են հիմա երթեւեկելու քա-ղաքին մէջ, մինչեւ իրիկուան ժամը 12 (ը. թ.), երբ **Իշարէի Քօրֆիէին** բերմամբ ամէն շարժում կանգ կ'առնէ:

Իրենց աւերեալ ագարակները վերադառնալ կամ արտերը հունձքի աշխատանքին իբր վարձուոր երթալ փափաքողները կ'արտօնուին: Բայց շատ քիչերն են որ այդ քաջութիւնը կ'ունենան, զի Հայուն համար կեանքի ապահովութիւն չիկայ դեռ այս կողմերը:

Կառավարութիւնը փութկոտ խնամք մը ցոյց կուտայ

մէջտեղը մաքրելու, աղէտքը կարելի եղածին չափ պարտըկելու, երեւոյթները փրկելու։

Դրսեցիները աղէտեալներու վրաններէն կը հանեն, Թուրք խաները կը լեցնեն և անկէ ալ՝ զինուորական հսկողութեան տակ՝ ճամբայ կը դնեն դէպի իրենց ծընընդավայրերը։ Այսպէս՝ Հաճընցի, Սըվազցի, Մալաթիացի, Խարբերդցի, Կեսարացի և այլ գաղթականներ, որոնք հարիւրաւոր հեմշէրիներ թաղած են Ատանայի փլատակներուն տակ, կ'երթան, կորաքամակ ու տկլոր կարաւաններով, մեռնողներուն սեւ գոյժը տանելու հեռուն անոնց սպասող դժբաղդներուն։

Առաջնորդարանէն եղած դիմումներու վրայ՝ խլամացուած կիներն ու աղջիկները ետ կը բերուին իրենց առեւանգիչներուն քովէն ու եկեղեցին կը յանձնուին։ Անոնց մէջ մինչեւ 11-12 տարեկան չօճուխներ կան որոնք նիքեահ եղած են, և որոնց լլկիչները շնական լրբութիւնը կ'ունենան կոր մինչեւ եկեղեցիին շուրջ գալ ալքատալու, իրենց որսերը կրկին ձեռք անցնելու առիթ մը որոնելով։ Այս հէգ աղջիկներէն դեռ շատեր կը մնան իսլամներու տուները, զի բոլորին ալ տիրութիւն ընող, բոլորին համար ալ հարցնող-փնտռող չի կրնար գտնուիլ անմիջապէս, մանաւանդ գիւղերը, ուր անոնք տարուած և մնացած են մեծ մասամբ։

Առաջնորդարանն ու եկեղեցին, որոնք հրաշքով — հրաշագործ կաշառքով — ճողոպրած են ընդհանուր հրկիզումէն, արշալոյսէն մինչեւ իրիկուն կը տքան աղէտեալներու ամբոխին անվերջանալի մակընթացութեան տակ։ Բակին մէջ հարիւրաւորներ կ'եռուզեռան շարունակ։ Սանդուխներէն վեր կ'ելլեն, դռներն ափ կ'առնեն անընդհատ անօթիները, կիսամերկները, անտէրունջները, բոլոր անոնք որ տրտունջ մը, աղերս մը,

ցաւ մը ունին, և ո՞վ է որ ցաւ չունենայ չարչարանքի այս գեհենին մէջ։ Մասնաւորապէս դառնակոծ ու աղեխարշ է այրիացած կիներուն, որբացած աղջիկներուն ու տղեկներուն անծայր տողանցութիւնը։ Անդիմադրելի ու խենդեցնող են պատմութիւնները զոր անոնք կը բերեն իրենց սիրելիներուն խողխողումէն ու արցունքները զոր կը թափեն պատմած ատեննին։

Բոլոր այս դիմումներուն պատասխան, բոլոր գանգատներուն ու խնդրանքներուն գոհացում տալու են մեր պատուիրակները, որոնք ամենուն ալ կը հասնին, և որոնց այս դժբաղդ առթիւ ազգին մատուցած ծառայութիւնը անգնահատելի պիտի մնայ պարզապէս։ Վեհապետեան սրբազան, Ալանեան հայրսուրբ և Պրն. Սուրէն ամենատաժանելի գործ մըն է զոր կը կատարեն՝ անձնուիրութեամբ մը ու կորովով մը որ իսկապէս արժանի են հիացումի։ Այս մարդիկը ո՛չ միայն օգնութեան գործին ամբողջ ծանրութիւնը առնել կոչուեցան հոս, այլ ստիպուեցան սա չուարած ու խելակորոյս ժողովուրդին առաջնորդութիւնն իսկ ստանձնել, ճար ու ճամբայ ցոյց տալ անոր, ներկայ դժնդակ հանգամանքներուն մէջէն։ Շնորհակալութեան արժանի են նաև այս կողմերու մեր տէրտէրները—բացի Մերսինի խաֆածէն— որոնք չարքաշութեան ու զոհողութեան անմոռանալի ապացոյցներ տուին իրենց տառապեալ հօտին՝ անոր հետ խաչուած ատեննին իսկ զայն հոգալով։ Ո՛ղջ ըլլան, նոյնպէս, Մերսինի այն հազուագիւտ ազգայինները, որոնք մեր պատուիրակութեան աջակցեցան, ինչպէս Ջէլվէեան եղբարք, Վալանդէն, Ուրֆալեան, Եսայեան, Արամ էֆէնտիները են.։ Ատանայի մէջ ալ տեղացի ազգայիններէ յանձնախումբ մը կազմուեցաւ նպաստի բաշխումը իրագեկօրէն կատարելու համար։

Վիրաւորեալներն ու հիւանդները բոլոր կարելի խընամքով կը դարմանուէին հիւանդանոցի վերածուած երկու Ամերիկեան շէնքերու մէջ, ինչպէս և վրաններուն տակ։ Անհունօրէն սրտապնդող երևոյթ մը եղաւ՝ այս խոշտանգուած ժողովուրդին համար՝ իր մէջ, իր արիւնոտ վէրքերուն վրայ ծռած տեսնել Կարմիր Խաչի այն ազնիւ ու համակրելի երիտասարդներն ու երիտասարդուհիները, որոնք Պոլսառաք մեր բժշկական ու դարմանատար մարմինը կը կազմեն։ Օր. Անթառամ Երկանեան, մեզի հետ եկած Իզմիրցի անձնուէր Հայուհին, մինակ չի մնաց իր վեհագոյն դերին մէջ. նաև Տիկին Ժենինէն, Օր. Սալթենիկ, Օր. Էլմաս, կորիճ Հայուհիներ, որոնք միևնոյն անձնուրացութեամբ տառապանքի այս ովկիանին մէջ եկեր նետուեր են։ Ապրի՛ն, ամենքն ալ։ Ընկերք Պօնափարթ ու Միքայէլ Զօք-Մարզուան կ'երթան՝ ուրկէ բժիշկ ու դեղ կ'ուզուի թախանձագին։ Ընկերք Միրզա, Գըլըճճեան, Փէշտըմալճեան, Սիվրիհիսարլեան Ատանա կը մնան։ Թերևս մէկ-երկուքը Հաճըն երթան, եթէ հնարաւոր ըլլայ։

Զարչափուքի ու Եէնի-Մահալլէի բացաստանները վրաններու տակ ապրող ժողովուրդը շատ վատառողջ պայմաններու մէջ կը գտնուի, մանաւանդ հիւանդները։ Աղտեղութիւնը, գարշահոտութիւնը կը սպառնան հիւանդացնել առողջ մնացողներն ալ։ Արդէն այս թըշուառները եթէ շուտով չի պատսպարուին քիչ-շատ կանոնաւոր բնակարաններու մէջ՝ յառաջիկայ աշունէն ըսկըսեալ ամենքն ալ թիֆօէ և զանազան հիւանդութիւններէ պիտի մեռնին։ Եւ ո՞վ բնակարաններ պիտի վերականգնէ այս աւերակոյտերէն...։

*
* *

Օրուան մեծագոյն հարցը, սակայն, այն է թէ կառավարութիւնը անաչառ ու խղճամիտ կերպով արդարութիւն պիտի ընէ՞ Կիլիկեցի Հայերուն, այս անօրինակ աղէտքին ստեղծիչներն ու պատասխանատուները անխնայ պատժելով և զոհերուն գէթ նիւթական կորուստը հատուցանելով։

Ինչ որ ալ ըլլայ այս մասին իմ կազմած համոզումս, կանխահաս կը սեպեմ բացարձակ վճիռ մը արձակել և կը բաւականանամ իրողութիւնները հաստատելով։ Խընդիրը ո՛րքան ծանրակշիռ է, ո՛րքան բաղդորոշ նըշանակութիւն ունի Հայութեան ապագային տեսակէտէն՝ որ ամենէն մռայլ յուսատեսութիւնն անգամ չի կըրնար չի փարատել սա անկեղծութենէն՝ թէ Թուրքիոյ ճակատագիրն այսօր իրենց ձեռքն ունեցողները պիտի չուզէին անշուշտ վերջնական յուսահատութեան մատնել ամբողջ ժողովուրդ մը։

Այսուհանդերձ, երկու շաբաթէ ի վեր է որ Պոլսէն ղրկուած զինուորական ատեանը հաստատուած է հոս, և դեռ արդարութիւնը նշանակելի քայլ մը չէ առած։

Իբր թէ խուժաններու տարած գողօնը ետ կը դարձընեն։ Բայց սէրայլին բակը դիզուած իրեղէնները մէկտասնհազարերորդն ալ չեն կազմեր տարուած կողոպուտին, և ատոնց ալ յաճախ խուժաններ կուգան տէր կ՚ելլեն՝ վկաներ բերելով։ Իսկ եթէ պատահի որ հողի վրայ պառկող Հայ կին մը իր մէկ գօսոտ վերմակը ճանչնայ ու վերցնէ, ասոր ալ թուղթ ստորագրել կուտան՝ թէ իր գողցուած ապրանքը ետ ստացաւ. ի՜նչ տխուր խաղքութիւն։

Մեր պատուիրակութեան դիմումներուն վրայ, բանտարկուած անմեղ Հայերուն շղթաները քակեցին։ Բայց դեռ ատոնք չես գիտեր ի՛նչո՞ւ վար դրուած կը մնան

*բանտը, ուր շատերը մեռնելու չափ հիւանդ վիճակի մէջ են: Կառավարութիւնը՝ իբր ինքնարդարացում՝ կը յայտարարէ, թէ իսլամներէն կրկնապատիկ թուով բանտարկուած է: Ասիկա իրողութիւն մըն է: Բայց ո՛չ նուազ բնորոշ իրողութիւն մըն է՝ թէ իսլամ բանտարկեալները բոլորն ալ աննշան մարդիկ են, մինչ Հայ բանտարկեալներուն մէջ կը գտնուին Ատանայի ամենէն աչքառու ազգայիններէն: Զօր-Ալին իբր թէ բանտ նետուած է, բայց այդ գազանը իսկապէս իբր լրտես է որ դրուած է Հայ բանտարկեալներուն մէջ, որոնց հըրամաններ կ'արձակէ շարունակ: Ու դուրսը ազատ, համարձակ ու աւելի քան երբեք ինքնավստահ կը պտտին դեռ Ասլանիլ Բաշէրները, Կէրկէրլի ու Պոմնալը Ալիները, Էշրէֆ պէյերը ու ասոնց նմանները, աղէտքին բո՛ւն հեղինակները, որոնց մազին դպչող չի կայ...*

*Բնական է որ՝ այս պայմաններուն մէջ՝ Հայերը վախնան ամբաստանիչ կանգնիլ իրենց* արնիտեր*ներուն դէմ: Շատերը հոգինին ազատած ըլլալնին բաւ կը համարին ու ճամբուն բացուելուն կը սպասեն շունչերնին Արտասահման առնելու համար՝ առանց ետեւնին նայելու: Արդէն կիներն են մեծ մասամբ բողոք բարձրողները, և ասոնք թէև էրիկմարդերէն աւելի կորով ցոյց կուտան կոր, բայց և այնպէս դժուար է իրենց Տաճկաց թաղը երթալ,* Տիվանը Հարպ*ին սեմէն անցնիլ, ոստիկաններուն դաժան դէմքին ու հանած դժուարութիւնները դիմագրաւել: Դաւիթ Ուրֆալեանի ծերունի հայրը շատ վարանումներէ ետք միայն կրցաւ իր զաւկին դահիճներուն դէմ ամբաստանագիր մը մատուցանել:*

*Ասանկով չէ՛ որ պիտի պաշտպանուէր Հայոց արդար ու արիւնազանգ դատը: Արդէն* անհատապես *պաշտպանուելիք դատ մը չէ ասիկա: Ամբողջ Կիլիկեցի Հա-*

յուն, ամբողջ ազգինն է այս դատը։ Եւ ո՞վ աւելի հեղինակաւոր կերպով կրնար դատախազ բարձրանալ այս դատին մէջ, եթէ ոչ Ն. Ս. Օծութիւն Կիլիկիոյ Սահակ Կաթողիկոսը, որ երէկ իրիկուն զինուորական եսքօրթով մը Սիսէն Ատանա ժամանեց, ընկճուած ու արտասուաթոր վիճակի մէջ, տիրութիւն ընելու իր ջարդուած հօտին ամենամտերիմ իրաւունքներուն։ Ն. Ս. Օծութիւնը քանի մը օրէն Տիվանը Հարպին պիտի ներկայացընէ ընդարձակ տեղեկագիր մը, որուն մէջ աղէտքին բոլոր մանրամասնութիւններն ու պատասխանատուութիւնները ճշդուած պիտի ըլլան, Ատանայի վիլայէթին համար, դուրս մնացողները վերապահելով Հալէպի վիլայէթի զինուորական ատեանին։ Այս ջախջախիչ տօֆիւմանը, Ատանայի քրիստոնեայ հասարակութեանց հոգեւոր պետերուն հաւաքաբար մատուցած մէկ հակիրճ այլ ազդու տեղեկագրին հետ, արդարութեան գործը պիտի դիւրացնէ, եթէ արդարութիւն ընելու կամք կենայ։

Առայժմ, Տիվանը Հարպն ալ իր հաշուոյն որդեգրած ըլլալ կը թուի Հայոց ապստամբական պատրաստութեան ծիծաղելի վարկածը։ Հակառակ իրենց բոլոր արտաքին բարեհամբոյր ձեւերուն՝ թէ՛ Տիվանին անդամները և թէ վալին ակներեւ ջանք մը կը մատնեն Հայ զոհերուն թիւը ճշճիմ համեմատութեան մը վերածելու, Հայերուն անհեղ ծրագիրներ ու դիւային դիտումներ վերագրելու, իսկ խուժաններէն մաս մը իբրեւ հասարակ գողեր ու ոճրագործներ մեղադրելու՝ այս հրակայական եղեռնին հանդէպ։

Արդէն տեղական ոճրապարտ կառավարութիւնը՝ Պոլսաւաք Տիվանը Հարպին հասնելէն առաջ՝ ինք սարքեր էր պատերազմական ատեան մը, որ՝ դէպքին ու

անոր յաջորդ օրերուն՝ հանդիպող Հայը ձերբակալել տալով ծեծի ու տանջանքներու տակ անհիմն ու անհը-նարին խոստովանութիւններ ստորագրել տուեր է ոմանց ։ Մէկ երկու Հայ տղու ձեռք քարիւղ ու քուրջ դնելով զանոնք հրդեհի վայրերը տարեր և հոն իբր հրձիգ բռնելով բանտարկեր են ։ Այսպէսով ձեռք բերուած փաստե՞ր են որ իբր խարիսխ պիտի ծառայէին Տիվանը Հարպին արդարադատութեան, — չենք ուզեր հաւատալ Քէնան փաշայի ու իր ընկերներուն կողմէ ատանկ անպատուաբեր գիջումի մը, թէեւ անոնք որքան ալ լաւ տրամադրուած ըլլան՝ չեն կրնար զերծ մնալ տեղական նենգ պաշտօնեաներու էնթրիկներէն ու թունաւորումներէն ։

Համիտեան ոստիկանութեան բոլոր անխոստովանելի մեթոտները՝ աւելի կատարելագործուած եղանակով՝ կիրարկուած ու տակաւին կիրարկուելու վրայ են՝ Հայերուն խորտակուած ուժին բեռցնելու համար ա՛ադնութիւնը կատարուած ոճիրին ։ Ու Համիտեան ոստիկանութեան անպատմելիօրէն զաւեշտական ապուշութիւններն ալ կը վերբերուին այս դա՛ռնակսկիծ եղերերգութեան մէջ. չեմ գիտեր ո՞ւրկէ Արխանեան Գալուստին ու Սերոբ փաշային պատկերներն են ձեռք անցուցեր, և ցաւագար սպառնալիքներով կը ստիպեն Հայերն որ իրենց յանձնեն այդ ... պահուըտած «Փէտայի»ները ։

Մարդ կ՚ա՛նաբեկի, վայրկեան մը, երբ տեղական իշխանութեանց կամաւոր կուրութիւնը կը տեսնէ՝ աչք պառող իրողութիւններու հանդէպ ։ — Օրինակի համար, ինչո՞ւ չեն ուզեր նկատել, թէ Ատանայի շուկաներուն մէջ Հայ խանութ մը չէ՛ մնացած, որ կողոպտըւած ու քանդուած չըլլայ, որուն գաձան փորապատար փողոց նետուած չըլլայ, մինչ իսլամի պատկանող

կ'արտասանէ. «Ի՞նչ կ'ըլլայ, էֆէնտի՛մ, աղէկ որ առանց ձեզի հարցնելու խուզարկեր են ձեր գերեզմանները, զի եթէ ձեզի հարցնէին՝ ձեր օրէնքին հակառակ ըլլալուն պիտի չի հաւանէիք, բայց խուզարկութիւնը դարձեալ պիտի կատարուէր, և այս անգամ ձեր ազգակիցները ձեզի դէմ պիտի ելլէին ամբաստանելով ձեզ թէ ազգը կը ծախէք, թէ անոր սրբութիւնները կը մատնէք: Աղէ՛կ որ առանց ձեր լուր ունենալուն եղեր է, և աւելի՛ աղէկ որ զէնք ալ չէ գտնուեր: Ալ ի՞նչ կ'ուզէք:»... Ասիկա է մեր ազատարար Քօմիթէին առաքեալներէն մէկուն դիրքը՝ հայ գերեզմաններու խուզարկութեան պէս ամօթալի արարքի մը հանդէպ:

Այս նոյն Պինպաշի ճէմիլը չէ քաշուած՝ Հայերու հետ խօսակցութեան մը մէջ՝ Ատանայի արիւնոտ թերթը Քօմիթէին իբր օրկան յանձնարարելու. «Պիզիմ քազէ-քամըզ վար տըր պուրտա՛, Իթթիտալ:»...

Դարձեալ Պինպաշի ճէմիլն է որ՝ այս արիւն-արցունքի օրերուն՝ ժամանակ է գտեր Մերսինի հայ երեւելիներուն առաջարկելու որ հայ և թուրք միասին մէքթէպը իտատիէ մը բանալու ձեռնարկեն, «որպէսզի մեր զաւկները մէկտեղ մեծնան»... Սպասեցէ՛ք, Պինպաշի՛ ճէմիլ, որ մեր տղոց աչքէն նախ թափի իրենց հայրերուն արեան կարմիր զանանդանքը, վերջէն կը խորհի՛նք...

Մերսինի մէջ ահա՛ ամիս մը կ'ընէ որ տեղւոյն ամենէն պատուաւոր ազգայիններէն Մոստիչեան ու մէկ քանի ուրիշներ բանտը կը մնան առանց ամենադոյզն մեղքի: Տեղի ունեցած կամայական խուզարկութեանց ու բանտարկութեանց դէմ Ասլանեան հայր-սուրբը բողոքագիր մը ուղղեց Ատանայի վալիին, ինչպէս նաեւ հեռագրով հաղորդեց Ներքին Գործոց Նախարարութեան, թէ Պոլսէն եկած հայ թերթերը Ատանայի փոտթահանէէն չեն

յանձնուիր իրենց հասցէններուն և խարոյկի կ'ենթարկուին ։

* * *

Այս բոլորէն վերջ, պէտք է աւելցնեմ, թէ արդարութեան գործը դիւրին պիտի չըլլայ մինչեւ որ բացարձակապէս վստահելի զինուորական ուժի մը աջակցութիւնը չապահովուի արդարութեան պաշտօնեաններուն ։ Այդպիսի ուժի մը պակասը աւելի քան զգալի է հիմա ։ Կեդրոնական կառավարութիւնը, փոխանակ սեպուհներ ղրկելու, ազատարար բանակէն քանի մը թապուր աճապարելու էր հասցնել այս կողմերը, բայց ո՛չ Տէտէ-Աղաճէն ղրկուածներուն տեսակէն . . . ։

Պապիկեան, Մոսթիչեան և իրենց ընկերները չեկան դեռ ։ Թո՛ղ բարի գան, հազա՛ր բարի ։ Բայց իրենց գալովը չէ որ արդարութիւնը պիտի քայլէ հոս ։ Կիլիկիոյ Հայուն եղածը անանկ ահռելի խժդժութիւն մը, անանկ ոռնացող անօրէնութիւն մըն է, որ քննութիւն ու դատաստան անգամ չի վերցներ ։ Կը բաւէ միայն տեսնալ եղածը . . . ։

Մեզի, Հայերուս համար այս խնդրին լուծումը համազգային նշանակութիւն ու ճակատագրական տարողութիւն ունենալ սահմանուած է ։ Ատանայի մէջ Թուրք կառավարութեան բռնելիք ընթացքէն պիտի հասկնանք թէ այս երկրին մէջ կեանք ու ապագայ կը մնա՞յ դեռ մեզի, թէ կրնա՞նք տակաւին մենք զմեզ անգամ նկատել օսմանեան ընտանիքին, թէ ոչ՝ մեր անյեղլի բաղդն է իբր ջարդուելու միս ծառայել օսմանեան հայրենիքին, իբր «խոյմացու միս», ինչպէս Արփիարը կ'ըսէր ։

Ատանայի մէջ Թուրք կառավարութեան տալիք վճիռէն պիտի հասկնանք, թէ տեղ ունի՞նք այսուհետեւ

*օսմանեան քաղաքացիութեան մէջ, թէ ոչ՝ դուրս քշուած ենք անկէ և բացառիկ անգիր օրէնքի մը ենթարկուած։*

*Մեզի պէտք է գիտնալ սակայն, որպէսզի ըստ այնմ՝ գիտակցօրէն ու արժանապատուօրէն ճշդենք օսմանեան ազատ քաղաքացիի կամ օսմանեան ընկերութենէն վտարուածի մեր դիրքը։*



# "Մենք Մեզի"



Այս խորագրին տակ, Շիրակի վերջին թիւերէն մէկուն մէջ, Վահան Թէքէեան իր ներսիդին կուտակուած սրտմտանքը կը պոռթկար՝ ազգային ներկայ ճգնաժամին մէջ ա՛լ աններելի ու անհանդուրժելի դարձած մեր ներքին ապականութեանց, ապիկարութեանց ու ապիրատութեանց դէմ։

Յուզագին զայրոյթի այդ խօսքերը, որոնք արդէն ո՛չ հաճոյքով և ո՛չ հաճոյք պատճառելու համար կ'ըլլային, եթէ ոմանց մեղա·պարտ խղճմտանքը պիտի խըռովէին, եթէ մէկ քանիներու քինախնդիր լեզուագարութիւնը պիտի ջղագրգռէին, սրտի կսկիծոտ սեղմումով մը պիտի կարդացուէին, նաեւ, անոնց իրաւացիութեանն ամենէն աւելի համոզուածներէն։

Ու բնական էր ասիկա։

Երբ դուրսէն մեր գլխուն իջած ահաւոր հարուածին տակ արիւն-արցունք թափելու վրայ ենք ազգովին, պիտի բաղձայինք գէթ որ ներքին ցաւեր չունենայինք ըլլալու, որ ներքին չարիքները մեզ հանգիստ ձգէին մեր դառն սուգին ու ինքնամոք ճիգին, պիտի բաղձայինք որ երկրորդական աւելորդ ու աղկաղկ հոգեր չի բեռնաւորէին մեր տանջուած հոգին, չի զբաղեցնէին մեր արտմակոծ մտածումը։ Ընդհակառա՛կը, պիտի

բաղձայինք, պիտի մաղթէինք որ ազգային աղէտքին հանդէպ գոնէ տրուէր մեզի միակ անկապտելի սփո-փանքը ներքին կենսունակութեան, բարոյական գե-ղեցկութեան ու հաւաքական ինքնագիտակցութեան սխրալի ապացոյցներ հաստատելու։

Բայց, աւա՜ղ, հասարակաց դժբաղդութիւնը, մեզի համար, փոխանակ ցեղային ներքին ազնուութեան, վեհանձնութեան ու իմաստութեան չքեղ արտայայ-տութիւններ պատճառելու, մեր ներքին աղտեղութիւն-ներն ու անկարողութիւնները չեչտօրէն յայտնագործող դերազանց առիթը կ՚ընծայէ միշտ։ Այս անգամ ալ կար-ծես ուրիշ կերպ չէր կրնար ըլլալ, և չեղաւ։

Նախ մեր հարուստներուն ազեղ ու ախրեցուցիչ պարագան ունինք աչքերնուս առջեւ ցցուած։

Ո՞րքան արդարացի էր այն անվերապահ ու սրբա-ցաւ կշտամբանքը, որ ա՛յս խօլ էջերէն(*) քանի մը շա-բաթ առաջ կը նետուէր անոնց երեսին։

«Ի՞նչ ըրին», այո՛, ի՞նչ ըրին անոնք, Կիլիկեան Արհաւիրքին հանդէպ, ի՞նչ եղաւ իրենց զոհաբերութեան քանակը այս անօրինակ աղէտքին ամոքմանը մէջ։ Ա՜հ, իսկապէս ընկճող, յուսահատեցնող բան մը ունի անոնց հոգեկան թեւատութիւնը. խորխտ խոյանքի մը, հոյակապ ճէսթի մը ընդունակ մէ՛կ հոգի մը չելաւ անոնց շարքե-րէն։ Ամէնքն ալ տիրեմով տուին, համրելով օգնութեան համար Կիլիկեցի վերապրողներուն վիթխարի կարօ-տութեան։

Եգիպտա՛այ գաղութը, որ ամենէն նշանակելի բա-ժինը ունեցաւ Կիլիկեան Նպաստի ու բարօքարկութեան գործին մէջ, իր մեծահարուստներուն շնորհիւ չէր որ կրցաւ այդ գեղեցիկ ու անգնահատելի դերին մէջ գրա-նուիլ։ Բարեգործական Ընդհ. Միութիւնը փրկեց Եգիպ-

(*) Արեւելեան Մամուլ։

տահայ gros bonnet'ները խոշոր գումարներ քաղաքա-ներու հարկէն, կարծես ա՛յս դարձած ըլլար այլեւս այդ պատուական մարմնին կոչումը։ Եւ Ազգ. Ժողովի պատուիրակութիւնը՝ իր առաջին օրերու նուիրական անձկութեանը մէջ՝ զիս Մերսինէն Գահիրէ վազցնելով՝ ուրիշ բանի չի ծառայեց, եթէ ոչ՝ Բարեգործականին և Հ. Ս. Ռ. Կուսակցութեան Եգիպտահայ անդամներուն միացեալ համաձայնութեամբ ու ջանքերով սկսուած հանրային հանգանակութեան թերեւս քիչ մը աւելի բուռն թափով յառաջ մղուելուն։

Եւ մտածե՜լ թէ մեր այս զարնուած, ջախջախուած վիճակին մէջէն իսկ բարոյական ամենամեծ յաղթանակը պիտի կրնայինք տանիլ մեր դահիճներուն և կոտորման անայլայլ հանդիսատես «քաղաքակիրթ» օտարներուն վրայ, շնորհակալութեամբ մերժելով «պաշտօնական» նպաստներն ու Եւրոպայի երեսին նետելով մեր վերապրողներուն ղրկած իր ողորմութիւնները, եթէ միայն մեր կրեսոսները ուզէի՛ն, եթէ անոնք իրական զոհողութեանց յանձնառու ըլլայի՛ն այս եղերական առթիւ։ Ո՛չ մէկուն, ո՛չ մէկ օտարի գթութիւնն ընդունիլ, ո՛չ մէկ «մարդասիրական» միջամտութեան թոյլ տալ մօտենալ, ձեռք երկարել մեր անօթիներուն, մեր որբերուն, ի՜նչ վսեմ հրաժարութիւն, ի՜նչ հրաշալի դոհացում պիտի ըլլար ատիկա մեզի համար...։ Բայց չի կըրցանք ատանկ փառաւորօրէն արհամարհոտ ինքնապաւինման մը ընդունակ հանդիսանալ, և նորէն օտարներուն կարօտ մնացինք, անոնց աջակցութիւնը մուրացինք, անոնց առջեւ բարերարեալի ու երախտապարտի նկուն դիրքն առինք։ Ու հանդուրժեցի՛նք, մինչեւ-անգամ, որ անոնցմէ ոմանք — Գերմանացիները — Ատանայի մէջ Թրփանիի գործարանին ապաստանած հա-

դարաւոր ոտնալլուկ Հայերուն քանի մը տասնեակ հաց նետեն, ինչպէս կը նետեն քաղցած շուներու կոհմակի մը, և անօթիներու լուսանկարն առնեն՝ երբ առնեք այդ հացերը իրարու ձեռքէ կը յափշտակէին...։ Հանդուրժեցինք որ մեր որբուհիները ժողվեն տանին, զանոնք իրենց քաղաքական չիլ դիտումներուն ծառայեցնելու համար ապագային...։

Ու չի մոռնամ հոս սա ճղճիմ մանրամասնութիւնը արձանագրելու՝ թէ ազգին որբունազանգ թշուառութեան նկատմամբ այսքան ժլատ մեր հարուստները այս անգամ ալ ինքզինքնին չի զրկեցին դէպի Եւրոպա իրենց տարեկան հաճոյախնդիր ճամբորդութիւններէն, որոնց համար իրենցմէ իւրաքանչիւրը վերապրող Կիլիկիոյ տուածին հնգապատիկը — եթէ ոչ տասնապատիկը — պիտի խարճէ...։ Վիշիի, Մարիէնպատի կամ Էքսի ջուրերուն մէջ իրենց հեշտաւէտ լոգանքն առած ատեննին Կիլիկիոյ արիւնին յանձախանքէն պիտի չի հալածուին... Բո՛ւ, տանիկ չըլլալիք բաներ մաքէ անցնելու համար գրականութիւնը ո՛րքան միամիտ, տխրացու կ'ընէ երբեմն մարդս, չըսելու համար ապուշ...։

Ձգենք մեր հարուստները իրենց ամառնային թափառայած հանգիստին, ձգե՛նք զիրենք նուիրական միտերնին կազդուրելու, թարմացնելու իրենց անձկոտ աշխատանքին, և դառնա՛նք մեր միւս ցաւերուն ու ցաւագարութիւններուն։

Կիլիկիոյ աղէտքներով բացուած ներկայ ազգային ճգնաժամին մէջ մեզ ամենէն աւելի ջլատող, վհատեցնող իրողութիւնը մեր ազգային կազմակերպութեան ողորմելի անկազմակերպութիւնն եղաւ։ Կարելի չէր երեւակայել այս տարիճան զգետնող, այս տարիճան սրտակեղեք խաղքութիւն Արիւնի ու արհաւիրքի մէջ գալարուող ժողովուր-

դի մը կողմէն Պատրիարքարան տեղացող կողկողագին նամակները օրերով, շաբաթներով, ամիսներով անպատասխան մնացին։ Ոչի՛նչ, ո՛չ մէկ դիմում, ժամանակին կատարուեցաւ։ Ամէն կողմէ ղրկուած տեղեկագիրները չի կարդացուեցան անգամ, ո՜ւր մնաց նկատի առնուելնին։ Ի՜նչ կ՚ըսեմ, հեռագիրներն անգա՛մ իրարու վրայ դիզուեցան, առանց յաճախ իրենց դառնալ զիջանող նայուածքի մը արժանանալու։ Ազգ. Ժողովին կողմէ ամենակենսական առաքելութեամբ մը Կիլիկիա ղրկուած պատուիրակութեան տեղագրական ու ծանրակշիռ նամակներուն օրը օրին կանոնաւոր պատասխան չի տրուեցաւ։ Ա՛լ խօսքը չեմ ըներ որոշ հրահանգներու և հետեւողական թելադրութիւններու պակասին։ Պատրիարքարանէն եկած ցանցառ նամակներուն յաւիտենական բանաձեւը կազմեց բաւական երկար ատեն սա զմայլելի ֆրազը. «100 պարկ ալիւր (կամ ուրիշ բան) կը ղըրկենք, խղճմտութեամբ բաշխեցէք»։ Ուրիշներուն, մանաւա՛նդ «խղճմտութեան» մասին հարիւր տարի զիրենք կարդացնողներուն խղճմտութեան դաս տալ ելլող Պատրիարքարանի մարդիկը գոնէ իրենց յիշատակարանային ապիկարութեամբը միայն մեղանչէին։ Ատիկա, վերջապէս, պիտի կուլ տայինք, կամայ-ակամայ։ Բայց այդ պարոնները իրենց ապիկարութեան կը միացնէին իրենց պաշտօնին ու պատասխանատուութեան այնպիսի կոպիտ անգիտակցութիւն մը որ ընդվզեցուցիչ է պարզապէս։ — Երբէ՞ն ի վեր Պատրիարքարանը Պոլսահայ թերթերու խոհանոցին մատակարարութիւնն ստանձներ է, որ հոն ղրկուած ամէն նամակ, հեռագիր կամ տեղեկագիր նոյնութեամբ հրատարակութեան տալու պաղարիւն toupetն կրնան կոր ունենալ իր դիւանապետները, կամ Պոլսահայ թերթերու ազգայինճճիները կրնան

կոր իրենց մայրին պէս երթալ Պատրիարքարանէն վերցնել իրենց ուզած sofիւմանը։

Եթէ խնդիրը սովորական կացութեան մը և սովորական հարցեր շօշափող թուղթերու շուրջ ըլլար՝ այսքան պիտի չի անհմռկէինք երեւոյթին առջեւ։

Բայց մտածեցէք, պահ մը, թէ ի՛նչ փափուկ դիրքի մը մէջ կը գտնուէին Կիլիկիոյ տեղական իշխանութեանց հետ Ազգ. Ժողովին պատուիրակներն ու Կիլիկեան թեմերուն Առաջնորդները։

Արդ, երբ ասոնց կողմէ ճի՛շդ այդ իշխանութեանց, վալիներու, մութէսարրըֆներու և այլ կառավարական պաշտօնեաներու մասին Պատրիարքարան գրուածները նոյնութեամբ թերթերու մէջ կը հրատարակուէին, ի՞նչ կ'ըլլայ ասոնց կացութիւնը, մինչ Պատրիարքարանը ո՛չ մէկ բողոքի գոհացում կրցած է դեռ ձեռք բերել կեդրոնական կառավարութենէն, և մինչ իրենք դեռ ստիպուած են պաշտօնապէս յարաբերիլ այդ նոյն վալիին, մութէսարրըֆին կամ ուրիշ պաշտօնեային հետ։ Այս վերջինները բնականաբար իրենց ալեհին տրուած բողոքագրերուն տեղեկանալով կը մոլեգնին, աւելի յառաջ կ'երթան իրենց չարաշահութեանց մէջ, և կը ստիպեն մեր ազգային ներկայացուցիչները բացէն հակառակորդի կեցուածքն առնել իրենց դէմ։ Ու Ժողովուրդն է որ կը տուժէ չարաչար այս անխուսափելի դարձող ընդհարումներէն, որոնցմէ շատ դիւրաւ պիտի խուսափուէր, եթէ Պատրիարքարանի մէջ այսքան մը բան մտածելու չափ ուղեղ ունեցող մարդիկ կենային։

Պատրիարքարանի մէջ գործուած այս այլանդակ ձախաւերութեանց երեսէն Ատանայի մեր պատուիրակները մէկէ աւելի անգամներ դժուար ու անհաճոյ կացութեան մատնուեցան իրենց պաշտօնական յարաբե-

*բութեանց մէջ։ Հալէպի առաջնորդ՝ Շահէ վարդապետ, որ վերջին աղէտալի դէպքերուն մէջ իր հովուական ուժին, կորովի ու անձնուէր գործունէութեամբ յայտնութիւն մը եղաւ, Պատրիարքարան կը գրէր խնդրելով որ ներկայ վալիին պաշտօնանկութեան համար կեդրոնական կառավարութեան մօտ դիմումներ ըլլան։ Նամակը «խղճմտութեամբ» հրատարակութեան կուտան, վալիին ականջը կը հասնի և... Մնացածը գուշակեցէ՛ք։*

*Մարդ կը կատղի, երբ Գում-Գաբուի օճախին դըպիրներուն այս բերանաբաց անփութութիւնը կը դիտէ հեռուէն. կարծես թէ տակաւին Թուրքիա ապրած չըլլային, կարծես թէ լուսնկայէն նոր ինկած ըլլային, կարծես թէ, մանաւա՛նդ, Օրմանեանի շրջանին ու անկէ առաջ ըրած չըլլային իրենց սարկաւագութեան աշկերտութիւնը։ Սըվո՛նց կերած ապուրը նայեցէք...։*

*Ո՞վ է, կամ ո՞վ էր, այս խաղքութեան պատասխանատուն։ Պատրիարքական Փոխանո՞րդը, Ազգ. Կեդր. Վարչութի՞ւնը, թէ Ազգ. Ժողո՞վը։ Չե՛մ գիտեր։ Աւելի՛ ճիշդ ամէնքն ալ, ամէնքս ալ պատասխանատու ենք։ Պարապ տեղը չէ՛ որ ըսեր են թէ «Ժողովուրդ մը արժանի է այն վարչութեան զոր ունի»։*

*Բայց անարդարութիւն մը գործած պիտի չըլլանք, եթէ պատասխանատուութեան մեծագոյն բաժինը ծանրացնենք Քաղաքական Ժողովին վրայ, որուն արտաքոյ կազմին և անդամներէն ոմանց մտայնութեանը ո՛րքան ալ խանդավառ հիացող մը չըլլայի, չէի կրնար սակայն վստահաբար չսպասել Զօհրապէն, մանաւա՛նդ Շահրիկեանէն ու Մուրատէն — որպէս յեղափոխական-կազմակերպական կեանք ապրած, այսինքն տենդային ու կարգապահ գործունէութեան մէջ եփած մարդերէ — որ քիչ մը կարգ կանոն դնեն և քիչ մը բարեխիղճ ու մե-*

թուրք աշխատանք կազմակերպեն Պատրիարքարան ըրուած մեր ազգային գերագոյն հաստատութեան մէջ։ Բայց կ'երեւի թէ Քաղաքականին ամենէն գործնական ըլլալիք այս անդամներն ալ «սկզբունքային հարց»երու համար միայն ճաշակ ու կորով ունին։

Յոյսերնիս կը մնայ, ուրեմն, նորընտիր Ս. Պատրիարքին վրայ որ՝ հակառակ իր ա՛լ քիչ մը շատ յեղյեղուած «վարչական» թերութիւններուն՝ ոչ մէկ բանով վար կը մնայ ըստ իս իր լաւագոյն նախորդներէն, և որ իր հզօր ու լայնահաս իմացականութեան այլապէս անբաղդատելի առաւելութեամբը՝ կը հաւատամ թէ պիտի կրնայ ազգը այս ճգնաժամին մէջէն արժանաւորապէս ու տիրաբար առաջնորդել։

Եւ ատոր համար կը բաւէ որ ան հաշտուի իր նոր կոչումին հարկադրած կարգ մը անխուսափելի և անհրաժեշտ ռամկութիւններուն հետ և ըլլայ ա՛յնքան անողոքօրէն խստապահանջ զինք շրջապատողներուն հանդէպ, որքան ինք իր մասին է՝ իր պարտականութեանց կատարումին մէջ։



# ԱՅԼԱՍԵՐՈՒՄ



Դաշինքի մէջ Կիլիկեան թղթակցութիւն մը կուգար մէկ ծայրը միայն վեր առնել այն թանձր վարագոյրին, որ Ատանայի Տրամին մէջ մեզի համար ամենէն տխուր, ամենէն ամօթալի ու անխոստովանելի իրողութիւնը կը ծածկէ։

Թէ Սիսլեան մը և Սիսլեաններ՝ իրենց հինաւուրց մատնիչի անարգ դերը վերստանձնած ըլլան տեղական կառավարութեան ու Պատերազմական Ատեանին մօտ՝ ասիկա ո՛չ մէկ կերպով մեզ կրնար զարմացնել ու դառնացնել։

Բայց թէ վերջին դժբաղդ դէպքերը պատճառ ու առիթ եղած ըլլան մեծ ու պզտիկ ա՛յնքան Նոր Սիսլեաններու յառնումին՝ ասիկա զօնդակ երևոյթ մըն է, որուն առջև չենք կրնար չի խռովուիլ ու չընդվզիլ։

Տարուան մը ազատութիւնը, այնքան երգերն ու ճառերը՝ բան մը չի ջնջեցին, չի սրբեցին, ուրեմն, մեր ստրկային կեղտերէն, ու մեր բարքերու ազնուացումին ու նկարագրի բարձրացումին այլապէս չի նպաստեցին։ Ու առաջին հարուած մը պիտի բաւէր որ մեր երակներուն արիւնին հետ պոռթկար նաև մեր հոգիներուն փտութեան թարախը։

Մեզի համար անհանդուրժելի դառնացում մը, ան-

ըսփոփելի կսկիծ մըն է գիտնալ, այսօր, թէ Ատանայի Զինուորական Ատեանին առջեւ չի դատապարտուեցաւ Հայ մը, որուն դատավճիռը Հայերու վկայութեան վրայ հիմնուած չըլլար։ Եւ ահռելի, ահռելի բան մը պիտի ըլլայ միշտ մեզի համար մտածել, թէ Ատանայի մոխիրներուն վրայ կախաղան բարձրացուց վեց անմեղ Հայերուն դատապարտութիւնն ալ գէթ տասնեակ մը ուրիշ Հայերու սուտ վկայութեամբ կատարուեցաւ։

Այս քստմնելի հաստատումը չի՞ ստիպեր մեզ ալ քիչ մը նուազ ատելութեամբ ու աւելի հանդարտամտութեամբ նայելու մեր դահիճներուն։

Բարոյական այլասերումի այս երեւոյթը Ատանայի Զինուորական Ատեանին կողմէ բարձրօրէն գնահատուեցաւ։ Ատեանը կազմող խրոխտ ու ասպետոգի սպաները՝ զինուորական պատուախնդրութեան մեր ըմբռնումին հետ չի հաշտուող զիջումով մը՝ կեդրոնական կառավարութեան ուղղուած իրենց տեղեկագրերուն մէջ հաճոյակատարօրէն չեշտեցին գովեստը այն վիժած Հայերուն, որոնք իրենց ազգակիցները մատնանշեր, մատներ, զրպարտեր էին, դիւրացնելով պաշտօնական անարդարութեան գործը։ Ասիկա հայրենասիրական սխրալի արարք մը հռչակուեցաւ Զինուորական Ատեանին դպիրներուն կողմէն, և «առանց ցեղի ու կրօնի խտրութեան» բանաձեւը հոն ալ քչուեցաւ զմայլելի սինիզմով մը...։

Հայե՛ր գտնուեր էին որ իրենց ցեղակիցներուն յանցանքը կը խոստովանէին, որ ճշմարտութիւնը կ'ըսէին, «առանց ցեղի ու կրօնի խտիր դնելու»...։

Այ՛սպէս, բանտերու խորը, չղթաներու տակ նետուեցան հարիւրաւորներ, ա՛յսպէս, աքսորի դատապարտուեցան քանի՜ քանինե՛ր, և ա՛յսպէս կախաղան հանուեցան վեց Անմեղ Հայերը, որոնց երեքը, երեք մըա-

գործ եղբայրները, ո՛չ միայն անպարտ էին իրենց վերագրուած արիւնոտ մեղքերէն, այլ՝ Ատանայի երեքօրեայ ինքնապաշտպանութեան միջոցին՝ իրենց կնիկներուն փէշին տակ պահուըտելու մեղքը գործած էին...

Ատանայի մէջ՝ կուտակուած աւերներէն ու թշուառութեան աղեխարշ տեսարաններէն չէ՛ր որ կրեցինք սրտի ամենէն ցաւագին սեղմումը, այլ՝ երբ ինքզինքնիս դէմ յանդիման գտանք հայկական նկարագրի աւերներուն, բարոյական անկումի ու այլասերման տեսարաններուն։

Նախ չուզեցինք հաւատալ մեր լսածին, երբ կուսակալ Մուսթաֆա Զիհնի փաշան կ'ըսէր, թէ իր գզրոցներուն մէջ բազմաստորագիր հանրագրութիւններ ունէր, որոնցմով Հայերը կ'ամբաստանէին իրենց Առաջնորդն ու հանրային ականաւոր գործիչները։

Բայց երբ մատնութեան, զրպարտութեան ու վատութեան դժնէ երեւոյթները հետզհետէ սկսան խտանալ ու մեր չուրջը հրէշային պար մը բոլորել, երբ մարդկային կերպարանքով սողուններ եկան ափ առնել մեր պատուիրակներուն դուռը և նենգ դարձուածքներով սպառնալ անոնց, թէ զիրենք ալ կրնային նետը դնել Պատերազմական Ատեանին առջեւ, այն ատեն ստիպուեցանք համակերպիլ դժխեմ իրականութեանը այն խօսքերուն, որոնց չէինք ուզած հաւատալ...։

Այլասերման այս ողբալի, այս ամօթալի երեւոյթին առջեւ մարդ կը փորձուի բացատրիչ պատճառներ, «մեղմացուցիչ պարագաներ» փնտռել, և պահ մը տրտմօրէն հարցնել իւրովի. «Ի՞նչ կարելի է սպասել ժողովուրդէ մը, որ այս հակամարդկային, այս դժոխային պայմաններուն մէջ կ'ապրի։ Ի՞նչպէս չապականին իր բարքերը, ի՞նչպէս չի փճանայ իր հոգին, ի՞նչպէս չկո-

*նայ, չայլասերի ան, ի՞նչ իրաւունքով նկարագրի ուժ և բարոյական գեղեցկութիւն կ'ակնկալէք անկէ...»։*

*Ճի՛շդ է ասիկա։*

*Բայց նաեւ մարդ չի կրնար ինքզինքն արգիլել մտածելէ, թէ այս տեսակ դժբաղդ պայմաններու, եղերական հանգամանքներու մէջ է որ ապրելու իրաւունք ունեցող ցեղերն իրենց ազնուագոյն յատկանիշները, վեհագոյն առաքինութիւնները երեւան կը բերեն...։*



# ԿԻԼԻԿԵԱՆ ՈՐԲԵՐԸ



Կիլիկեան արհաւիրքին ամենէն աղէխարշ ու ամենէն աւելի գութ ու կարեկցութիւն ազդող զոհերն են սանք ։

Կարծես չէին բաւեր այս դժբաղդ ազգին բռնակալութեան 95-96 կարմիր թուականներէն որդեգրուած որբերու ամբողջ սերունդի մը հոգն ու տրտմութիւնը ։ Պէ՛տք էր որ իր հազիւ մխիթարուիլ սկսող մայրութեանը հարկադրուէր սուգի ու դառնութեան այս նոր ու սաժամանածանր բեռը ։

Եւ այս անգամ մեզ տխրութեան կանչող, իր անմեղ աչուկներովն ու անբիծ թաթիկներովը մեզի կարկառող որբութիւնը այլապէս խռովիչ է ու ընկճող, զի խորհրդանշական ձեւ մը, ճակատագրական իմաստ մը ունի ան մեզի համար ։

Երբ Կիլիկիոյ աւերները մաքրուին, երբ եղեռնին հետքերը հողին տակ ծածկուին, երբ «անդորրութիւնը վերահաստատուի» մեռնողներուն ու վերապրողներուն վրայ, Կիլիկեան արիւնին մէջ մկրտուած այս որբերը պիտի մնան ու պիտի յիշեցնեն միշտ մեզի՝ «սահմանադրական» Թուրքիոյ վրայ կառուցած մեր պատրանքներուն ահաւոր քայքայումը, «ազատութեան», «եղբայրութեան», «հաւասարութեան» ու «արդարութեան»։

անունով մեզի եղած ու վերապահուած անագորոյն չարիքն ու ահռելի զրկանքը:

Անոնք, Կիլիկեան այդ եղկելի որբերը, պիտի ըսեն, պիտի յուշածեն միշտ մեզի որբ-ազգի մեր տխուր, դատապարտուած ու անտէրունչ վիճակը՝ Օսմանեան հայրենիքին մէջ ու աշխարհի երեսին...:

Բայց անոնց, այդ աղէտոգում ու եղերաշուք էակներուն, քերթուածը չէ՛ զոր կ'ուզեմ գրել այսօր: Անոր համար իրենց քնարն ու տաւիղը յարող պուէտներ չեն պակսիր մեզի: Ինչ որ այս տողերը կը թելադրէ ինծի Կիլիկեան որբերուն ներկայ անորոշ կացութիւնն ու անոնց համար ըլլալիք կարգադրութիւնն է:

Ինծի այնպէս կը թուի, թէ այս կենսական խնդիրն ալ պէտք եղած լրջութեամբ ու գործնական իմաստութեամբ նկատի առնուած չէ ցարդ մեր պատկանեալ իշխանութենէն և մամուլէն:

Մօտաւորապէս ամիս մը առաջ Ազգային Ժողովին Ատանայի պատուիրակութիւնը՝ իր ձեռք բերած կատարեալ իրազեկութեամբ անկարելի գտնելով տեղւոյն վրայ որբերուն պահպանումը՝ կը պատրաստուէր զանոնք դուրս հանել Կիլիկեան դժոխքէն և Պոլսոյ, Իզմիրի և Եգիպտոսի հայ գաղութներուն մէջ տեղաւորել, գէթ առժամապէս, մինչեւ որ վերջնական կարգադրութիւն մը ըլլար անոնց համար: Բայց Պատրիարքարանէն հասած հեռագիր մը վերջին պահուն կը հրահանգէր ետ կենալ այդ որոշումէն և Մերսինի կամ Ատանայի մէջ որբանոցի մը հաստատման նախնական միջոցներ ձեռք առնել:

Պատուիրակները, որոնք կառավարութենէն պէտք եղած հրամանն առած և Խտիվական նաւային ընկերութեան ալ դիմած էին որբերը ձրի փոխադրելու, բնականաբար համակերպեցան Պատրիարքարանի հրահանգին,



Ա. Պատուիրակը թեւնի միջոցաւ բաժնուած հագուստներու մէջին (12,000 անձի հագուստ բաժնուած է)։

և անմիջապէս ժողովի հրաւիրեցին Մերսինի Հայ երեւելիները, անոնց հետ խորհրդակցելով գործի սկսելու համար։

Այդ ժողովին ներկայ ըլլալով առիթ ունեցայ նախ տեղացի ազգայիններու բացասական տրամադրութիւնները հասկնալու՝ Մերսինի մէջ որբանոցի մը հաստատման վերաբերմամբ։

Ամէնքն ալ համաձայն էին հաւաստելու նիւթական բազմադիմի դժուարութիւնները այսպիսի ձեռնարկի մը առջև։ Յարմար շէնքի մը կամ շէնքերու չգոյութիւնը, մատակարարութեան, հոգածութեան ու վերահսկողութեան համար տեղացի անշահախնդիր ու ձեռնհաս տարրին անյօժարութիւնը՝ քաղաքական շփոթ ու տագնապալից պայմաններուն բերմամբ, ըստ որում ո՛չ ոք սիրտ ունի սանկ ազգասիրական ծառայութիւններու մէջ յամենալու և ամէն ոք — ամենէն հաստախարիսխ վաճառականն անգամ — անձկայրեաց է իր գործերը այս կամ այն գնով liquider ընելու և երկրէն չուելու, մէկ խօսքով միջավայրին յարատեւ անապահովութիւնը, որ յառաջ կուգայ Կիլիկեան աղէտքին հեղինակներուն անպատիժ մնալէն, և որ ձեռնտու պարագայի մը կրնայ յանկարծ մոլեգնութեան նոր պոռթկումներու տեղի տալ խարոյկի վերածելով Կիլիկեան որբանոցն ու որբերը... Միթէ սակայն ծայրայեղ յոռետեսութիւն է բոլոր անոնց կողմէ, որոնք Կիլիկիան քար ու քանդ դարձնող վերջին արհաւիրքներուն մէջ տեսան, հաստատեցին Հայութիւնը արմատէն չորցնելու հաչուուած, ծրագրուած, ուխտագրուած վայրագութիւնը։

Ասոնք, ամբողջ էութեամբս պարտաւոր կը զգամ վկայել, աւա՛ղ, չափազանց արդարացի մտահոգութիւններ էին և են բոլոր անոնց կողմէ որոնք համամիտ չեն

գտնուիր Մերսինի կամ Ատանայի մէջ որբանոց մը հաստատելու և Կիլիկեան որբութիւնը հոն պատսպարելու գաղափարին։

Գիտե՛մ ասոր դէմ մեր տիրացու հայրենասիրութեան փչելիք առձեռն մեղադրանքը, և այժմէն կ՚արգահատիմ անոր վրայ։

— Կիլիկեան պարպե՛լ կ՚ուզէք, էֆէնտիմ, ի՞նչ ըսել է, պէ՛տք է պահպանել Կիլիկեան Հայութիւնը պէ՛տք է արգիլել գաղթային հոսանքը, պէ՛տք է հոն հաստատել մեր որբանոցը, պէ՛տք է «չիյտեմ ինչ ֆալան...»։

Այո՛, այդ եղանակները ես ալ խանդավառութեամբ զարկած եմ ժամանակին։ Բայց գէ՛թ Կիլիկեան իրականութիւնը աչքովս տեսնելէ ետք, պաղարիւն — չըսելու համար սինիք — հեղնութիւն մը պիտի սեպէի ատանկ բանաստեղծական կամ sentimental տեսակէտներ բերել Կիլիկեան որբերու պահպանման խնդրին մէջ։

Նոյն իսկ եթէ նիւթական վերոյիշեալ դժուարութիւններն ու անպատեհութիւնները չըլլային, եթէ անմիջական վտանգի վախն ալ չի կենար, տակաւին առնուազն անխոհեմութիւն, անգթութիւն պիտի նկատէի Կիլիկեան որբերը պահել անբարոյացուցիչ ու սարսափի այն մթնոլորտին մէջ ուր անոնց անմեղ ու անգիտակ հոգիները լեցուեցան իրենց ծնողներուն խողխողումին արհաւիրքովը, և ուր իրենց զահանդած աչքերուն ուրիշ բան չերեւիր, եթէ ոչ զիրենք որբացնող դահիճներուն դժնէ կերպարանքը, իրենց հայրենի օճախներուն մոխրակոյտը, իրենց մերձաւոր ու հեռաւոր ծանօթներուն ու ազգականներուն մեկնող-հեռացողի կմախքները... Իրենք պիտի մնայի՞ն, երբ ասոնք, մեծերը, կ՚երթան, իրենք պիտի մնայի՞ն, իրենց հէգ աղաղուն էութեամբ

*վրայ կրելու համար քստմնելի նայուածքները անո՛նց, որոնք իրենց հայրերուն արիւնովը չի յագեցան, և որոնք պիտի չի դադրին աչք տնկելէ իրենց նորաբողբոջ կեանքին։*

*Կ'ուզէ՞ք այդ սերունդը բարոյապէս փճացնել, ձըգեցէ՛ք զայն ուր որ է, և դուք պիտի հասնիք այդ ժխտական արդիւնքին։*

*— Ի՞նչ ընենք, ուրեմն, պիտի հարցնէք, ձգենք որ որբերը ասոր անոր ձե՞ռքը անցնին և «բարերարութեան» դիմակին տակ շահագործուի՞ն, կամ օտար հաստատութեանց մէջ այլասերի՞ն։*

*Ո՛չ մին և ո՛չ միւսը։*

*Ես ալ շատերու հետ կը ձայնակցիմ որբերու անհատական որդեգրման դէմ որուն ձախորդ ու աղէտաւոր հետևանքները այնքան ազդու կերպով վեր հանուեցան վերջերս Երուանդ Օտեանի և «Մամուլ»ի խմբագրութեան կողմէ։*

*Բայց եթէ Կիլիկեան որբերը ազգովին որդեգրել կ'ուզենք, ի՞նչ բան մեզի կը ստիպէ զանոնք հաւաքել և անոնց կրթութեանը հոգ տանիլ մէկ կամ մէկէ աւելի հաստատութիւններու մէջ, և ինչո՞ւ այդ որբանոցը կամ որբանոցները անպայման կ'ուզուի Կիլիկիա հաստատել, երբ այնտեղի նիւթական ու բարոյական պայմանները՝ բոլորովին աննպաստ են այդ հաստատութեան նըպատակին։*

*Եթէ Պոլսոյ, Իզմիրի կամ Եգիպտոսի Հայը չուզեր կամ չի կրնար որբանոց մը կամ որբանոցներ բանալ իր ծոցին մէջ Կիլիկիոյ անոք ձագուկներուն համար, կըրնայ տարեկան որոշ ու բաւարար տուրք մը սահմանել Կիլիկեան Որբանոցի մը, որուն համար յարմարագոյն վայրը Կիպրոսն է անտարակոյս, իր շատ մը առաւելու-*

*թիւններովը։ Եւ արդէն այս նպատակով Եգիպտահայ գաղութին մէջ կարեւոր գումար մը հանգանակուելու վրայ է։*

*Բայց մեր Ազգ. Կեդր. Վարչութիւնը «հայրենասիրաբար» որոշեր է որ Ատանայի մէջ հաստատուի այդ որբանոցը, և այժմէն անոր իբր տեսչուհի ընտրեր ու նոր պատուիրակութեան հետ ճամբայ հաներ է Տիկին Զապել Եսայեանը, որուն անցողակի ներկայութիւնը վայելելու հաճոյքն ունեցանք հոս նախորդ երկուշաբթի։ Մեծատաղանդ գրագիտուհին — որուն Ատանա երթալուն այլապէս կը խնդակցիմ — պիտի չի տարակուսի անշուշտ իրեն համար ունեցած վաղեմի բարեկամութեանս և անկեղծ հիացումիս մասին, եթէ իբր Որբանոցի «տեսչուհի» իր ընտրանքին մէջ տեսնեմ ամբողջ այս խնդրին նկատմամբ Կեդր. Վարչութեան հետեւած անկապակից գործելակերպը բնորոշող* fantaisiste *կարգադրութիւն մը։*

*Կը յուսամ, սակայն, որ նախորդ և նոր պատուիրակութեանց, ինչպէս նաև Կիլիկիոյ Վեհ. Կաթողիկոսին կողմէ եկած և ըլլալիք թելադրութեանց վրայ՝ Կեդր. Վարչութիւնը ետ կը դառնայ իր որոշումէն, և իր բարձր հաւանութեամբը կարելի կ'ըլլայ ազգային-հաւաքական ջանքերով Կիպրոսի մէջ, արիւնոտ Կիլիկիոյ մայրական խանդակաթ աչքերուն տակ, պատսպարել ու մեծցնել Կիլիկեան որբերը։*



# ԱՆԻՐԱՒՈՒԱԾ ՄԸ



Վերջին թղթաբերը սեղանիս վրայ կը դնէ ֆրանսերէն գրքոյկ մը։

Մօտաւորապէս հարիւր մեծադիր երեսներէ բաղկացած հատոր մըն է ան, մոխրագոյն սգաւոր կողքով, որուն վրայ կը կարդամ «Vèpres Ciliciennes» (*) ողբեկոչող վերտառութիւնը։ Կիլիկեան Աղէտներուն նուիրուած ֆրանսերէն դրուագի մը ճակատը կարելի չէր գըտնել աւելի թելադրական անուն մը, որ ա՛յնքան նմանաձայն կը հնչէ, որքան նոյնիմաստ կը նշանակէ «Vèpres Ciciliennes» պատմական յորջորջումին հետ։

Ցորեկուան անապարատ զբաղումներուն մէջ կը մոռնամ այս գրքոյկը, բայց երբ գիշերը մինակ կը մնամ անոր հետ, սիրտս՝ թունդ ելած՝ անոր վրայ կը ծռի, անոր կը փարի, մինչ մտածումս կը փախչի, կ'երթայ հե-

(*) Les Vêpres Ciliciennes — Les Responsabilités — Faits et Documents. *par Mgr. MOUCHEGH.* Alexandrie.

Այս հատորը ֆրանսերէն թարգմանութիւնն է Մուշեղ Սրբազանի վերջերս հրատարակած՝ Ատանայի Ջարդը եւ Պատասխանատուները գրքոյկին, որուն ֆրանսերէնին մէջ կարեւոր յաւելումներ եղած են տոքիւմաններուն, եւ որուն գեղեցիկ յառաջաբան մը նուիրուած է Քոնթ տը Մաքս տը Քոլլանթօ, Գահիրէի «Le Progrès» օրաթերթին տնօրէնը։ Մ. Հ.

տուն, այն եղբայրական հոգիին մօտ որ այդ հատորին յօրիներ է, և որ ամիսներէ ի վեր՝ օտար ափերու չըղթայուած՝ Պրոմեթէի մը դիրքին տառապանքը կ'ապրի՝ ուրացումին ու զրպարտութեան անդղերուն յօշոտիչ կտցահարումը զգալով իր վրայ...

Այդ մեծ անիրաւուածը՝ Ատանայի Առաջնորդ Մուշեղ Սրբազանն է։

Զինք դատապարտել չտապո՛ղ և իր առջեւ Հայրենիքին դուռները գոցող Զինուորական Ատեանին ընթացքը չէ որ այնքան վիշտ կը պատճառէ, անշուշտ, իրեն և զինքը ճանչցողներուն, այլ այն կրաւորական հաւանութեան, լռին անտարբերութեան ու լպիրշ բամբասանքի երեւոյթները, որոնք իր անունին շուրջ հաստատուեցան վերջերս, և որոնց մատնած տխուր հոգեբանութիւնը ո՛ր և է արդարացում չի վերցներ։

Զինուորական Ատեանը կրնար սխալիլ, նո՛յնիսկ զինքը մոլորեցնող Հայ ապիրատներու սուտ վկայութիւններովը, և աւելի քան հաւանական է որ ան դարմանէ իր սխալը։

Բայց ի՞նչպէս բացատրել խանդավառ նենգութիւնը այն հայազգի ողորմելիներուն, որոնք Մուշեղ Սրբազանի ձախորդութեան ի տես հրճուեցան և մութ ու լոյս անկիւններու մէջ անձնատուր եղան զայն աղարտել ճամարտակող լեզուագարութիւններու։

Ի՞նչպէս ներել զազիր չարութիւնը բոլոր այն հակառակորդ միջակութիւններուն — կրօնական ըլլան թէ աշխարհական տիրացու — որոնք իրենց քացխած քինախնդրութեանց յագուրդը փնտռեցին արի ու մեծատաղանդ եկեղեցականին դժբաղդութեանը մէջ։

Ի՞նչ մեկնութիւն տալ նաեւ վեհանձնութեան այն պակասին զոր մեր կարգ մը ազգային առաջնորդողներն ու մտաւորական շրջանակները երեւան բերին հանդէպ այս

չարաչար անիրաւուածին, ընդունիլ ձևացնելով թէ ճշմարտութեան բաժին մը կրնար կենալ անոր հասցէին եղած անհիմն վերագրումներուն մէջ, մինչդեռ կտոր մը բարի կամեցողութիւն իրենց կողմէն բաւական պիտի ըլլար զիրենք համոզելու անոր բացարձակ անպարտութեանը։

Ի՜նչ տարօրինակ և վրդովեցուցիչ լռութիւն էր զոր մեր մամուլն ու ազգային իշխանութիւնները պահեցին Մուշեղ Սրբազանի դատապարտութեան հանդէպ, և զոր դեռ խզելու տրամադրութիւնը չեն թուիր ունենալ։

Չէ՞ն զգար գոնէ թէ՝ բոլոր միւս դատապարտութիւններէն աւելի՝ այդ դատապարտութիւնը՝ ազգային պատասխանատու պաշտօնեայի մը դէմ ամբողջ Թուրքիոյ Հայութեան ճակտին նետուած դատավճիռի մը նշանակութիւնը կ'առնէր, եթէ անմիջական ու կորովի ջանքեր չըլլային անոր հիմունք ծառայող զրպարտութիւններն ու խեղաթիւրումները հերքելու, անվիճելի, անդիմադրելի փաստերով։

Այդ հերքումը, խօսքի վսեմ պարզութեամբ մը, այլ հրաշալի ուժգնութեամբ մը՝ արդէն տուաւ Կիլիկիոյ Վեհ. Կաթողիկոսը։

Բայց եթէ Պոլսոյ Պատրիարքական Աթոռին վրայ Դուրեան Սրբազանը ժամանակին չի գար բազմիլ, ինծի տարակուսելի կը թուի, թէ կեդրոնական կառավարութեան ու արդարակորով Մահմուտ Շէվքէթ փաշային մօտ մեր Ազգային Կեդր. Վարչութեան կողմէ ջանք մը ըլլար Ատանայի վշտակիր Առաջնորդը պաշպանելու։

Բայց ինքը, անընկճելի լքուածը, իր տարադրութեանը մէջ սմքած, նստած չէ։ Անիկա նորէն կը շարունակէ իր կենսայորդ խառնուածքին սնունդն եղող տենդային գործունէութիւնը, Կիլիկեան օգնութեան ու դար-

*մանումի ճիգերուն աջակցելով և միևնոյն ատեն պաշտպանելով իր անտեսուած դատը, որ դա՛տն է մանաւանդ իր ջարդուած հօտին։*

*Պիտի ուզէի սրտապնդող խօսքեր ընել իրեն, պիտի բաղձայի որ ա՛ն մեզմէ քիչ մը անիրաւուածի, դառնացածի, ուրացուածի իր կսկիծոտ յոռետեսութիւնը, պիտի ուզէի որ իր հաւատքը վերանորոգուէր արդարութեան յաղթանակին վրայ որ այլեւս չի կրնար ուշանալ, շնորհիւ Թուրքիոյ ճակատագիրն իրենց տիրական ձեռքերուն մէջ առնող վարչական նոր ու հարազատ ուժերուն և շնորհիւ մեր ճակատագրին, մեր գոյութեան պահպանումին հսկող վեհանձն ու ասպետական զօրավարներուն, որոնք օսմանեան ազատարար բանակին պատիւը կը մարմնաւորեն և Օսմանեան Հայրենիքին փառքն ու պարծանքը կը կազմեն։*

*Թալէաթ պէյերը երկաթէ ձեռքով մը պիտի քանդեն անցեալ չարագործ ունակութիւններն ու աւանդութիւնները։ Անոնք Ճէմալ և Մէհմէտ-Ալի պէյերուն պէս մաքուր ու փորձուած կամաւորներ կը հասցնեն ա՛ն գաւառի աղէտակոծ խորերը, և հետզհետէ ձեռք առնուելիք կտրուկ ու անխարդախ միջոցներով պիտի գիտնան ներկային դառնութիւնները մոռցընել և ապագային խորտակուած յոյսը վերահաստատել։*

*Անոնք պիտի չի վախնան չիտակ նայիլ ճշմարտութեան երեսին, պիտի չի խուսափին Արդարութեան զոհողութիւններէն, և պիտի փութան ճանչնալ, ուղղել ու դարմանել հին ու նոր բոլոր սխալները — եթէ նոյն իսկ* վճիռներ *ըլլան այդ սխալները։*





ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

«Յիշատակարան»էն առնուած

# Հայ Մը — Մարդ Մը

*Պալիկեանի յեղակարծ մահը ազգային սուգի ու կսկիծի մեծ պարագայ մը եղաւ։ Քիչ անգամ այնքան խորապէս զգածուած ենք ազգովին՝ որքան երէկուան դագաղին շուրջը։ Եւ այնքան աւելի կը խռովէ մեզ Պալիկեանի նոր գոցուած գերեզմանը՝ որքան մեր մտածումը կ'անդրադառնայ հոն վերջացող տարօրինակ ճակատագրին։*

*Մարդը, զոր երէկ հողին յանձնեցինք, և որուն ամբողջ Հայութիւնը յուղարկաւորուեցաւ հոգեւին, անծանօթ մըն էր, մինչ շատերուն համար, դեռ տարի մը առաջ։*

*Օսմ. Երեսփոխանական Ժողովին իբր անդամ իր ընտրութիւնը՝ Միութեան և Յառաջդիմութեան Կոմիթէին կողմէն՝ մեզ այլապէս խանդավառելու բնոյթը չունեցաւ։ Էտիրնէի մէպուսը մեզ չէր շահագրգռեր. իր Հայու հանգամանքը բաւարար պատճառ մը չէր, որ խնդակցէինք զինքն ալ հաշուելով մեր հերոսափառ մէպուսներուն սակաւաթիւ շարքին մէջ։ Իր ազգասիրութիւնը — որուն համար արդէն երդում-պատառ եղած չէր երբէք, պատուակա՞ն մարդը — չեմ գիտեր ինչո՞ւ՝ աւելի քան տարակուսելի նկատուեցաւ մեր սխրալի «հանրային կարծիք»ին մէջ։ Թրքատիպ, Թրքասէր, Թրքաբարոյ մէկն*

*էր, ըսին, որ Հայ ծնած ըլլալու տարբերութիւնն ունէր լոկ զինքն ընտրողներէն։ Ըսի՛ն և մենք ալ անտարբեր ու անձնդիւր կրաւորականութեամբ մը՝ հաւատացինք, համոզուեցանք...*

*Այնուհետեւ, մերթ ընդ մերթ, իր անունին կը հանդիպէինք մերթ աւելի կամ պակաս, կամայ թէ ակամայ զաւեշտական թերթերուն մէջ, գրեթէ միշտ անհամակիր,* տէզօպ-լիժան *վերագրումով մը յիշատակուած... Միտքս կուգայ, թէ՝ Երլտըղլի Համիտեան հացկերոյթին մասնակցած ըլլալուն համար՝ Սպարթալըին և Տաղաւարեանին հետ՝ մեր խղճահար հրապարակագիրներէն ոմանց ամեհի խարանումներուն արժանացաւ։*

*Զգայացունց ժէսթերու և հմայքոտ կեցուածքներու մարդը չէր Պապիկեան։ Անիկա ոչինչ կ'ընէր իր վրայ ուշադրութիւն հրաւիրելու, իրմով զբաղիլ տալու կամխամտութեամբ։ Օսմ. Խորհրդարանին մէջ քիչ անգամ դուրս եկաւ այն համեստ ինքնաստուերածումէն, որ կեանքի մէջ իր նկարագրին յատկանիշն էր, և որ չէր արգիլեր զինքն ամենէն գործօն ու ամենէն երախտաւոր դայեակներէն մէկն ըլլալէ մեր երախայ Սահմանադրութեան։ Ականաւոր փաստաբան՝ անիկա տարիներով գործակիցն եղած էր հանգուցեալ Մանեասիզատէ Րէֆիք պէյի, և իր լայն բաժինն ունեցած՝ օսմանեան ազատագրութեան նախապատրաստական ճիգին մէջ։ Իթթիհատի կարեւոր անդամ՝ իր ձայնը հեղինակութիւն և իր դատատանը կշիռ ունէին Թուրք քաղաքական շրջաններու մէջ, ուր Պապիկեան իր վայելած յարգանքն ու վստահութիւնը կը պարտէր ո՛չ թէ որևէ արտակեղի զիջումներու, այլ տարամերժօրէն չիտակութեան և բարոյական բարձր արժանիքներուն։*

*Եւօր մըն ալ, 3-4 ամիս առաջ, լսեցինք որ Մէպու-*

եանին կողմէ Ատանա կը ղրկուէր Պապիկեան, Կիլիկեան Աղէտքը տեղւոյն վրայ քննելու և իրողութիւններն ու պատասխանատուութիւնները ճշդելու համար։

Պապիկեանի այս առաքելութիւնը մեզմէ ոմանց ջերմեռանդ ազգասիրութիւնը վրդովող առիթ մը եղաւ։ Պաշտելիօրէն գժայլելի չե՛նք։ Պատճառ մը ունեցած չէինք Պապիկեանի ուղղամտութեանը մասին կասկածելու, բայց լրջօրէն, սրտցաւօրէն մտահոգուեցանք՝ թէ Էտիրնէի Հայ մէպուսը չե՞լլար տեղական մեղապարտ իշխանութեանց ճնշիչ ազդեցութեան ենթարկուէր կամ գործուած վիթխարի չարիքին շուրջ սխալական դիւանագիտութեան մը թելադրած մեղմացումի, պարտկումի, իտարէի մասլահաթի միջին ու անել ճամբաներու հետամուտ...

Բայց, քիչ յետոյ, Պապիկեան յայտնութիւն մը և խղճիխայթ մը եղաւ միանգամայն՝ մեզմէ շատերուն համար։ Անիկա իր ստանձնած դերին կատարեալ գիտակցութեամբը խոյացեր էր դէպ ի Կիլիկեան աւերները, և առաջին վայրկեանէն՝ անվարան դիմագրաւումով մը՝ յանձնառու եղեր էր այն անհատական զոհողութիւններուն զորս իրմէ կը պահանջէր ճշմարտութիւնը։ Իր ցեղին անտարբեր և անկէ գրեթէ ուրացուած Հայը արուն-արցունք լացաւ Կիլիկեան գերեզմաններուն վրայ որոնց մէկիկ-մէկիկ այցելեց։ Որբութեան, թշուառութեան, անօթութեան և ամբողջ այդ վերապրող տառապանքին առջև ո՛չ ոք իրեն չափ ցաւագնօրէն գալարուեցաւ։

— «Ասիկա դիմանալիք բան չէ՛», կ՚ըսէր ան՝ հոգին ակռաներուն մէջ սեղմած։

Ու մենք դառնօրէն զգացինք, որ՝ առանց ճանչցած ըլլալու՝ իր մեղքը առեր, անիրաւեր էինք զինքը։ Աս ալ մեր աղւոր ժողովուրդին պզտիկ ընթացիկ

վատութիւններէն մէկը՝ իր զաւակներէն շատերուն հանդէպ։

Բայց Պապիկեան ճշմարիտ Հայ մը չէր միայն՝ իր ազգին ցաւը ուժգնօրէն զգալու, զայն իր միսին ու ոսկորին մէջէն ապրելու ընդունակ։ Անիկա մա՛րդ մըն էր բառին քաղաքացիական ամենաբարձր իմաստովը։

Ահռելի իրականութեան առջև չընկրկելու, անարդարութեան դէմ ընդվզելու, ծառանալու իր քաջութիւնը՝ սքանչելի տիպարը, հոյակապ մարդը երեւան բերին իր մէջէն։ Ո՛չ ոք համարձակեցաւ, Ատանայի մէջ իսկ, դահիճներուն երեսն ի վեր իր զայրոյթը, զզուանքն ու կատաղութիւնը ժայթքել, ա՛յնպէս, ինչպէս ըրաւ կեանքն ի բուն խոհեմ, խելօք, շնորհքով ճանչցուած այս մարդը։

Պապիկեանի յայտնութիւնը կարծես սփոփիչ ու սրտապնդող փոխարինութիւն մը եղաւ մեզի՝ ազգային ներկայ ճգնաժամին մէջ մեզ ամենէն աւելի սխրեցնող ներքին բարոյական տնանկութիւններուն ու սնանկութիւններուն դէմ։ Մարդու պակասը ամենէն աւելի զգացած, չարաչար զգացած մեր մէկ վայրկեանին տրուեցաւ մեզի գտնել, ճանչնալ, ողջունել գերազանց մարդը, մարդ մը, յանձին Յակոբ Պապիկեանի։

Զինքը Զօլային պիտի չի նմանցնեմ բաղդատութեան պայմանադրականացած եզրեր փնտռած ըլլալու համար։ Բայց Պապիկեանի խոյանքը՝ իր յուզիչ գեղեցկութեանը մէջ՝ վար չի մնար մեծ Տրէֆիւզարինէն։ Կիլիկեցի Հայուն արիւնազանգ դատին հոգին էր ան, որ ահա յանկարծ կը մարի, արդարութեան իր հետապնդած յաղթանակը տեսնելէ առաջ... Որովհետև ան անդրդուելիօրէն կը հաւատար ճշմարտութեան յաղթանակին։

Առաջին անգամ Իզմիր հանդիպեցայ իրեն՝ Ատանայէն դարձին։ Տեսած արհաւիրքներէն ընկճուած, ջըղագրգռուած էր։ Բայց կը յուսար թէ՝ անգա՛մ մը Պոլիս հասնելէ և պէտք եղած դիմումներն ու լուսաբանութիւններն ընելէ վերջ՝ պիտի կրնար արդարութիւնը գործադրել տալ։ Նոյն օրը Իզմիր կը գտնուէին Պոլսէն Եւրոպա գացող օսմանեան երեսփոխանները, որոնք իրեն հանդիպեր, զինք համակրութեամբ ու շահագրգռութեամբ շրջապատեր էին, և իր տեղեկութիւնները լսելէ վերջ՝ քաջալերեր էին զինքը, թախանձեր էին իրեն Պոլիս հասածին պէս իրողութիւնը պէտք եղած տեղերը հասկցնել, ո՛ և է չկամութեան, դժուարութեան առջև չի վհատիլ, և հաւաստեր էին իրեն, թէ իր հետ պիտի ըլլան մինչև վերջը արդարութեան գործին մէջ։ Տօքթ. Ռիզա Թէվֆիք պէյի, Թալէաթ պէյի, Սիւլէյման Պուսթանի պէյի, Նէսիմ Մազլիա էֆ.ի և ընկերներուն այս տաք վերաբերումը զինք շատ զօտեպնդած էր, և Պապիկեան՝ Օսմ. Խորհրդարանին ֆրէմը իր հետ ունենալէ վերջ՝ ա՛լ գրեթէ վըստահ կը զգար՝ թէ պիտի կրնար արդարութիւնը փրկել Կիլիկիոյ մէջ անգամ մըն ալ ու առյաւէտ կախուելէ։

Չեմ գիտեր, թէ վերջէն ո՛րքան բան հարկադրուեցաւ զեղջել իր այդ յամառ հաւատքէն։ Բայց մինչև վերջին վայրկեանը պատնէշին վրայ մնաց, աննկուն ու աղեխարշ...

Թերևս ճիշդ ժամանակին գնաց Պապիկեան, իր ճակատագրական դերը լրացուցած ըլլալու գիտակցութեամբը, անոր ներշնչած յոյսերուն ու երախտագիտութեան մխիթարանքը տանելով, և իր թեւակոխած աստուածացումի ճամբուն մէջ թողլով մեզ իր ետեւէն անձկագին մաղթել, որ իր արդարախնդիր հաւատքն ար-

*դառնար գալիք դէպքերով, որ իր արդարաշունչ ձայնը գերեզմանին խորէն աւելի ազդու և ազդարար հնչէր, մաղթե՛լ՝ վերջապէս՝ որ Հայ-Թրքական Եղբայրակցութեան ամենէն հարազատ ու նուիրագործուած խորհրդանշանը մնար իր արդարաշուք անունը։*

*Հայ ազգը 3-4 ամիսէ ի վեր իմացաւ ու որդեգրեց այդ անունը, բայց ցեղին երախտագէտ յիշողութեանը մէջ անկորնչելի պիտի մնայ ան յաւիտեան...։*



# Դէպի Արդարութի՞ւն

*Ատանայի Պատերազմական Ատեանին այն վճիռէն վերջ որ՝ Մայիս 28ի արշալոյսին՝ աւերեալ քաղաքին մոխիրներուն վրայ Արդարութիւնը կախաղան հանեց յանձին վեց անպարտ Հայերու, ա՛լ մեզի կը մնար լռել ու համակերպիլ այս երկրին մէջ մեզի վիճակուած սեւ բաղդին։*

*Լռե՜լ, զի ա՛լ ոչինչ կրնայինք սպասել Թուրք* արդարութենէն. *զի՝ դժխեմ եղածին հանդէպ՝* արդարութիւն *բառն իսկ բերաննիս առնելն՝ անոր դիմակը ծամծըմելու պէս բան մըն էր այլեւս։*

*Լռե՜լ, զի այդ ահաւոր, անբեկանելի, անդարմանելի վճիռին մէջ մեզ կը զգետնէր, կ՚ապշեցնէր կատարուած վիթխարի Ոճիրին պաշտօնական արդարացումն ու նուիրագործումը։*

*Լռե՜լ, զի բողոքն ալ արգիլուած էր արդէն, և մամուլի* ազատութիւնը *չատ չատ Թոյլ պիտի տար մեզի ցաւագին մենախօսութիւններու մէջ կերպով մը յագեցընել մեր ալ յաւէտ խոշտանգուած սրտերուն մորմոքն ու անդոհը։*

*Նո՛յնիսկ կոտորածը, քանդումն ու քայքայումը չէին կրցեր մեզ այնքան յուսահատեցնել, որքան այդ վճիռն ըրաւ, այդ անողոք, անագորոյն վճիռը, որ*

ազգովին դատապարտութեան մը հոմանիշ էր մեզի համար։

Բայց ի՞նչ բան էր, որ նորէն յոյսին մարող կայծերն արծարծեց եւ ցարդ վառ կը պահէ մեր ներսիդին։

Միթէ Ատանայի կախաղաններէն անդին դեռ ճամբայ կը մնա՞ր դէպ ի արդարութիւն...

Լաւատեսութիւնը, ինքնեկ թէ բռնազբօսիկ, մերինին պէս անել կացութեան մը մատնուած ժողովուրդներուն համար հոգեկան — ի՛նչ կ՚ըսեմ ֆիզիքական ալ— պէտք մըն է, որուն առջեւ շատ անգամ տեղի կուտան իրականութեան ամենէն գիտակցօրէն մռայլ ըմբռնումները անգամ։

Ներկայ վայրկեանիս քիչ մը աս է մեր պարագան։

Կիլիկեան իրականութիւնը չափազանց վհատեցուցիչ, ճլատող ու չարչարող է, որպէս զի մենք չի փորձուէինք յոյսի նոր աղբիւրներ փնտռել մեր չուրջը, եւ իբր այդ կառչիլ այն բոլոր երեւոյթներուն, որոնք աւելի կամ նուազ չափով մեզ քաջալերելու, սատարելու բնոյթն ունենալ կը թուին։

Ներքին այս բնական մղումը պէտք չէ՛ սակայն մեզ քշէ մինչեւ ինքնախաբէութիւն։ Եւ՝ պահելով հանդերձ մեր հաւատքը արդարութեան վերջնական յաղթանակին վրայ՝ պէտք է հետամուտ ըլլանք միշտ ստուգելու թէ ի՛նչ է իսկական արժէքն ու տարողութիւնը մեր լաւատեսութեան ընձեռուած փաստերուն։

Դէպ ի արդարութիւնն մեր հաւատքին այս վերադարձը կը սկսի հանդուցեալ Յակոբ Պապիկեանի Ատանայէն վերադարձին հետ։

Այդ միջոցին հակաշրջում մը տեղի ունեցաւ կեդրոնական կառավարութեան Հայոց նկատմամբ հետեւած քաղաքականութեան մէջ։



Անգլիացի մարդասիրուհի Միս Տարի Ռօյսի ձեռքին բացուած հիւանդանոցին մէջ վիրաւոր մանուկներ, որոնք դարմանուած են անգլիական, ճապոնական եւ ամերիկեան մասնաւոր բժիշկներէն: Այս հիւանդանոցին դեղերը եւ այլ պէտքերը մատակարարուած են Ա. Պատրիարքութեան կողմէ:

Խորհրդարանական պատուիրակին արդարակորով ու դղրդագին յայտարարութիւնները հասարակութեան մէջ ահագին ցնցում մը յառաջ բերին, որուն չափով մը արձագանգ տուաւ Մայրաքաղաքին Թրքական մամուլը։ Որքան ալ իր ետեւէն՝ իր ընկերով՝ Եուսուֆ Քէմալ պէյի՝ վերապահումներն ու վարանումները՝ արդարախնդիր իր հզօր ու հեղինակաւոր ձայնին ազդեցութիւնը կոտրել սահմանուեցան՝ Պապիկեան կրցած էր արդէն վճռական հարուածը տալ՝ Ատանայի եղեռնին հանդէպ Ատիլ պէյ-Ֆէրիտ փաշա տխուր զոյգին սարքած լռութեան դաւադրութեան։

Հիլմի փաշայի Դահլիճը իբրև թէ ձերբակալեց ու Ատանա դատուելու ղրկեց նախորդ կուսակալ չարաչուք Ճէվատ պէյը, և հեռագրով հրամայեց Ատանայի կուսակալին և Զինուորական Ատեանին անմիջապէս ձերբակալել և դատել զինուորական հրամանատար Մուսթաֆա Րէմզի փաշան, Պաղտատի Ապտիւլ Գատէրը, Ճէպէլի-Պէրէքէթի միւթէսարրըֆ Ասաֆ պէյը և Կիլիկեան Աղէտքին միւս գլխաւոր չարահռչակ պատասխանատուները։

Ոմանք—ու մեր մէջ դեռ շատ կը գտնուին այս կարգի միամիտներ — կարծեցին՝ թէ արտաքին ճնշիչ միջամտութեան մը վրայ տեղի կ'ունենար կառավարական այս վօլթ-Ֆասը։

Եթէ երբէք միջամտութիւն մը կար, ա՛ն ալ բառիս բարոյական ամենածանր նկատումի մը միջամտութիւնը կրնար ըլլալ, ինչ որ ինքնին կը հարկադրուէր, այնպիսի միջոցի մը, ուր ամէն ատենէ աւելի պէտք էր հաշուի առնել քաղաքակիրթ աշխարհի վերաբերմունքը դէպ ի Երիտասարդ Թուրքիան, որուն լաւագոյն ներկայացուցիչները Մէպուսանին կողմէ Եւ-

րոպա կը դրկուէին՝ բարեկամութիւններ հաստատելու, համակրութիւններ շահելու և ձեռնտուութիւններ ապահովելու։

Արդարութեան գործադրութի ճամբուն մէջ Դաշլիճին առաջին քայլերը, աջ ու ձախ արձակած կարգ մը հրամանները, ոճրագործներու դէմ թուղթի վրայ կամ բերանացի առնուած միջոցները նուազագոյն բանն էին զոր կրնային ընել, և զոր առջի օրէն ընելու էին՝ առանց եւրոպական հանրային կարծիքին առջև սահմանադրական պետութեան իրենց վարկն ու պատիւը փրկելու մտահոգութեան, պարզապէս արդարութեան իրենց պարտքը հատուցանելու համար՝ իսլամ մոլեռանդութեան ու բարբարոսութեան անգամ մըն ալ զոհ գացող Հայերուն։

Բայց չէ՛, Թուրք մտայնութեան մէջ տակաւին սաղմնաւորուած չէ՛ արդարութեան բացարձակ ու անխառն յղացումը. հոն չի մտներ, չի սղմիր, չի հաստատուիր դեռ արդարութիւնը արդարութեան համար՝ բարերար, մաքրագործող ու վերանորոգիչ սկզբունքը։

Թուրք մտայնութեան մէջ թանձրացած, կարծրացած, նաւր կապած կ'երեւայ արդարութիւնը քաղաքականութեան համար՝ վնասակար, ապականիչ ու քայքայիչ սկզբունքը։

Հո՛ն է վէրքը, որ Թուրքին սիրտը կ'ուտէ, և որ մահացու փտախտի մը կը դատապարտէ անոր ամբողջ մարմինը։

Պէ՛տք է միանգամ ընդ միշտ հասկնան մեր Թուրք հայրենակիցները, թէ արդարութիւնը երբե՛ք արդարութիւն չըլլար երբ իբր քաղաքականութիւն ի գործ կը դրուի։

Եւ ասոր ինչ աւելի համոզիչ ապացոյց՝ քան Կի-

լիկեան Արհաւիրքին պատասխանատուներուն դէմ Դաշ-
լիճին ձեռք առնել փորձած միջոցներուն պատիպատ,
ապարդիւն ու անհետեւանք ընթացքը։

Ատանայի կուսակալ Մուսթաֆա Զիհնի փաշան
բացէ ի բաց մերժեց գործադրել Դաշլիճին հրամանները
նախընտրելով պաշտօնանկ ըլլալ՝ քան խոշոր տիտղո-
սաւոր ոճրագործներուն դէմ ցցուիլ։

Զինուորական Ատեանը բողոքեց կառավարութեան
ոտնձգութիւններուն դէմ, և սպառնաց հրաժարիլ,
սպառնալիք՝ որուն առջև Դաշլիճը տեղի տուաւ, ա-
նողնահար արժանապատուութեամբ մը։

Ծէվատ պէյ, Մուսթաֆա Րէմզի փաշա, Աստիւլ
Գատէր և ընկ. ցարդ թեթև գլխուցաւերէ զատ ուրիշ
պատժի չենթարկուեցան։

Ինսան Ֆիքրի բանտին մէջէն ամբաստանողի կեց-
ուածքներ առաւ ու սպառնալիքներ ուղղեց Վարչապետ
Հիլմի փաշայի հասցէին։

Ասաֆ պէյ անպարտ արձակուեցաւ Ծէպէլի-Պէրէ-
քէթի Զինուորական Ատեանէն, որ իր պաշտօնէն հրա-
ժարեցաւ՝ Դաշլիճին ընթացքէն վիրաւորուած զգալով։
Իսկ Ատանայի Զինուորական Ատեանը մերժեց կրկին
անգամ Ասաֆ պէյը դատելու կառավարական հրահանգը,
և այսպէս Ծէպէլի նախկին միւթէսարրըֆը, ամենա-
վատթար չարագործ մը, ազատ արձակուեցաւ։

Իզմիրի զինուորական-հրամանատար՝ պատուական
Ֆազըլ փաշան Ատանա ղրկուեցաւ՝ իբրև Պատերազմա-
կան Ատեանին նախագահ՝ Բէնան փաշայի տեղ անցնե-
լու համար, բայց հոն երթալէն վերջ՝ զինուորական
դիւրազգածութիւնները խնայելու խնամքով՝ ձեռնար-
կուեցաւ ուրիշ Ատեան մըն ալ կազմել՝ նախագահու-
թեան երկու աթոռ տրամադրելու համար։

Այս ջղաձգական ու հակասական կարգադրութիւններէ յետոյ՝ տակաւին արդարութիւնը քայլ մը առաջ չի գնաց գործադրութեան ճամբուն մէջ։

Դրական արդիւնքի չգոյութիւնը մէկդի՝ գոնէ զգացումները կակղանային, տրամադրութիւնները մեղմանային քիչ մը չարաչար անիրաւուած Հայերուն հանդէպ։

Արդարութիւնը չի գործադրուեցաւ, բայց դէթ ճանչցուէր ան, ի՞նչ կ'ըլլար...

Չէ՛. ատ ալ չի կայ։

Հազար դիմումներէ ու թախանձանքներէ վերջ՝ Դահլիճը հաճեցաւ վերջապէս շրջաբերականով մը ընդունիլ ու հռչակել Ատանայի աղէտքին մէջ Հայերուն անմեղութիւնը և անոնց անջատողական, ապստամբական և այլ դաժան դիտումներէ անպարտ ըլլալը։

Կը կարծէ՞ք որ ասիկա չնչին ազդեցութիւն մը գործած ըլլայ մեր Թուրք հայրենակիցներուն գայթակղեալ մտաց վրայ։

Մենք ճի՛շտ հակառակը կը հաստատենք։

Խուլ դժգոհութիւն մը որ տեղ տեղ կը պոռթկայ, և որուն ի տես կը նախընտրես, կը ստիպուիս վազ անցնիլ այն տարակուսական օգուտէն, զոր Ս. Պատրիարքնիս և Ազգ. Վարչութիւննիս ակնկալեր են այդ տեսակ շրջաբերականէ մը։

Պոլսոյ ամենէն եւրոպականացեալ թաղերէն՝ Գատը Գիւղի մէջ, Հայոց Ս. Թագաւոր եկեղեցիին դիմացն իսկ իր խմբագրական միջնաբերդը հաստատած Նեճաթ Թուրք Թերթը՝ կառավարական Հայանպաստ շրջաբերականին առթիւ՝ Ատանայի եղեռնահռչակ Իթթիսալին արժանի յաջորդը կը հանդիսանայ՝ անոր Հայոց դէմ փսխած ճիւաղային զրպարտութիւնները իր հաչւոյն նոյնութեամբ վերարտադրելով։

—Ի՛նչ ըսել է Հայերը չքմեղել Ատանայի դէպքին մէջ, կը բողոքէ Նեճաք կառավարութեան դէմ, մոռցա՞ք որ Հայերը Մերսինի մէջ իրենց թագաւորութիւնը ներկայացուցին, ոչխարի գլխով դրօշակ բաժնեցին, ճառ խօսեցան…

Ո՛վ սարսափ, ո՛վ սպանդական հաւանականութիւններ… Եւ ըսել թէ Թուրքիան դեռ կանգուն կը մնայ, դեռ չէ կործանած Հայերու թատերական սպրդատամբութիւններէն, ճառէ չանթերէն և ոչխարագարդ դրօշներէն…

Զիլլա՞յ թէ ոչխարի գլուխ ներկայացնող այդ դրօշակը սպանդանոց մորթուելու գացողներու խորհրդանշանն ըլլայ…

Բայց ձգե՛նք ողորմելի ու անհաւոր Նեճաքը և ասդին նայինք։ Ահա Պատերազմական Ատեանին անդամ Զիա պէյը, որ հեւասպառ կը հասնի Ատանայէն, ու Պոլիս կը սուրայ՝ իր և իր ընկերներուն կողմէ կեդրոնական կառավարութեան դուռը ափ առնելու և անոր բողոք բառնալու՝ Ատանայի ջարդուփշուր Հայերը արդարացուցած ըլլալուն համար։

Դէ՛ դ է Արդարութիւն կ՚երթանք, հէ՞…

Բայց այս ընթացքով խնդիր է թէ ո՞րբ պիտի հասնինք բաղձացուած արդարութեան և խնդրական ի՛նչ է թէ պիտի հասնինք երբէք։

Արդարութիւնը կրնայ յաւիտենապէս անմատչելի մնալ մեզի եթէ չարունակուի անոր հետապնդիլ քաղաքականութեան չիլ տեսակէններէ և քաղաքական բաւբիքի զարտուղի ճամբաներէ։

Արդարութիւնը հաշիւ չի վերցներ, դիւանագիտական նկատումներու հետ չի հաշտուիր։ Անիկա խրղճմտանքի ու զգացումի պա՛անջ մըն է ամէն բանէ առաջ։

Կիլիկեան աղէտներու վաղորդայնին՝ մենք անձկագին կը սպասէինք սրտի ինքնաբուղխ ու խելայեղ աղաղակ մը լսել Երիտասարդ-Թուրքիոյ վարիչներուն ու գործիչներուն կողմէն, կը սպասէինք, այո՛, որ Ահմէտ Րիզաներն ու Հիւսէին Ճահիտներն իրար անցնէին, յառաջ նետուէին ցաւի ու կարեկցութեան անկեղծ խոյանքի մը մէջ:

Բայց անոնք բառ մը չարտասանեցին, վա՜խ մը չի հնչեցին գործուած զարհուրելի Զուլումին հանդէպ, ու անշարժ, կարծես քարացած՝ լռեցին... Եւ երբ ալ պէտք եղաւ բերաննին բանալ, բաներ մը ըսել՝ իրենց կցկտուր խօսքերը՛, տարտամ վանկերը, կամ աշխատաւոր դարձուածքները նուիրուեցան չարաշուք իրականութիւնը պարտկելու:

Ատիկա ամենադաժան յուսախաբութիւնը եղաւ մեզի համար:

Ի՞նչ արդարացում կրնար ունենալ այս անտարբերութիւնը:

Եթէ նո՛յն իսկ իրաւ ըլլային մեզի վերագրուած դաւադրական ձգտումները, եթէ ճշմարտութիւնն իսկ կենար մեզի դէմ նետուած զրպարտութիւններուն մէջ, եթէ մենք անջատողականներ և ապստամբներ ալ ըլլայինք, ատիկա պատճառ մը չէր որ Երիտասարդ-Թուրքերը չի խռովուէին, թունդ չելլէին մեզի եղած անլսելի խժդժութիւններուն հանդէպ:

Սահմանադրական երկրի մը վարչութիւնը, անոր մտաւորական առաջնորդող տարրը երբեք չի կրնար համաձայնիլ ջարդի սկզբունքին հետ: Քաղաքական յանցաւորները կը պատժուին, դաւադիրներն ու ապըստամբները կը հալածուին՝ օրէնքի տրամադրութեանց համեմատ, բայց խաղաղ քաղաքացիները չեն կոտորեր,

կիներն ու աղջիկները չեն պղծեր, ծերերն ու երախաները չեն մորթեր։

Տարի մը առաջ ասիկա դիտել կուտայի Ահմէտ Րիզա պէյին՝ Բարիզ իր հետ ունեցած տեսակցութեանս մէջ՝ երբ ան Հայ անջատական ապագայ փորձութիւններու դէմ կոտորածի ուրուականը կը ցցէր աչքիս առջև։ Այն ատեն Րիզա պէյ վեհանձնօրէն իրաւունք տուաւ ինծի, ինչ որ չարգիլեր զինքը դեռ այս օրերս մեր բարեկամներէն մէկուն հետ իր խօսակցութեանը մէջ հայկական անջատողականութեան իբր ապացոյց յիշել Դաշնակցական ականաւոր գործիչի մը կողմէ Բարիզի Քօնկրէին մէջ ինքնավարութեան առաջարկ մը բերուած ըլլալը, կարծես ատով հաստատել ուզէր թէ Հայերը իրապէս մեղապարտ էին Ատանայի մէջ, և ուստի անարժան են այլապէս փութկոտ աղապատանքի մը։

Դէպ ի արդարութիւն կերթանք, հէ՞...

Բայց չի յուսահատի՛նք։

Եթէ մենք չի հասնինք Արդարութեան, անշուշտ ԱՆ պիտի գայ այցելէ մեզի...։



# ԿԻԼԻԿԵԱՆ ՍԱՐՍՈՒՌՆԵՐ



## Աղէտքի Սեմին Վրայ



*Սարսափով՝ ու անձկութեամբ ծանրաբեռն մթնոլորտ մըն է, որուն հեղձուցիչ, անդամալուծող ճնշումը կը զգաս Մերսինէն ոտք կոխած վայրկեանէդ իսկ։ Առաջին նայուածքդ կը քաշուի, կը գահավիժի խորն այն անյատակ վիհին, որ բացուեր է հոս իսլամ ու հայ տարրերուն միջեւ։*

*Եւ դեռ հազիւ սեմին վրայ ես Աղէտքին։*

*Հոս արիւն չէ՛ թափած։ Բայց քիչ մը անդին, սեմէն ներս, յորդառատ թափուած արիւններուն յաճախանքը Հայերուն աչքերը հողին կը գամէ՝ զահանդական յառումով մը, մինչ անոնց դարձող, անոնց վրայ սեւեռուող խուժանային ակնարկներուն մէջ կը դնէ մռայլ հրայրքը յուսավրէպ մոլուցքներուն և չի յագեցած վայրագութիւններուն։*

*Կիլիկեան չղթայազերծ Արհաւիրքէն քանի մը ժամուան միայն հեռաւորութեամբ ճողոպրած ըլլալնին անդորրած չէ՛ Մերսինի Հայերը, ապահովցուցած չէ՛ զանոնք չարաշուք հաւանականութիւններու դէմ, որոնց*

վայրկեանէ վայրկեան կը սպասեն սպանդարանի դատապարտուածները տմոյն երեւոյթովը ու սանձուկած համակերպութեամբը։

Քաղաքին առջեւ խարսխած եւրոպական մարտանաւերը — որոնց գալուստը պահ մը փրկութեան յուսոյ առնել տուեր էր իրենց — դադրած են հիմա այդ բարերար վստահութիւնը ներշնչելէ, քանի որ անոնց ներկայութեանը կատարուած է՝ քանի մը օր միայն առաջ՝ Ատանայի երկրորդ ու ահեղագոյն կոտորածը։

Ահ, անասելի առեղութիւնը, գալարող պժգանքը, զորս կը զգաս ի տես և ընդդէմ այդ զրահաւորներուն երբ անոնց անկարեկիր սոնքանքը կը դիտես ցամաքէն ուր «մարդն աւերով կը նշանագրէ», ինչպէս ըսած է Պայրըն։

Անոնք, մարդկային ունայնամտութեան ու սնափառութեան այդ հսկայակերտ չինուածքները կարծես ղրկուած են օգնութեան ամէն յոյս քանդելու համար մոլեռանդ բարբարոսութեան զոհերուն ներսիդին, և ըսելու դահիճներուն՝ թէ ա՛լ կրնան անվարան անձնատուր ըլլալ իրենց սարքած արիւնի խրախճանքներուն, առանց արտաքին ամենադոյզն անպատեհութեան։

Ատանայէն բարձրացող հոգեվարքի տրեզերասաստ հոնդիւններուն ի լուր և երկինքն ու հորիզոնները շառագունող հրդեհներուն ի տես՝ Քրիստոնեաներու պաշտպանութեան անունով Մերսին ափ առած այդ մարտանաւերը անայլայլ մնացին, իրենց չքեղ ու չնաշխարհիկ կղզիացումին մէջ։ Եւ հիմա իրենց թնդանօթները կը շարունակեն քաղաքավարօրէն որոտալ պաշտօնական այցելութեանց փոխանակումին մէջ. իրենց սպաները՝ իբրև սովկ զբօսաշրջիկ՝ ցամաք կ'ելլեն Kամարաներով զինուած՝ երթալ աւերակներ ու դիակներ լուսանկարե-

լու, մինչ իրենց նաւազները՝ Մերսինի փողոցներն ինկած՝ համբաւուներ կը փնտռեն, ուխտաւորի միամիտ ու ջերմեռանդ թափորներով...

Վտանգի յարատև սպառնալիքին տակ մտայլկուած են տեղացի Հայերը, որոնց հնհնուքը երբեմն խուճապի կը փոխուի։ Բերնէ բերան շրջող չարաշշուկ տարաձայնութիւններ, տեղ տեղ նշմարուող խուժանային կասկածելի համախռնումներ շնչասպառ կը պահեն Հայ բնակչութիւնը։ Եւ քաղաքին մէջ իբրև բարոյլ շրջող rèsif կոչուած կիսամերկ ու սպառազէն զինուորներու ահարկու կերպարանքը չէ՛ որ Հայերու սրտէն պիտի փարատէր այս սարսռագին անդոհը։

Միջավայրին այս հիւրամերժ դաժանութիւնը մեզի համար կարծես ապաստան մը կը դարձնէ Շամթըր Օթէլը ուր իջած ենք, և որ սակայն խանէ մը շատ տարբերութիւն չունի։

Բայց դուրսի խռովքներէն ու խուճապներէն հոս ալ զերծ չենք մնար։—Ատանայէն և ուրիշ աղէտավայրերէ եկած կարգ մը ապաստանեալ ընտանիքներ, մէկմէկ սենեակներու մէջ դիզուած են հոս իրենց ճիժ ու պիժերով։ Ու օրական քանի մը անգամ կը պատահի որ արիւնէ ու արհաւիրքէ անցած խեղճ մայրեր՝ օթեւանին պատուհաններէն չարագուշակ երեւոյթ մը տեսնել կարծեն, և իրար անցնին։ Յանկարծ վայնասուն մըն է կը փրթի. «Հա՛ պիտի գան, կուգա՛ն կոր, Աստուա՛ծ իմ»... Պէտք է ընդունիլ թէ ջիղերը սաստիկ տկարացած են հոս, և ուրիշ կերպ չի կրնար ըլլալ. մաղդ վախնալէն է որ կը վախնայ։

Շամթըր Օթէլին միջին ընդարձակութեամբ մէկ սրա՛ը, որ տեղական ազգային հաստատութիւն մը կը պարունակէր Կիլիկեան Ընթերցարան անունով, հիմա

*իբր կեդրոնատեղի կը ծառայէ Պատրիարքարանի պատուիրակութեան։*

*Միեւնոյն օթեւանին մէջ երկու անկողինով փոքրիկ ննջասենեակի մը՝ վայելքը կը բաժնեմ Վեհապետեան Սրբազանին հետ։ Մէկ պատուհանով այդ խեղդուկ սենեակին մէջ է որ՝ գիշերները՝* լավապօի *տեղ բռնող փայտէ հասարակ սեղանի մը վրայ՝ հինումին ծխոտ լամբարին պտխած լոյսին առջեւ կը մրոտեմ Կիլիկեան առաջին թղթակցութիւններս, մինչ Սրբազան ընկերս, բարի ծերուկը, արդարներու խորունկ քունովը կը խորդայ քովս ի վեր։ Երբեմն անկողնին մէջ մէկ կողմէն միւսը կը թաւալտի, ակամայ ուշադրութիւնս քանի մը վայրկեան իր վրայ դարձնելով։ Ու քնացող ծերունիին երեւոյթը չեմ գիտեր ի՛նչ ողորմուկ բան մը ունի որ զիս կը յուզէ՝ ամբողջ տաժանքի կեանքի մը, իր լրումին մօտեցող անշուք ճակատագրի մը սրտաշարժ պատմութեանը պէս։*

*Մարդու մը խորհուրդին թափանցելու համար՝ քընացած ատենը դիտելու է զայն....։*



# ՍՈՎԵԱԼՆԵՐՈՒՆ ՏՈՂԱՆՑԸ



*Մերսինի Հայոց եկեղեցին տգեղ ու աղքատ շէնք մըն է, բաւական ընդարձակ այլ լերկ ու ողորմելի շրջափակով մը, ուր կը գտնուին երկու ուրիշ ա՛լ աւելի խեղճուկ հաստատութիւններ, երկուքն ալ գետնայարկ ու փայտակերտ, որոնցմէ մին՝ միւսէն քիչ մը աւելի մեծ՝ տեղւոյն ազգային դպրոցը կը ներկայացնէ, իսկ միւսը՝ Մանկապարտէզը: Առաջինը իբրև ննջավայր կը ծառայէ հոտ խռնուած աղէտեալներու մէկ մասին, մինչ միւսը գոց կը մնայ, եկեղեցիին հետ, չես գիտեր ի՛նչու, թողլով որ ապաստանեալները մեծագոյն մասամբ բակին քարերուն ու հողերուն վրայ պառկին: Խօսքը չեմ ուզեր ընել Առաջնորդարանին, որ եկեղեցիին ետեւը բաւական բնակելի շէնք մըն է, և որուն համար աւելի շիտակ պիտի ըլլար ըսել Տէրտէրին Տունը, զի հոն* հանդերձ ընտանեօք *ամրացած է տեղւոյն հոգեւոր հովիւը, Խարբերդցի խռֆած քահանայ մը, որ ո՛չ ինք արկածեալներուն կուգայ երբեւիցէ խառնուիլ, և ո՛չ ալ կը ձգէ որ անոնք իր դուռը ափ առնեն, և եթէ դուրսը պատահի որ անոնցմէ մէկը կամ մէկ քանին իր հոգածութեան դիմեն, դաժան ծերուկը՝ «Մի՛ մօտենաք ինծի» կը պոռայ անոնց երեսին, կռնակը կը դարձնէ ու կը հեռանայ… Այդ մարդը բզքտելու փափաքներ ունեցայ Մերսինի մէջ:*

Մեր ժամանումին յաջորդ առտուն իսկ կ'երթանք եկեղեցին՝ հացակարօտ աղէտեալները արձանագրելու համար, որպէս զի ըստ այնմ կատարուի նպաստի առօրեայ բաշխումը։

Գետնայարկ դպրոցին միակ սրահը — ի՛նչ սրահ, նկուղը — առժամապէս պարպել կուտանք հոն տախտապարած մարդկային եղկելի էակներէն, պատուհանները կը բանանք ներսի ապականած ու անշնչելի մըթնոլորտը փոխելու համար, փայտէ կեղտոտ սեղանի մը շուրջ, հիւանդկախ ու կասկածելի աթոռներու վրայ կը նստինք՝ Ալանեան Հայր սուրբ, Սարգիս Սուքին և ես, ու կը խնդրենք ապաստանեալներէն, որ բակը, դրան առջև սպասեն՝ իրարու ետևէ ներկայանալու և արձանագրուելէ վերջ անմիջապէս դուրս ելլելու, որպէս զի չի խեղդուինք հոտ՝ թշուառութեան թունաւոր արտաշնչումներուն հոծացումէն։ Բայց անոնք, մեր խնդրանքին անսալէ պահ մը ետքը, ցաւագին անհամբերութեամբ մը, սեմէն ներս կը խուժեն յամրաբար, անտեղիտալի, գրեթէ անգիտակից ձգողութեամբ մը, մեզի մերձենալու և մենէ խելայեղօրէն ակնկալուած բարիքին վայրկեա՛ն մը առաջ հասնելու, արժանանալու...

Ու պէտք կ'ըլլայ մեզի համակերպիլ անոնց անօթութեան հեւքը շնչելու, անոնց տաժանքի քրտինքին կայլակները մեր ճակտէն ալ թափելու։

Հիմայ մեր մօտն են, մեր շուրջը, մեր գլխուն վերեւ, հազիւ քայլ մը միջոց ձգելով իրենց ու մեր միջև։

Եւ ահա՛ կը սկսի Սովեալներուն Տողանցը մեր առջևէն։

Նախ էրիկ մարդիկը յառաջ կ'անցնին։ Ծնգատինե-

*բու մէջ, կիսամերկ, բոպիկ, այրած, կռտած դէմքերով, թափած կամ խռուացած մազ ու մօրուքով, քստմնելի ու աղեխարշ կերպարանքներ են, որոնց վրայ նայուածքդ կ'արիւնի: Ոմանք կաղ, խեղանդամ, ցուպերու կրթնած, ուրիշներ՝ հիւանդոտ, հեւալէն, հըռընդալէն, քաշկռտուելէն կուգան, կանգ կ'առնեն առջեւնիս, յարգալից, աղաչաւոր, դրեթէ երկրպագու կեցուածքով մը:*

*— Անունդ ի՞նչ է:*

*— Գէվօ:*

*— Մականո՞ւնդ:*

*Չի հասկնար:*

*— Ո՞ւր տեղացի ես:*

*— Պիթլիսցի:*

*— Ի՞նչենց Գէվօն ես դուն, ձեր տան անունը ի՞նչ է:*

*— Ամտուրենց Գէվօ:*

*— Քանի՞ տարեկան ես:*

*Որոշ չեն գիտեր տարիքնին:*

*— Ի՞նչ բան ունիս այս կողմերը:*

*— Րէնչպրութան եկած էի...*

*Եւ մինչ գրագիրը կ'արձանագրէ, Հայր-սուրբը ուրիշի մը կ'ուղղէ միեւնոյն հարցումները:*

*Զարմանքով կը հաստատեմ թէ աղէտեալները հայրենի հեռաւոր անկիւններէն են. շատ անգամ Մշեցի, Վանեցի, Տիգրանակերտցի, Սվազցի, Կեսարացի, Խարբերդի գիւղերէն մանաւանդ... Ու յանկարծ տարօրինակ ձեւ մը, տեսակ մը համադրական նկարագիր կ'առնէ աչքիս սովեալներու այս տողանցն յոգնատըխուր: Ինծի կուգայ թէ Հայաստանի հեռաւոր Հայուն տառապանքն է որ Կիլիկեան Արհաւիրքին մէջէն*

կ'անցնի, անոր հետ կը խառնուի, կը նոյնանայ, կ'եղբայրանայ, ցեղին ճակատագրի եղերական միութիւնը խոր՚րդապատկերելով։

Անգամ մը նախայարձակ կ'ըլլամ ու սեղանին մօտեցող աղէտեալի մը կը հարցնեմ.

— Դո՞ւն ուրտեղացի ես։

— Մշեցի, աղա՛։

— Ի՞նչու ելեր հոս եկեր ես քու երկրէդ։

Մարդը չեշտակի երեսս կը նայի ու կը պատասխանէ.

— Մեր երկիր վաստակ չի կայ, հաց չի կայ, եկեր եմ բէնչպրութան...

Ու տաժանքոտ հեւք մը առնելէ ետքը, կը ձայնէ.

— Մեռա՜նք, է, մեռա՜նք, է...

Բողոքախառն վշտի ահաւոր ու կողկողագին աղաղակ, որ այդ մարդուն ցամքած կուրծքէն կը փրթի, բայց որ Հայաստանի խուլ ու ցաւատանջ խորերէն կու գայ կարծես, և ըսել կ'ուզէ. «Ա՛լ մեռա՜նք, ա՛լ չե՛նք կրնար դիմանալ այս զուլումին, այս թշուառութեան, ա՛լ հերիք չէ՞... Մեռա՜նք, է»...

Հոս, Սովեալներու այդ առաջին տողանցութեան առջև է որ կ'անդրադառնամ նախ, թէ Ատանայի Աղէտին զոհերը Ատանացիները չեն միայն, թէ՝ ընդհակառակը՝ Ատանացիները նուազագոյն թուով ջարդուածներն են իրենց քաղաքին մէջ իսկ, և եթէ վերապրողներու ստուարագոյն զանգուածը կը ներկայացնեն անոնք, Կիլիկիոյ միւս կարևոր վայրերն ալ իրենց բազմաթիւ աղէտեալներն ունին Ատանայի վերապրողներուն մէջ։ Մանաւորապէս Հաճընցիները, որոնց կեանքի կորուստը ամենէն աւելի ու ահռելի եղաւ Ատանայի մէջ։



Միս Վօլլիի հաստատած հիւանդանոցը ու տեղի հիւանդները խնամուեցան Կարմիր Խաչի բժիշկներու կողմէ:
Այս հաստատութեան ալ դեղ եւ այլ պէտքերը Ա. Պատրիարքութեան կողմէ հոգացուած է:

*Կիլիկեցի սովեալներուն շարքէն ուշադրութիւնս կը գրաւեն սակայն մէկ քանի Զէյթունցիներ։ Իրենց սեփական սիրուն տարազին տակ, առոյգ ու ջլապինդ կորիճներ են։ Շատ չեն խօսիր. սխրադէմ, անձկոտ ու զառնացած երեւոյթ մը, բայց խրոխտ ու պիրկ կեցուածք մը ունին։ Ու կը խորհիմ. «Ասո՞նք ինչու հոս են եկեր, ի՞նչու վար են իջեր իրենց պայծառ բարձունքներէն. միթէ աւելի ապահով չէի՞ն իրենց ժայռերուն անմատչելի կատարին վրայ»... Կը հարցափորձեմ, ու կը հասկնամ որ այս դժբաղդները Երուսաղէմ ուխտի են գացեր, եւ վերադարձին՝ հազիւ ցամաք ոտք կոխած՝ Ատանայի Արհաւիրքը իրենց դէմ ցցուեր եւ դէպի իրենց լեռները ճամբան կարեր, խափաներ է իրենց առջեւ... Հիմա ծուղակին ինկած առիւծներու երեւոյթն ունին, համակերպած ու անմռունչ, բայց ամէն րոպէ անկնդէտ՝ եղքի մը, բացուածքի մը, ուրկէ պիտի կրնային դուրս նետուիլ ու խոյանալ դէպ ի այն անվկանդ գագաթները՝*

Ուր թխսեն դիք եւ արծուիք...

*Տողանցութիւնը կը շարունակուի ու հետզհետէ աւելի սրտաճմլիկ ու տաժանագին կը դառնայ։ Զի կարգը կիներուն ու մանուկներուն է հիմա...*

*Ու մենք կը սկսինք մեր արցունքն ու հեծկլտուքը զսպել՝ մինչդեռ հոս գացած ենք գործ տեսնելու համար...*

*Ահ, այդ կիներն ու անհնարին անգթութիւնն անոնց նախճիրին։ Պէտք էր տեսնէի զանոնք, հեզութեան ու զրկանքի՝ այդ գերագոյն վիճակին մէջ, որպէս զի ճանչցած ըլլայի Հայ Կինը, համբերութեան, տոկունութեան, համակերպութեան այդ անհաւատալի խառնուածքը, տուայտանքի այդ գերմարդկային կրողը,*

որուն առջեւ ծունկի գալ պիտի ուզէիր խանդաղատանքի ու երախտագիտութեան չես գիտեր ի՛նչ չփոթ այլ խառն զգացումով մը։

Որբեւայրիներ են անոնք ալ, ու կուգան իրարու ետեւէ, արձանագրուելու սովեալներու տոմարին մէջ՝ իրենց և զաւակներնուն օրուան չոր հացը ապահովելու համար։

Շատերուն ծիծէն երախայ մը կախուած է, կռնակէն՝ ուրիշ մը, և սրունքներուն փարած են մանուկներ։ Մինչև ութը անչափահաս պզտիկներ իրենց փէշերուն շուրջ ունեցող այրիացեալ մայրեր կան անոնց մէջ։

Ու դեռ ուրիշ կիներ են, կեանքի անսպառ աղբիւր այդ հրաշալի էակները, որոնք անօթի են ու կաթ կուտան, որոնք հատնիլ, պարտասիլ, ուժաթափիլ չեն գիտեր, և որոնք Հայ Ցեղը յաւերժացուցած են մահուան դարաւոր մղձաւանջներու մէջէն... Դեռ ուրիշ են կիներ, ու կը քալեն, կ'երթան, կուգան, իրենց ցաւը պատմելով, իրենց խաչը տանելով...

Այս կիներուն ի տես՝ միտքս կուգար Եղիա Տէմիրճիպաշեանի հանճարաստեղծ այն պատկերը, ուր յուսահատ մայր մը իր մեռնող զաւկին մահճին վերև կախուած փայտէ խաչը վար կ'առնէ, զայն ոտքին տակ կը փշրէ, ապա իր ամբողջ հասակովը վեր կը ցցուի, թեւերը անհունօրէն կը բանայ ու կ'աղաղակէ. «Ահաւասիկ ես՝ խաչ կենդանի»...

Վսեմ ու հոգեցունց աղաչ՝ զոր երբէք մարդկային շրթունք մը արտասանած ըլլայ, և զոր այս կիներէն իւրաքանչիւրը իր պրկուած բերնին մէջ կը լռէ կարծես...

Ե՞րբ խնդացուց ձեզի այս ցեղը, ե՞րբ երջանիկ

օր մը անտաք անոր երեսէն, ո՜վ իմ ցաւագին քոյրերս ... Ձեր բաժինն եղաւ մինչ ցեղին խաչը տանիլ...

Ու որբեւայրիներու տողանցը կը շարունակուի, անվերջ ու սգամթախիծ: Երիկմարդիկը՝ մեկուսի կեցած՝ անբացատրելի, երբեմն խոլար հայուածքներով կը նա-յին ու կ'ունկնդրեն մեր սեղանին առջեւ իրարու յա-ջորդող կիներուն, որոնք ամենքն ալ մէկ-երկու բառի մէջ ամբողջ եղերերգութիւն մը կ'ըսեն ու կ'անցնին.

— Երկուս սպաննեցին...

— Եղբայրս մորթեցին...

— Հայրս ջարդին մէջ սպաննուեցաւ...

— Մեծ զաւակս մեռցուցին...

Ու այս հատկտուր բառերն արտասանած ատեննին՝ արտասուքը կը վազէ անոնց ամենուն ու իւրաքան-չիւրին աչքերէն եւ հեծկլտանքը կը թօթուէ անոնց կուրծքն այդ վշտակոծ լանջքերը...

Պզտիկները, անգիտակ՝ իրենց շուրջ անցած-դար-ձածին, քնքշօրէն կը ժպտին, կը ճչեն, կ'աստառեն ու կը խաղան իրենց մայրերուն շորերին, աւելցնելով տեսարանին աղեկտուր տխրութիւնը, կամ ալ աւելի խռովիչ նօթ մը դնելով անոր մէջ:

Բայց կեցի՛ր, խեղճ ցաւագին սիրտս, արցունքդ կարէ՛, ու թող տո՛ւր, որ աչքերս տեսնեն սա խռո-վիչ պատկերը, որ ահա՛ կը պարզուի հոս, ապշեցուցիչ ու զգլխիչ անակնկալի մը պէս: Գեղանի մանկամար-դուհի մըն է որ սովեալներուն ամոյն թափօրին մէջէն՝ յանկարծ՝ յուսաւոր երեւոյթով մը կ'անջատուի, դուրս կուգայ ու իր պայծառ լաւթեանը մէջ կը ներկայանայ մեր զարմացած ու զմայլական տեսութեանը: Գեղեցիկ Հայուհին, մեր սեղանին առջեւ կեցած է հիմա, պատ-րաստ՝ ինքն ալ՝ հացի տոմսին մէջ արձանագրուելու:

Ցորենի խարտեաշութեամբ մազեր ունի, Ատանայի դաշտերուն ցորենինը: Շնորհալի վզին, գիրգ հոլանի դաստակներուն, բոպիկ ոտուըներուն ու կիսով մերկ սրունքներուն սպիտակ կաթնաթոյր մորթը՝ ներկանե-րու թուխ, այրած, մրկած դէմքերուն մէջէն աւելի սաստկօրէն ուշք կը գրաւէ: Մ'անչու լաթեր հագած է — եղկելի՛ն, ուրիշ բան չի գտնելով անշուշտ իր վրան ծածկելու — սեղմ շալվար մը, որ իր մարմնոյն շրջա-գիծերը կը շեշտէ և իրեն կուտայ չես գիտեր ի՛նչ երկդիմի հրապոյր մը, որ անհանգիստ կ'ընէ քեզ: Հազիւ 17-18 տարեկան կայ. իր գեղեցկութեանը և անոր իր շուրջ յարուցած խռովքին գերազանցապէս գիտակից՝ տարօրինա՛կ նայուածք մը ունի ան և առեղ-ծուածային ժպիտ մը՝ իր խաժ աչքերուն մէջ՝ որ կար-ծես ըսել կ'ուզէ երբ երեսդ կը նայի. «Գիտե՛մ որ գե-ղեցիկ եմ, գիտե՛մ որ սիրտդ կը վրդովեմ, բայց, տե՛ս, եկեր եմ հաց մուրալու»... Անունը կը գրենք, ու ան սովորական հարցումներուն պատասխանելէ ետ-քը, կ'անցնի կ'երթայ սովեալներու ամբոխին խառ-նուելու, անոր մէջ կորսուելու: Եւ ընդերկար կը մը-տածեմ իր ետեւէն. «Թշուառութիւնը գեղեցկութեան դամբանն է... Ի՞նչպէս եղեր է որ այդ աղջիկը ճողոպ-րեր է անոր աւերիչ, խաթարիչ ճանկերէն... Բայց ո՞վ կ'ըսէ թէ այդ ճանկերէն մինչև վերջը զերծ կը մնայ, և ո՞վ գիտէ թէ վաղը ո՛ւր կ'իյնայ, ի՛նչ գժնէ մագիլ-ներէ կը փերթուի այս ճակատագրական գեղեցկու-թիւնը»...

Սովեալներու տողանցը վերջանալու մօտ է Մեր-սինի եկեղեցւոյն շրջափակին մէջ: Վերջին ներկայա-ցողները կ'ըլլան մէկ-երկու Պոլսեցի կիներ, որոնք Ա-տանայի Աղէտքին մէջ իրենց էրիկը կամ եղբայրը

կորանցուցած են՝ իրենց բոլոր ունեցածին հետ։ Հիմա այս խեղճերը, բացի միացած, ճարահատ, կուգան իրենց բաժինը խնդրել ազգին հացէն։ Բայց իրենց չարժուձեւին, իրենց ամբողջ երեւոյթին մէջ այնպիսի տանջուող, գալարուող ամօթխածութիւն մը կայ, որ անօթութեան առջեւ միայն կրնար տեղի տուած ըլլալ ... Սովեալներու տողանցը կը վերջանայ հոս, ու մենք դուրս կ'ելլենք եկեղեցիին շրջափակէն՝ երթալ Ամերիկեան և Ֆրանսական հաստատութիւններուն մէջ անոր չարունակութեանը ներկայ ըլլալու։



# ԳԱՌՆՈՒԿՆԵՐՈՒ ԵՐԱՄԱԿԸ



Շաթըր Օթելի մեզի տրամադրած կեդրոնավայրին պատուհաններէն դուրսը կը դիտէինք, Մերսինի գլխաւոր փողոցին անցուդարձը։ Ատանայի իրիկուան կառախումբին ժամանումին պահն էր, և մենք անձկոտ անհամբերութեամբ մը կայարանին կողմը դարձած՝ կը սպասէինք, տեսնելու համար, թէ ո՛վ պիտի ելլէր անկէ, կամ ի՞նչ լուր պիտի գար մեզի աղէտեալ քաղաքէն։

Ճամբորդի բեռնաւոր լանճօներ կը փրթէին պողոտային վերի ծայրէն, ու խուճապական արագութեամբ մը կուգային կ'անցնէին մեր առջևէն, դէպի նաւամատոյցը կամ քաղաքին ներսերը շտապելով։ Մէկ քանի օտարականներ և մեծ մասամբ Ատանացի Յոյներ էին որոնք՝ աւերումի ու սարսափի վայրէն հեռանալու արտօնուած՝ իրենք զիրենք և իրենց ընտանիքները Մերսին կը նետէին, անկէ ալ ժամ առաջ ծովու ճամբաները բացուելու աճապարանքով մը։

Կառքերու դղրդիւնը դադրեր էր փողոցին սալարկներուն վրայ, և մենք՝ մեր հետաքրքրութեան յագուրդը գտած՝ ներս դարձեր էինք մեր տրամադրին հոգերուն չարքը քաշել շարունակելու, երբ մենէ մէկը, որ պատուհանի մը առջև նստած էր, յանկարծ

*վեր ցատկեց տեղէն ու դէպ ի դուրս ձեռքի տենդոտ շարժումով մը գոչեց.*

*— Մեր որբե՛րն են, տեսէ՛ք, կուգան կոր...*

*Ամենքս մէկ պատուհանները վազեցինք։ Ու պիտի չի մոռնամ երբեք տեսարանը, որ այն ատեն պարզուեցաւ մեր առջեւ։*

*Փողոցին անդին ծայրէն գառնուկներու երամակ մը փրթեր էր կուգար, փոթորիկի բռնուած գառնուկներու երամակ մը... Զոյգ զոյգ իրարու ձեռքէ բռնած, իրարմէ անջատուելով ու իրարու զարնուելով, փողոցին քարերուն, փոշիներուն, աղբակոյտերուն վրայ թապլտելէն, բոպիկ, գլխաբաց, կիսամերկ, որբերը կուգային վազն ի վազ, մեր առջեւէն կ'անցնէին ու դէպ ի եկեղեցիին շրջափակը կը շտապէին, կարծես մէկ բոպէ առաջ ապաստան մը գտնելու, հոն թխմուելու, ծածկուելու, պաշտպանուելու համար իրենց սպառնացող, իրենց ետեւէն վազող անտեսանելի այլ իրական վտանգի մը դէմ...*

*Ո՞վ պիտի կրնար ձեռք վերցնել այս լացնող անմեղութեան, այս զգետնող տկարութեան ու այս խեղդեցնող թշուառութեան դէմ, ո՞վ... Բայց այս որբուկները՝ մորթելէ յոգնած դահիճներու կարմիր եաթաղաններուն տակէն անցեր, արիւնազանգ սպանդներու շառաւթենէն ա[illegible]ցեր, մնացեր էին...*

*Փողոցին մէջ անոնց տողանցը ամէն շարժում կը դադրեցնէր պահ մը։ Մարդիկ կարծես իրենց անարգութեան ամօթը կը զգային՝ մարդկային գազանութեան այդ զոհերուն ի տես... Սրճարաններու առջեւ բազմած խումբերը գոնէ վայրկեան մը կը լռէին ու իրենց նայուածքը կը վրիպեցնէին քրիստոնեաներու նայուածքէն, չի խոստովանելու համար պարտութիւնը*

իրենց խղճին, եթէ խղճմտանք մնացած էր իրենց ներսիդին... Հայերը փողոցին մէջ կանգ առած կամ իրենց խանութներուն սեմին վրայ կանգնած՝ իրենց պոռթկացող հեծկլտուքը կը զսպէին և իրենց ճմլուած սրտերէն ցայտող արցունքները կը սրբէին անմռունչ... Ու մենք մեր պատուհաններէն կը դիտէինք այս տեսարանը արտասուքէ պղտորած մեր աչքերուն ամբողջ խելայեղ սեւեռումովը...

Բայց անշարժ յամենալու ատեն չէր։ Պէտք էր տեղաւորել, պատսպարել այդ որբերը, անոնց իրիկուան հացը ճարել։

Դուրս կ'ելլենք ու կը փութանք եկեղեցի։

Հոն, արդէն խճողուած շրջափակին մէջ, որբերը խառնուեր, ոտքի վրայ մնացեր են։ Ծուարած ու ողորմուկ նայուածքներով իրենց չորսդին կը նային իրենց բաղդին որոշումը, իրենց ընելիքն ու ըլլալիքը ուրիշներէն սպասելու պէս։ Ապաստանեալներէն ոմանք իրենց սեփական ցաւը մոռցած՝ այս եղկելի պզտիկներուն շուրջը կը փութկոտին խանդաղատագին կարեկցութեամբ մը։

Բայց ժամանակը կ'անցնի, և դեռ որբերը ոտքի վրայ կը սպասեն։ Անոնց անուններուն արձանագրութիւնը վերջացած է արդէն, և կը մնայ տեղ մը գտնել զանոնք պատսպարելու համար։ Վարանելու, տնտնալու չի գար։ Կ'որոշենք բանալ եկեղեցին ու մանկապարտէզը, որոնք մինչև այն ատեն փակ մնացեր էին աղէտեալներուն առջև։ Եկեղեցիին գետինը ծածկող փսիաթը կը վերցնենք ու կը տանինք զայն տարածել մանկապարտէզի գետնայարկ տախտակամածին վրայ։

Յետոյ գառնուկներու երամակը հոն կ'առաջնորդենք; կը տեղաւորենք։

*Մութը կոխեր է արդէն։*

*Երկար փնտռտուքներէ ետքը կարելի կ'ըլլայ թիթեղէ զազիր լամբար մը ճարել զոր մեծ դժուարութեամբ վառելով պատին կը զամենք, և որուն ծխոտ ու աղօտ լոյսին տակ որբերն աւելի տրտմաշուք տեսարան մը կը պարզեն հիմա։*

*Գետինը նստեր են՝ կռնակնին պատերուն տուած կամ իրարու քովիկը կծկտած։*

*Մէյ մէկ պատառ հաց ու պանիր կը բաշխուի իրենց։ Ու կը սկսին ուտել... Ա՜հ, որբերուն այդ ընթրիքը, և անոր անհուն, անպատմելի տխրութիւնը...*

*Բայց կերուած հացը կարծես նոր կենդանութիւն մը կուտայ որբերուն, ոմանք կը սկսին խնդալ ու իրարու հետ կատակել։ Ուրիշներ, աւելի փոքրիկները, կուլան, իրենց մայրիկները կը կանչեն, քանզի դեռ չեն հաշտուած անոնց իսպառ մեկնումի, անվերադարձ անհետացումի գաղափարին հետ, դեռ չեն վարժուած անոնց անէացման անյեղլի իրողութեանը, դեռ չեն ըմբռնած անոնց մահը...*

*Որբերուն մէջէն հատ մը, սակայն, ուշադրութիւնս ամենէն աւելի գրաւած է։ Դեղձան մազերով, կապոյտ ուլունքէ աչուկներով պաշտելի աղջնակ մըն է, հազիւ հինգ տարեկան, որ իրեն կրկին տարիքն ունեցող իր քրոջը քով նստած է պատի մը տակ։ Ան չի շարժիր, չի խնդար, չի լար, չուտեր ալ։ Հացի ու պանիրի իր բաժինը ծունգին վրայ կը մնայ, և ինք մատին ծայրովն իսկ չի դպչիր անոր։ Կը մօտենամ իրեն, անունը կը հարցնեմ, քոյրը կը պատասխանէ.*

*— Բերուզ է անունը։*

*Կը ծռիմ, ձեռքերուս մէջ կ'առնեմ իր անուշիկ գլուխը, և կը հարցնեմ իրեն.*

— Ինչո՞ւ հացդ չես ուտեր կոր, եավրո՛ւմ...

Չի պատասխաներ։ Կը կրկնեմ, կը թախանձեմ այնքան՝ որ ա՛լ տեղի կուտայ պզտիկ Բերուզը, և իր թռչունի գոշտրիկ ճռուողուն ձայնովը իբր ամբողջ պատասխան կ'ըսէ ինծի.

— Նէնէ՛մ եօք...

«Սիրտ չունի» եղեր, ըսել կ'ուզէ, որովհետև տաճկերէն կը խօսին գրեթէ ամէնքն ալ։ Բայց իր ձայնին մէջ այնպիսի շեշտ մը կայ, իր նայուածքն ու իր ամբողջ դէմքը անանկ ազնուական արտայայտութիւն մը ունին, որ անբացատրելի ախտածանքի զգացումով մը կը քաշուիմ զինքը աւելի անհանգիստ ընելէ...

Աղէտեալներէն մէկ երկու կիներէ կը խնդրենք որ մայրութիւն ընեն այդ որբերուն՝ գիշերն ի բուն հսկելով անոնց վրայ։ Սիրայօժար կ'ընդունին։

Եւ ուշ ատեն, մութին, կը ձգենք կ'երթանք, որբերն ալ մութին մէջ ձգելով, մութին մէջ ու գետնին վրայ...։



# ԾՈՎՈՒՆ ՎՐԱՅԷՆ

Իրիկուան, դեռ մութը չի կոխած, շոգենաւը ճամբայ ելլել կը պատրաստուի Մերսինի առջեւէն դէպի Կիպրոս:

Հազիւ քառորդ ժամ մը մնացած է մեկնումին: Կամրջակին վրայ ջղագրգիռ կը դեգերիմ, մէյ մը յառելով Մերսինին, որ դիմացս, անդին, իր տխեղծ ու տափակ կոյտը կը պարզէ, մէյ մը ծռելով վար՝ կիւվէրթէն նայելու՝ ուր փախստական Հայեր իրենց փութինները դիզեր ու անոնց շուրջը ու վրան դիզուեր են:

Յանկարծ դէմս կ՚ելլէ Մերսինի Հայ «երեւելի»ներէն պատուական Բ** աղան, որ եկած է մէկ քանի ծանօթ ընտանիքներ ճամբու դնելու: Զիս տեսնելուն քով կուգայ ու ձեռքէս բռնելով՝

— Շատ չի մնար հեռուն, շուտով դառնաս հա՛, կ՚ըսէ հայրական շեշտով մը:

Գիտէր թէ ո՛ւր և ինչու կ՚երթամ: Կ՚ապահովցնեմ զինքը, որ չեմ ուշանար վերադառնալու:

Կամրջակին վրայէն վար կը նայինք միասին գաղթողներու յոգնաթոյր ու եռուզեռ խռնումին:

— Կ՚երթա՛ն, կ՚երթան կոր, կ՚ըսէ բարի ծերուկը, ի՛նչ ընեն խեղճերը, խարապ եղան լմնցան, ու անոնց մէջ քանինե՛ր կան որ դեռ երէկ հարուստ էին, հարիւրաւորներ կը բանեցնէին իրենց արտերուն ու ագարակներուն մէջ... Հիմա հոգինին առեր կ՚երթան... Իրերու

ներկայ ընթացքով՝ մենք ալ քիչ ատենէն, առանց ետեւէն պիտի՝ մեր օճա՛խը, մեր բանը-գործը, մալը-միւլքը ձգենք երթանք... Հիմակուհիմա բրածնիս կեղծաւորութիւն է ամէն օր Թուրքերուն առջեւ, երեսնիս կը ժպտի՝ մինչ սրտերնէս արուն կ'երթայ... Բայց ինչպէս ալ ձգենք հեռանանք այս երկրէն, ուր այնքան խորունկ արմատներ նետեր ենք... «Ա՜հ, սա դիմացի լեռը նայէ՛, հոն, անդին, Լամբրոնին բարձունքը, կը տեսնե՞ս կոր սա բերդաձեւ հնութիւնը, որ կանգներ է գլուխն ամպերուն տուած... Կիլիկեան հարստութեան Օշին իշխանին բերդն է անիկա... Դո՛ւն գէշ ատենի եկար, ու չի կրցանք քեզի տանիլ պտտցնել այդ հայկական հնութեան մէջ, ուր պիտի տեսնէիր փառաւոր հնացորդները ամրոց-պալատի մը, եկեղեցիի մը՝ անվերթար մնացած Հայերէն արձանագրութիւններով... Ու այս երկրին մէջ, այս հողին վրայ, ուր Հայութիւնը դարերէ ի վեր ամբեր ու անջինջ հետքեր ձգեր է, այսօր՝ Ազատութեան, Սահմանադրութեան, Օսմանցիութեան րէժիմին տակ՝ կը ջարդեն մեզի ու կը ստիպեն մեզ մեր աւերներն ու գերեզմաններն ետեւնիս ձգելով փախչելու, տարագրուելու...

Մեկնումի ազդանշանը կը տրուի։ Ծերունի Կիլիկեցին ողջերթ կը մաղթէ ինծի, ու կը փութայ վար իջնել շարժական սանդուխներէն, նաւակ մը նետուելու եւ Աղէտքի սեմը, Մերսին, վերադառնալու համար։

Շոգենաւը ճամբայ կ'ելլէ։ Եւ քանի՛ կը հեռանանք ցամաքէն՝ այնքան կեանքը կը խտանայ մեզ տանող ծփուն կայանին վրայ։ Ծովու հորիզոնները մերձեցող նաւը ամբողջ աշխարհք մը կը դառնայ իր կրած ուղեւորներուն համար. Եւ ինչ դառնակոծ աշխարհ՝ մեր այս շոգենաւը։ Արիւնի ու արհաւիրքի մէջէն փախչող-

ներու կապուտանն է որ անոր վրայ ինկած տախտակա-ռած՝ նոր ու հիւրընկալ ափերու ապաւէնը կ'երազէ հիմա, հայրենի իր քանդուած կեանքին մորմոքը վաղորդայնին անստուգութեան անդունդին հետ ներսիդին...

Մութը բոլորովին իջած է ու շոգենաւուն իր բոլոր լոյսերը վառած: Կիւլերէն կ'իջնեմ փախստականներու մտերմութեանը մէջ ապրելու համար պահ մը: Իրենց անկողինները գետնին վրայ փռեր, ծալլապատիկ նստեր են, և կը պատրաստուին ընթրել տոպրակի մախաղ-ներուն մէջէն հանուած չոր հացովն ու ապուխտովը:

Քովերնին տեղ կ'ընեն ինծի, ու կը հրաւիրեն զիս բաժնելու իրենց խեղճուկ ճաշը: Փափկութեամբ կը խուսափիմ հրաւէրէն. Ինչպէս սիրտ ընել նոյնիսկ պա-տառ մը մասնակցելու այդ աղէտեալներու հացին: Բայց կը յամենամ իրենց մօտ, մտիկ ընելու իրենց ու-ղեխառն պատմութիւններուն: Ստամպոլի երբեմնի ամե-նէն բարեկեցիկ Հայերէն կան այս գաղթողներուն մէջ, մարդիկ՝ որ փարթամութեան ու վայելքի մէջէն յան-կարծ այս ողբալի ու գետնատած վիճակին մատնուեր են իրենց կիներովն ու զաւակներովը: Մէկ քանի Հայ-ուհիներ կը տեսնեմ որոնք Ֆրանսերէն կը խօսին նա-ւուն պաշտօնեաներուն հետ, խնամուած կրթութեան մը շնորհքը կ'արտայայտեն ու տեսակ մը վայելչութիւն՝ որ տարօրինակօրէն սրտաշարժ, գրեթէ եղերական բան մը կու տայ իրենց թշուառ վիճակին...

Յանկարծ մութին մէջէն մէկը կը մօտենայ մեր խումբին: Պա՛պ մը կանգ կ'առնէ ու մտիկ կ'ընէ եղած ողբական խօսքերուն: Ապա խուպոտ ձայն մը հանելով իր հինաւուրց տառապողի ու մաքառողի կուրծքին մի-ջէն, սա ամեհի ու սարսռեցնող յորդորականը կ'ուղղէ հոս՝ քով քովի իրենց տէրտը լացող Հայերուն.

— Ինծի նայեցէ՛ք, ի՞նչ յուսահատ, յուսահատ կը վայէք, ի՞նչ տատկեր, լմնցեր էք, հոգի չի կա՞յ ձեր ներսիդին... Ինծի Սասունցի Արմենակ կ'ըսեն. ես 20 տարի այս կողմերը պտտեր եմ... Դուք ի՞նչ ըսաք, որ ատանկ շուտով կը փախչիք կ'երթաք, ի՞նչ պիտի ըլլայիք մեր տեղը, որ զուլումն ու հալածանքը մեր գլխէն պակաս չեղան երբէք մեր գժբաղդ Տարօնին մէջ... Բայց մենք ձեզի պէս վազ չանցանք մեր հայրենի հողէն, անոր կպած, անկէ անբաժան՝ մեռանք ամէն օր ու ապրեցանք մեր տառապանքին մէջ... Հերիք վայնասուն կարդաք, քիչ մը սի՛րտ ունեցէք, ո՞ւր ձգեր էք ձեր երկիրը՝ կը փախիք... Դուք նորէն պիտի ետ դառնաք ձեր կործանուած օճախներուն վրայ, մենք ամէնքս պիտի դառնանք նորէն տիրութիւն ընելու մեր հայրենիքին, նորէն շինելու, շէնցնելու մեր Կիլիկիան ... Ասոր համար մեզի զէնք, մեզի թօփ ու թֆէնկ պէտք չէր, մեզի դրամ, կրթութիւն, խելք պէտք էր... Մենք նորէն ետ պիտի դառնանք մեր կորուստը դարմանելու... Հերի՛ք ողբ ու կոծ ու շիվան հանէք, քիչ մը քաջութիւն ունեցէ՛ք, դուք Հայ չէ՞ք...

Անծանօթը իր խօսքերը կը վերջացնէ ու կը հեռանայ։ Գիշերին մէջ իր դաժան ու վրէժխնդիր ձայնը և իր խօսքերուն բիրտ ու անողոք ճշմարտութիւնը ամենուս վրայ կը թողու խորունկ ու խռովալից տպաւորութիւն մը, զոր մեր լռութիւնը միայն կրնայ արտայայտել, երկար, յաւերժացող լռութիւն մը, որուն անձկութեանը չեմ կրնար տոկալ, և որուն մէջ կը թողում գաղթականները, ու մութին ընկճող ճնշումին զգալով ուսերուս վրայ, ներս կ'երթամ, լուսաւոր սրահներէն ներս հոգեկան թեթեւացում մը փնտռելու։

Սալոնին մէջ խօսքի կը բռնուիմ Ժեզուիթ վար-

դայեակի մը հետ, որ Սասնայէն կու գայ, և որ կը պատմէ ինծի կատարուած խժդժութեանց շուրջ ականատեսի իր դիտածները։ Մեր խօսակցութիւնը կ'երկարաձգուի, ու չեմ գիտեր ի՛նչպէս Սասնայի տարագրեալ Առաջնորդին՝ Մուշեղ Սրբազանին վրայ կանգ կ'առնէ պահ մը։

Ժէզուիթը նա՛և իր հիացումը կը յայտնէ երիտասարդ եկեղեցականին մասնաւորական բարձր արժանիքներուն, մանաւանդ կրօնքին ու ազգային գործունէութեանը վրայ։ Յետոյ տակաւ ձայնը մեղմացնելով և նայուածքին մէջ չես գիտեր ի՛նչ երկնաբաղձիկ արտայայտութիւն մը դնելով՝ կը սորդեցնէ.

— Բայց սիրելի՛ պարոն, հակառակ իր այս բոլոր ձիրքերուն՝ Սասունցոց մարդ մը չէ անիկա...

Երեսը կը նայիմ պէչ պէչ։ Ժէզուիթը զարմանքս կը կռահէ, և իմ առջևս ամէնէն համոզիչ փաստը դնելու փութկոտութեամբ մը՝

— Երևակայեցէ՛ք, սիրելի՛ պարոն, կը յարէ կաթոլիկութեան անպատում չեշտով մը, երևակայեցէ՛ք որ անիկա չի հաւատար «Ս. Ճաշակին աստուածայնութեանը», «Անարատ Յղութեան» և այսպիսի ուրիշ ճշմարտութիւններու...

Չեմ կրնար դէմքիս վրայ ժպիտ մը զսպել, ոչ անբարիշա, հապա զգալի ժպիտ մը, ու Ժէզուիթը՝ իմ լռութենէս քաջալերուած՝ քիչ մը աւելի կը մօտենայ ինծի ու թախանձագին երևոյթով մը երեսս ի վեր կ'ըսէ.

— Տեսնե՛նք, սիրելի՛ պարոն, դուք շատ ազդեցիկ մէկը կ'երևաք ձեր համայնքին մէջ, եւ շատ քիչ անգամ հանդիպած եմ ձեզի պէս լուսամիտ գաղափարներու և խորունկ զատողութեան տէր Հայերու...

Տունչս բռնած կը սպասեմ թէ ի՛նչ պիտի ըսէ, թէ ո՛ւր պիտի յանգին ինծի չռայլած իր այս խօսքիմաններները, և ա՛ա՛ ժէզուիթը կը բարբառի.

— Չէ՞ք կարծեր, սիրելի՛ պարոն, որ ձեզի, Հայերուդ համար մեծ բարիք մը պիտի ըլլար վերադառնալ Հռոմայ ուղղափառ եկեղեցւոյն գիրկը...:

Բիչ մը յանկարծակիի եկած՝ կը պատասխանեմ.

— Հռոմայ եկեղեցին պիտի փրկէ՞ր մեզի, հայր իմ, Ս. Պապը պիտի պաշտպանէ՞ր մեզի, պիտի արգիլէ՞ր մեր դահիճները մեզ ջարդելէ...

Ժէզուիթը կը վարանի պահ մը, և յետոյ մե՛ծ, աւետաւո՛ր, հրաշալի՛ խոստում մը տալու պէս կը գոչէ.

— Բայց, սիրելի՛ պարոն, այն ատեն աւելի չափաւորական, աւելի խոհական կղեր մը պիտի ունենայիք, և ասիկա փրկութի՛ւնը պիտի ըլլար ձեր դժբաղդ ազգին համար...

Կը լռեմ ու կը խորհիմ. «Հէ՛գ խաչուած ազգս, ի՛նչ անշահախնդիր ու սրբաշնորհ փրկիչներ ունիս տէ չե՛ս գիտեր...»:

Յանկարծ դուրսէն երգի մը ձայնը կը հասնի ականջիս: Տարօնցիներու սրտաճմլիկ ողբերգն է՝ կիւվէրդէէն երգուած.

Մի՛ լար, մայրի՛կ, զիս կը տանին,
Հրացանով զիս կը սպաննին,
Քո սուրբ կրօնքէն զիս կը հանին,
Մայրի՛կ, մայրի՛կ, անո՛ւշ մայրիկ...:

Դուրս կ'ելլեմ, ու մութին մէջ արցունք մը կը սրբեմ աչքերէս...

*
* *

Յաջորդ առտուն Լաւնագա կը հասնինք: Հոն քանի մը ժամ հեռագրատունը և՝ գաղթականներուն



**Մ. ԹՐԻՓԱՆԻ**

Որու գործարանին մէջ ապաստանող հազարաւոր Հայերը կրցան իր շնորհիւ կեանքերնին ազատել։

հետ՝ ծովեզերեայ սրճարաններն անցնելէ ետքը՝ մեկնումի ազդարար առաջին սուլիչը լսելուս՝ նաւակ մը կը նետուիմ և կը վերադառնամ շոգենաւը, որ դէպ ի Կիպրոս կատարած իր այս շեղումէն վերջ՝ ցռուկը կրկին կ'ուղղէ Կիլիկեան ափերուն, զորս պիտի եզերէ մինչեւ Պէյրութ։

Ու ինծի համար, որ տասը տարիներէ ի վեր տարագրութեան հեւասպառ հանգրուաններուն մէջ Կիլիկեան այդ երազուած ափերուն հմայքն ապրած եմ, տարօրինապէս վրդովիչ ու ոգեկոչող բան մը ունի անոնց երկայնքը այս յամրընթաց թափառայածումս։

Ծովուն վրայէն, նաւուն կամրջակէն ամբողջ էութեանս յարատեւ սեւեռումն ու հոգւոյն կարկառումն է ասիկա դէպ ի Կիլիկեան ցամաքը, որ իմ մէջս կ'արթնցնէ նորագոյն աղէտներու սարսուռին հետ խռովագին վերյուշումը երէկուան դիւցազնական պատրանքներու... Կը յիշեմ, կը յիշեմ այս ծովուն վրայէն, սա չղթայաշար լեռներուն տողանցութեանը առջեւ, վերջին տասնը հինգ տարիներու մեր ազատագրական մաքառումին մէկ քանի աղեխարշ դրուագները... Այս ջուրերուն վրայէն չէ՞ր որ Սըւէտիոյ Փէտայիները Կիպրոսէն իրենց յաղթական էջքն ըրին՝ փետուրի պէս նաւակի մը մէջ՝ սա դիմացի եզերքները՝ ծովամոյն խեղդուելու գնով... Անոնց մէջ էր Մշեցի Մխօ-Շահէնը, որ վերջէն Զօք-Մարզուանի ինքնապաշտպանութեան հերոսը պիտի ըլլար և օր մըն ալ Հայ ձեռքերէ պիտի խողխողուէր Փօթիի սեւ թակարդին մէջ... Այս ջուրերուն վրայէն չէ՞ր որ այնքան սիրուած ու կարիճ ընկերներ՝ տարագրութեան մեր դաւադիր խումբերէն առաքուած՝ նաւավարի ծպտումներով իրենց անցքը կը կատարէին դէպի Կիլիկիա, դէպի գաղափարի ու հա-

ւանքի ընդերկրեայ ոգորումները, դէպի զրկանքի, տաժանքի ու հիասթափութեան ճամբաները...

Ա՜հ, այս արիւնի ու արհաւիրքի օրերո՞ւն պիտի վիճակուած ըլլար ինծի տեսնել ձեզ, ու ձեր խրոխտ ու վեհաշուք սեպութիւնները նայուածքներովս համբուրել, ո՜վ Կիլիկեան ափեր, երբ ձեր վրայ կը ծանրանան սուգի ու աղէտքի մռայլ ամպերը...

Իսկէնտէրունի առջեւ շոգենաւը քանի մը ժամուան համար կը խարսխէ։ Ցամաք կ'ելլեմ Ջօք-Մարզուանի տագնապալի կացութեան վրայ տեղեկութիւն փնտռելու։ Նաւահանգիստէն կ'արգիլեն զիս քաղաք մտնել։ Փոլիսներու պառաքի մը մէջ ժամու մը չափ սպասելէ ետքը, անյուսալիս ետ կ'ուղեմ և յուսակտուր շոգենաւ կը վերադառնամ։ Բայց միջոցը կը գտնեմ լուր ղրկելու տեղւոյն քահանային, որ ազնիւ փութկոտութիւնը կ'ունենայ շոգենաւ գալու։

Պատուական եկեղեցական մըն է Իսկէնտէրունի Տ. Գրիգոր քահանան, մին այն չարքաշ տէրտէրներէն, որոնք վերջին աղէտքին մէջ անձնուիրութեան անմոռանալի ապացոյցներ տուին իրենց հօտին։ Իրեն հետ նաւուն վրայ ունեցած խօսակցութենէս բան մը միայն միտքս մնացած է, բան մը, որ ինքնին կը համադրէր վայրկեանին բոլոր եղերական հանգամանքները։ Եւ ատիկա իմ առաջին խօսքիս իր առաջին պատասխանն էր։

— Ի՞նչ խապար, Տէ՛ր հայր...

— Այս առտու հայ մը սպաններ են հո՛ս, Բայասի ճամբուն վրայ... Մարդ ղրկեցի որ հասկնամ թէ ի՛նչ է...

Ճամբուն վրայ սպաննուած Հա՛յ մը... Ա՛հ, ո՜վ պիտի պատմէ մոռցուած կամ բնա՛ւ չի լսուած մահերը այն Հայերուն, որո՛նք Թուրքիոյ ճամբաներուն ամայութեան

մէջ սպաննուած են, կըսպաննուին ու դեռ դուցէ պիտի սպաննուին ...Միթէ կրնա՞յ խօսքն ըլլալ՝ զանգուածային կոտորածներու աշխարհին մէջ՝ այդ առանձին ու մեկուսի սպանդներուն...

Իսկէնտէրունի անգլիական փոխ-հիւպատոսին տղան Պ. Ժօզէֆ Քաթօնին ալ շոգենաւ կուգայ, և առիթ կ'ունենամ իրեն հետ տեսակցելու: Տէօրթ-Եօլի կացութեան, անոր սպառնացող վտանգին վրայ Հայութեան սիրտը սեղմող երկիւղները կը յայտնեմ իրեն: Եւ կ'ապշիմ երբ սա պաղարիւն պատասխանը կուտայ ինծի.

— Անհոգ եղէ՛ք, շատ դժուարութիւն պիտի քաշեն Տէօրթ-Եօլը ջարդելու համար, ils auraiènt du fil à retordre jusqu'à ce qu'ils massacrent Deort-Yol...

— Ի՞նչու, ի՞նչպէս, կը հարցնեմ սահմռկած:

Ու պարոն Քաթօնի կը բացատրէ ինծի, թէ Տէօրթ-Եօլի Հայերուն տուները բարձր ու ամուր պատերով շըրջապատուած են եղեր, և այդ պատերուն ետին կրնան եղեր պաշտպանուիլ անոնք...

Երեսը կը նայիմ լուռ, ու կը մտածեմ. «Երանելի՜ օտարական, եթէ այդ պատերն են միայն որ Զօք-Մարզուանի Հայերուն կեանքը պիտի փրկեն, վա՜յ է եկեր անոնց գլխուն»...

Շոգենաւը կը շարունակէ իր ճամբան:

Քանի մը ժամ ալ, և ահա՛ Կիլիկեան ափերը կը վերջանան... Լեռները յանկարծ կը սկսին ծաղկիլ կարծես, լեռները կը ծաղկին, ճերմակ ու խիտ բնակութիւններ կը ծաղկին, անոնց տակ կը ծածկուին հիացական աչքերուդ առջեւ...

Լիբանա՜նն է... Երջանի՜կ երկիր... Ա՛յնքան մօտ ըլլալ տառապանքի ու խժդժութեան աշխարհին, անոր մէջն իսկ գտնուիլ, և ա՛յնքան պայծառ ու բարեբաստիկ կերպարանք մը պարզել, երանութեան ովասիսի մը հանգոյն...

*Ո՞ւր կը պարտիս այդ անզուգական բաղդաւորութիւնդ, ո՛վ Լիբանան, դո՛ւն որուն սահմաններէն տասը վայրկեան անդին մարդիկ կը ջարդուին, կը խոշտանգուին տակաւին, և ուր կուգան ապաստանիլ Կոտորածի մղձաւանջէն հալածական եղկելիներ... Ո՞ւր կը պարտիս, ո՛վ բիւրեղ երանելի երկիր, քու այդ հրաշալի ճակատագիրդ... Քանի մը հազար Մարոնիթներուդ* ջարդուած *ըլլա՛լուն... Ատեն մը կար, բայց, երբ մարդիկ* ջարդուելով *ալ կը փրկուէին.., Ատեն մը կար, երբ Արեւմուտքի մէջ քրիստոնէական համերաշխութեան արեւը մայր մտած չէր, երբ «քաղաքակիրթ» աշխարհի զօրաւորներուն մէջ գոնէ հատ մը կը գտնուէր, որ իր սուրը յօժար ըլլար իսպառ դնելու բռնաբարուող, չարչարուող, խաչուող քրիստոնէութեան փրկագործումին... Եւ այդ միակ ասպետական ազգին ողնուսկրն ալ Սպանիի մէջ կոտրեցին, ու պոռնկութեան գօտին մէջքը կապած Եւրոպան՝ իր յայրատ ու վաւաշոտ միսերուն մէջէն հեշտասարսուռ գալարումներով՝ հանդիսատես եղաւ մարդկային սեռին դէմ գործուած այդ ահաւոր ոճիրին...*

*Պէյրութ ալ կ'արգիլուիմ չոգենաւէն դուրս ելլել: Եւ անկէ անդին մինչեւ Եգիպտոս, ճամբան ա՛լ իմաստ չունի ինծի համար:*

*Մերսինէն չոգենաւը մտած գաղթականներէն մեծ մասը Կիպրոս ելած են: Բայց դեռ կը մնան մէկ քանիներ, որոնք Աղեքսանդրիա կ'երթան, իրենց կիներովն ու զաւկներովը: Անհնելի է անոնց վիճակը* կիւվէրթէին *վրայ: Նաւաստիները խոլամ են Խտիվականին չոգենաւերուն վրայ: Եւ մոլեռանդ ու վայրագ տեսակէն լազեր, որոնք Թրքական սահմաններէն դուրս ալ չեն կրնար զսպել իրենց կատաղի ատելութիւնը ողորմելի Հայ գաղթականներուն դէմ՝ զորս նախատելու, ծաղրելու,*

նեղելու առիթ ու պատրուակ կը փնտռեն օրն ի բուն։ Քանի՜ անգամ լսեցի այդ մարդակերպ գազանները, որոնք հեգնական քրքիջներով կ'ըսէին իրարու.

—Հայերը Ատանան գրաւեր են... Հայերը պէյլիք հաստատեր են... քա՛հ քա՛հ քա՛հ....

Բայց անգամ մը համբերութիւնս կը հատնի, երբ անոնցմէ մէկը գաղթականներէն Հայ կնկան մը ուղղելով խօսքը՝ կը պոռար.

—Տահա պի՞թմէտինիզ մի խընզըրլա՛ր, դեռ չի հատա՞ք, չի լմնցա՞ք, խոզե՛ր...

Նաւապետին կ'երթամ կը բողոքեմ, բայց անիկայ անտարբերութեամբ մտիկ կ'ընէ ինծի, և իբր ամբողջ պատասխան կ'ըսէ.

—Ի՞նչ ընենք, պարոն, գլուխ չենք կրնար ելլել ատոնց հետ. Ընկերութիւնն ալ կ'ուզէ ատոնք գործածել. պէտք է աչք գոցենք...։

Ու ծովուն վրայ մինչեւ Եգիպտոս զիս հալածեց ու դեռ մինչեւ հիմա միտքս կուգայ յաճախ տաճիկ նաւաստիին քստմնելի խօսքը՝ կնկան երեսին նետուած.

—Դեռ չի հատա՞ք, խոզե՛ր....։



# Դէպի Ատանա

Տասնը հինգ օրուան մէջ երկրորդ անգամ ըլլալով Մերսին կը հասնիմ: Դուրս ելլելու համար դժուարութիւն չեն հաներ առջեւս, զի անցագիրս Մերսինէն վիզէ եղած է: Անմիջապէս Շամլըր օթեւանը կը փութամ: Հոն են Ասլանեան հայր սուրբը և Սարգիս Սուլինը: Վեհապետեան սրբազանը Ատանա գացած և հոն մնացած է: Պատուիրակութիւնը պատռուած է հիմա Ատանայի և Մերսինի միջեւ երթեւեկելու: Կ'որոշենք յաջորդ առտուն իսկ Ատանա մեկնիլ:

Մերսինի կայարանը զինուորական հսկողութեան տակ առնուած է, ինչպէս պիտի տեսնենք քիչ վերջը Տարսոնինն ու Ատանայինն ալ: Ոչ-պաշտօնական հանգամանքով ճամբորդներու համար թրէնին մուտքը արգիլուած է: Մենք կը թոյլատրուինք իբրեւ Հայոց Պատրիարքարանի նպաստաբաշխ պատուիրակութեան անդամ:

Շոգեկառքը հազիւ ճամբայ ելած է, և ահա՛ ոստիկան մը կը մտնէ մեր գրաւած բաժնեակին մէջ, և կը սկսի մէկիկ մէկիկ մեզ հարցաքննել, մե՛ր իւրաքանչիւրին անունն ու ինքնութիւնն արձանագրել: Այս գործողութիւնը՝ ժամ մը վերջը՝ միեւնոյն թրէնին մէջ կրկին անգամ կը կատարուի Տարսոնէն անդին՝ նոր ոստիկանի մը կողմէ:

Ողորմելիօրէն աղքատ կահաւորում մը ունի այս

*թրէնին առաջին կարգն իսկ։ Դէմ դիմաց երկու լայն նստարաններ, որոնք արեւելեան* սէտիրի *կը նմանին, և* սէտիր*ին հանգստաւէտ առաւելութենէն ալ զուրկ են։*

*Խօսակցելու շատ տրամադրութիւն չունինք, ու Սուրէնին հետ երկու ծխնելոյզներու պէս անընդհատ կը ծխենք։*

*Դիմացի նստարանին վրայ փաթթոցաւոր մը ծալապատիկ բազմեր է։ Ուրախ ու ինքնագոհ կերպարանք մը ունի, ու մօրուքին մէջէն* մանի *մը կը մռլայ։ Իր այդ անպատկառ դիրքն ու անփոյթ զուարթութիւնը կը վիրաւորեն մեր վրդովուած զգացումները և սրտի սեղմում մը կուտան մեզի։ Յանկարծ խօսքը Ադանեան հայր սուրբին ուղղելով կը յայտնէ թէ Մերսինի* միւֆթին *է ինքը, ու կը պարծենայ իր շնորհիւ Մերսինի մէջ ջարդ եղած չըլլալուն համար, ու կը գանգատի որ իրեն այցելած չեն Պատրիարքարանի կրօնաւոր պատուիրակները։ Հայր սուրբը խօսքն անուշ տեղը կը կապէ ու կը խոստանայ Մերսին վերադարձին այդ քաղաքավարական պարտքը կատարել։*

*Ճամբուն ամբողջ ընթացքին պատուհանէ մը դուրս կը նայիմ, անսահման մշակուած դաշտին ոսկեփայլ բուսականութեամբ աչքերս ողողելու։ Կարծես բնութիւնը՝ հրաշալի յորդառատութեամբ մը՝ իր բոլոր բարիքները թափեր է հոս, մարդոց երջանկութեանը համար։ Բայց մարդիկը չեն գտած կեանքին հնարաւոր գոհացումը բնապարգեւ բարիքներուն այս լիութենէն, և իրենց նմաններուն արիւնին մէջ փնտռած են յագուրդն իրենց վայրագ ախորժակներուն...*

*Եւ քանի՛ Ատանային կը մերձենանք, այնքան կը չեշտուի մէջս այս դաժան ու խուլ տպաւորութիւնը։*

*Դաշտին միապաղաղ ու ղիւթական համայնապատ-*

կերին մէջէն հետզհետէ դուրս կը ցցուին սեւ կմախքները քանդուած ու այրեցաւեր ագարակատուններու, որոնց շուրջը ամէն կեանքի շունչ դադրած, ամէն գոյութենէ ամայացած է... Օ՛հ, զահանդիչ արհաւիրքը այդ մենաւոր ու լքուած աւերներուն, խելայեղօրէն երկինքն ի վեր կարկառուած թեւերու նմանող այդ սեփ-սեւ պատերուն... Կը զգաս, կ'ապրիս, անոնց ի տես, Աւերումի Ուրականը, որ անցեր է ասկէ, ու իր այսահար վազքին մէջ քարուքանդ ըրեր է ամէն բան...

Ատանայի կայարանին հազիւ մօտեցած ենք, երբ դուրսէն համայնածախ գարշահոտութիւն մը թրէնին մէջ կը կսխէ և մեր կոկորդներէն կը բռնէ։ Կայարանէն քիչ մը անդին վրաններու տակ խռնուած հազարաւոր աղէտեալներու բացաստանէն է որ կուգայ այդ մահաշունչ գարշահոտը։

Կը հասնինք վերջապէս աղէտքի կեդրոնավայրը։ Թրէնէն իջնելնուս՝ ինքզինքնիս կը գտնենք աղետեալներուն ամբոխին մէջ որ կայարանին շուրջը հաւաքուած է՝ նախախնամական անծանօթներու սպասելու անձկայրեաց երեւոյթով մը։

Ոստիկանական ձեւակերպութիւններէ անցնելէ վերջ, կառք մը կը մտնենք ու կը քշենք ուղղակի Առաջնորդարան,— կանգուն մնացած միակ Հայ հանրային հաստատութիւնը։

Ա՛հ, մեր այդ առաջին մուտքը եղեռնի ու եղերերգութեան կեդրոնական թատերաբեմին մէջ... Կայարանէն քիչ մը անդին դէմերնիս կ'ելլէ դժխեմ կերպարանքը արիւնոտուշտ խուժանին, որ ճամբաներուն վրայէն, սրճարաններուն առջեւէն, իր դժոխային ծամածութիւններովը, ըզքստող նայուածքներովը կ'ողջունէ մեզի, հպարտ՝ իր կատարած քանդումի գործին, անոր

վրայ սոնքալու, յաղթանակելու գուպարակոչ կեցուածք-ներով... Անոնցմէ մէկը, փաթթոցաւոր ծերուկ մը, մեզ նշմարելուն՝ կանգ կ'առնէ, ու աջ դաստակը ձախ ձեռ-քին վրայ մեզի երկարելով՝ կը գոչէ.

— Այտրնը՞զ մը պէյլիի։ առի՞ք մի պէյութիւնը...

Կառքը աւերակուտակ փողոցներու մէջ կը մխրճուի հիմա։ Շուկան է, ամբողջապէս կործանուած, ուր տեղ տեղ մէկ քանի անվթար կրպակներու առաջամասին վրայ, իրենց ճամեճեանններուն առջեւ ինքնագոհօրէն փռուած են խոլամ խանութպաններ, փլատակներու մէջ թառած գիշակերի տպաւորութիւն մը թողլով անցորդին վրայ... Ու շուկային երկայնքը՝ գետնին վրայ ինկած կը տեսնենք երկաթէ ճեղքուած դրամարկղներ, որոնք աղիքները դուրս թափած որգանողներու չարաչուք պատկերը կ'արթնցնեն մեր այլեկոծ մտածումին մէջ...

Հայկական թաղերու բրգացած աւերակոյտները կը ճեղքենք, ու չունչերնիս Առաջնորդարանին բակը կ'առ-նենք...։



# ՎԵՐԱՊՐՈՂՆԵՐԸ



*Համատարած փլատակներուն վրայ կանգուն ու անվթար, վերապրողներու միակ ապաւէնն է Ատանայի Առաջնորդարանը, Մայր Եկեղեցիին հետ... Ու մարդկային տառապանքի ալիքները կուգան իրարու ետեւէ, անընդհատ, կոծելու՝ քանդումի փոթորիկին մէջէն անվրկանթ մնացած այդ վերջին պատուարը... Աղետեալներու յորդնախուռն ամբոխը լեցուեր է անոր առջեւ, անոր շուրջ, անոր բակին մէջ։ Ու դեռ մէկ կողմէն կուգան, կը խուժեն անոր վրայ, անոր դռներն ու սանդուխները ափ կ՚առնեն, այր, կին, տղայ, կուգան իրենց ցաւին դարման մը, իրենց* տէրտ*ին* տէրման *մը փնտռելու, գոնէ իրենց դառնակսկիծ ողբն ու չիւանը թափելու հոն, ուր ամէն դռնէ մերժուած, ամէն կողմէ հալածուած, ամէն հորիզոնէ սպառնացուած այդ եղկելիները զիրենք լսելու, իրենց վրայ գութով նայելու, իրենց կարեկցելու տրամադիր հոգիներ կը հաւատան գտնել...*

*Ներսը, Առաջնորդարանի ընդունելութեան սրահը կամ Մուշեղ Սրբազանի ննջասենեակն են Պատրիարքարանի պատուիրակները, որոնք՝ արշալոյսէն մինչեւ իրիկնամուտին՝ խօսք հասկցունելու են մարդկային թշուառութեան այս անծայր ու յարաճուն մակընթացութեան, որ կուգայ փշրուիլ իրենց կայանին սեմերուն վրայ...*

Ու չեմ գիտեր, չեմ կրնար երեւակայել տիեզերքի մէջ անկիւն մը, կէտ մը, թատերաբեմ մը, որուն վրայ աւելի եղերական տեսարան մը թաւալած ըլլայ երբէք... Հոս օրն ի բուն, հեւ ի հեւ կուգան, կը տախտապարին արիւնի ու արհաւիրքի մէջէն փախչողները, բոլոր անոնք որոնք իրենց սիրելիներուն մորթուիլը տեսան եւ անոնց արիւնաշաղախ դիակներէն խելայեղօրէն բաժնուեցան... Ահուելի ու դժնդակ տեսարան մըն է զոր հոս կը պարզէ մանաւանդ այրիներուն ու աղջիկներուն տողանցը: Շատերը հեռուներէն եկած են, գաւառին բոլոր գիւղերէն ու գիւղաքաղաքներէն, ուր Եղեռնը իրենց ընտանեկան բոյներուն վրայ ինկած, զանոնք քայքայած ու անոնցմէ դուրս քշած է զիրենք, անոնց մոխիրներուն տակ թաղելէ վերջ իրենց ամուսինները, հայրերն ու եղբայրները:

Ու քստմնելի ու խենդեցնող են պատմութիւնները, որ այդ հերարձակ ու կիսամերկ գեղջկուհիներուն շրթ-ներէն կը թափին հիմա արցունքի հեղեղներուն հետ որ կը վազեն՝ Ոճրին տեսքէն պաղած ու լալէն արիւնոտած անոնց աչքերէն... Կրանիթէ սիրտ պէտք է կարենալու համար մտիկ ընել իրենց... Բայց աւելի սրտաճմլիկ է լռութիւնը լլկուած աղջիկներուն, որոնք շըր-թունքնին չեն բանար երբէք, գլուխնին վեր չեն առներ ու երեսդ նայիր, ու աչքերնին վայրահակ, ամօթահար ու ցաւագին կեցուածքով մը՝ կը թողուն որ ուրիշները, տարեց կամ մանկամարդ այրիները պատմեն իրենց դժխեմ պարագան...

Ու անգամ մըն ալ, ու աւելի ուժգնօրէն, զգացի հոս անսահման դառնութիւնն ու անհնարին դաժանու-թիւնը Հայ կնոջ բաժնին, ի տես այդ բոլոր հէգերուն, որոնց առջեւ ամբողջ արիւննիդ պիտի արտասուէիք... Հազիւ տասներկու տարեկան Հայ աղջիկ մը տեսայ զոր առեր տարեր Ճիքեան ըրեր էին խալամի մը հետ, եւ զոր

*վերջէն իր առեւանգիչին ճիրաններէն քաշեր էր կառավարութիւնը եւ Հայոց Առաջնորդարանին յանձներ՝ շատ մը ուրիշ աւելի հասուն աղջիկներու հետ։*

*Հայ կնոջ այս չարաշուք կացութիւնը մօտէն ճանչնալէ վերջ՝ որքան մեծ եղաւ զարմանախառն հիացումս անոր տոկունութեան ու բարոյական գերմարդկային ուժին հանդէպ, այնքան ալ ներողամտութեամբ ու արդարացումով մղուեցայ դիտել անոր մոլորանքի ու այլասերման հազուադէպ սայթաքումները։*

*Աղջիկ մը բերին առաջնորդարան, 15-16 տարեկան առոյգ ու դեղադէմ աղջիկ մը, զոր իր* Ցիբեահի *առագաստէն բռնի բաժներ էին, եւ որ չէր ուզեր վերադառնալ իր մայրենի եկեղեցիին եւ իր խոշտանգուած ցեղին գիրկը։ Վալին սորվեր էր ապտակել զինքը եւ ոստիկաններու ձեռքով զրկեր էր եկեղեցին։ Բայց աղջիկը կը բողոքէր ու կը յամառէր անձնատուր չըլլալ։*

*—Հայը ի՞նչ է որ, Հայը քանի՞ փարա կ'արժէ որ ես Հայ ուզեմ մնալ... Ո՛չ, ես իսլա՛մ եմ, ձգեցէ՛ք ինծի որ ամուսինիս քով երթամ...*

*Յորդորներն ու քարոզները օգուտ չէին ըներ, չէին ազդեր խեղճ աղջկան վրայ, որ հալածուած անասունի իր բնազդով ուրիշ բան տեսած չէր իր ցեղին մէջ, բայց միայն զրկանքի, միայն տառապելու, չարչարուելու, ջարդուելու կարողութիւնը, եւ որ չէր գտած իրեններուն մօտ կին-էակին փնտռած ամենէն կենսական, ամէնէն անհրաժեշտ, ամենէն սիրելի բանը,—ուժը, առնական ուժը ամէն ձեւի եւ արտայայտութեան տակ Ուժը...*

*Բայց Սուինը կրցաւ դարձի ու զղջումի բերել այդ արգահատելի չուառուհին։ Ըսաւ անոր՝ թէ իսլամանալով ան չէր դադրեր* կեավուր *մը ըլլալէ, եւ երբ վաղը իր էրիկը արձակէր,* պօշամիշ *ընէր զինքը՝ ո՛չ ոք իր երեսը պիտի նայէր, ո՛չ մէկ իսլամ պիտի ուզէր զինք կնութեան առնել իբրեւ նախկին* կեավուր *մը եւ ինք փողոցը*

պիտի մնար, ամենէն լքուած ու նախատուած...

Ահ, պէտք էր տեսնել այդ վայրկեանին աղջկան փրցուցած լացը, անոր կծանքն ու կողկողանքը, անոր թախանձագին պաղատանքը՝ որպէս զի ներեն իրեն և ընդունին զինքը... Այնուհետեւ ա՛լ ձայն մը, վանկ մը չի հանեց ան իր գոցուած շրթներէն, ու երկրաւմայրերու անվերջանալի թափօրին խառնուած՝ գլխի կոր ու լռին՝ հետեւեցաւ իր ճակատագրին...

* * *

Գիշերը, Առաջնորդարանին դուռը, մութին մէջ, նստեր ենք, Ասլանեան հայր սուրբին հետ։ Տասնի չափ կիներ գետինը, փսիաթի մը վրայ կծկտած են մեր առջև։ Եւ հայր սուրբը կը խօսի անոնց հետ, անոնց մխիթարական բաներ մը կ'ըսէ, անոնց սիրտ կուտայ։ Յանկարծ ինծի կը դառնայ ու ականջս ի վար կը փսփսայ.

—Այս կիները՝ փախուստի պահուն՝ Սեհունը նետած են իրենց երախաները...

Սարսուռ մը կ'անցնի ամբողջ մարմինէս։

—Ի՞նչպէս, հայր սո՛ւրբ, ի՞նչպէս կրնան ըրած ըլլալ այդ բանը...

Հայր սուրբը կիներէն մէկուն, ամենէն խօսունին, պատմել կուտայ զարհուրելի պատահարը։

—Գիւղէն գիշերանց ճամբայ ինկանք, ցորենի դաշտերուն մէջէն սողալով ինքզինքնիս Ատանա ձգելու համար... Մարդասպանները ամէն կողմ գործի վրայ էին... Եթէ մեր ձայնը լսէին՝ պիտի հասնէին մեզ բռնելու... Ի՞նչպէս խօսք հասկցնես երախաներուն... Կուլային, կը ճուային մեր գրկերուն մէջ... Անկարելի եղաւ ուրիշ կերպ ընել... Կա՛մ պէտք էր անոնք զոհէինք, և կամ ամէնքս մէկ մեռնէինք... Սեհունին քովէն կ'երթայինք... Ու սարսափի ու խուճապի այդ

վայրկեանին մեր երախաները գետը նետեցինք, ու հո-գինիս ազատեցինք...

Սահմռկած, քարացած՝ կը լսեմ այս սոսկալի պատ-մութիւնը, զոր կինը — քանի՞երորդ անգամ ըլլալով արդեօք — կ՚ընէ համակերպումի տարօրինակ, կարծես մեքենական շեշտով մը... Պահ մը կ՚ընդվզիմ և կը գոչեմ.

—Ինչո՞ւ կ՚ըսես կի՛ն, ի՞նչ կ՚ըսես, հի՛չ մայր՝ մը ատանկ հրէշութիւն կ՚ընէ՞, կրնա՞յ ընել...

Կինը ինծի կը դարձնէ իր դէմքը՝ լապտերի մը աղօտ լոյսին մէջէն և պարզօրէն կը պատասխանէ.

—Մի՛ ըսեր... կեանքը անո՛ւշ է այն րոպէին... Չե՛ս գիտեր... Մի՛ ըսեր...

* * *

Ու աղջիկներէն, այրիացեալ կիներէն զատ, պա-ռաւները կան դեռ, իրենց զաւկըներուն ու թոռներուն խողխողումին ականատես եղած պառաւները, որո՛նք՝ ճերմակ մազերնին փետտելով՝ ցամքած կուրծքերնին ծեծելով ու չորցած գլուխնին պատէ պատ զարնելով կը քաշկռտուին աղէտեալներու եռուզեռ ամբոխին մէջ, ուր ոչ ոք ուշադրութիւն կ՚ընծայէ իրենց, ո՛չ ոք ա-կանջ կուտայ իրենց անհասկընալի վայնասունին...

Մտքէս չի կրնար ելլել երբէք անոնցմէ մէկուն հոգեւարքը, որուն վերջին վայրկեաններուն ականատես ըլլալ պատահեցաւ ինծի։— Մուշեղ Սրբազանի ննջա-սենեակն եմ, երբ յանկարծ ներս կը մտնէ Տիկին Ժէնիա, դարմանատար Պոլսատաք մարմնին ընկերացող կտրիճ Կովկասահայուհին, որ վրդովուած ու հեւասպառ ձայ-նով մը կ՚ըսէ ինծի.

—Եկէք, շո՛ւտ եկէք, ձեզ մի բան պէտք է ցոյց տամ, մի ահռելի բան...

Կը չտապեմ հետեւիլ իրեն։ Տիկինը կ'առաջնորդէ զիս եկեղեցիին ետին, երկու պատի միջեւ աղբիւսի պէս տեղ մը։ Հոս, որմին քով, գետինը փռուած է մազաթափ գլխով և կմախացած մարմնով ութսունամեայի պառաւ մը, որուն մերկութիւնը կը պարտուի զազրելի աղտոտութեամբ քուրջերու տակ... Տեսա՞ծ էք Փարիզ՝ Լիւքսէմպուրի մուզէյոնին մէջ Ռոտէնի «Մեր Կինը» կոչուած արձանը. ճի՛շդ առ է, բայց զարշելի անարգութեան մը մէջ գետին ինկած, որդերով ու ճանճերով ծածկուած, որոնք արդէն սկսեր են ուտել դեռ վերջին շունչը չի փչած այդ carcasseը... Ինծի տրուած չէ մարդկային էակը—և ո՛ն ալ ծեր կնոջ ձեւին տակ—աւելի քստմնեցուցիչ անկումի մը մէջ գետնամած տեսնել... Տիկին Ժէնիա դիւցազնութիւնը կ'ունենայ ծռելու այդ որդերով վխտացող մարմինին վրայ, անոր թեւերէն բռնելու, անոր գլուխը ծունկին վրայ դնելու... Քիչ մը ջուր բերել կու տայ և կը լեցնէ անոր կապուտցած շրթունքներէն վար որոնք հազիւ տարտամօրէն կը շարժին... Պառաւին թեւերը կը սկսի շփել... Բայց արդէն սառեր են անոնք, ու պահ մը վերջը պառաւին հոգեվարքի յետին հեւքն ալ կը դադրի... Մեռա՛ծ է... Եւ գիտէ՞ք ի՛նչպէս և ի՛նչու մեռած... Վերջէն կը հասկնամ, թէ պառաւը՝ իրեններուն կորուստին ցաւը ներսիդին՝ աղէտեալներու անկարեկիր ամբոխին մէջ քաշկռտուելէ ուժասպառ՝ երեք օր առաջ՝ եկեր ինկեր է հոս, այդ պատին տակ... Հարիւրաւորներ իր մօտէն, իր առջեւէն անցեր են, բայց ո՛չ ոք նայուածք մը նետեր է իր վրայ, ո՛չ ոք հարցուցեր է իրեն՝ թէ արդեօք բանի մը պէտք ունի՞, ո՛չ ոք մտածեր է պատառ մը հաց ու գաւաթ մը ջուր երկնցնել իրեն... Եւ ո՞վ գիտէ, գուցէ ինքն ալ չէ ու-

*զեր ո՛չ ոքի խօսք ուղղել, ո՛չ ոքէ բան մը խնդրել... Գուցէ ուզեր է հոտ, այդպէս, անօթութենէ մեռնիլ, լմննալ, ազատիլ իր ցաւերէն, ազատիլ կեանքին ու տարիքին բեռէն, ազատիլ այս զուլումի ու անօրէնութեան աշխարհին տեսքէն...*

*— Ծօ՛, տնաւերնե՛ր, անզգամնե՛ր — չի կրցայ բռնել ինքզինքս պոռալէ՝ դիակին քովէն դարձած ատենս՝ դիմացս ելլողներուն — այսքան հարիւրաւոր հոգի էք հոս, և մէկերնիդ չըսի՞ք թէ սա պառաւը ի՞նչ ինկեր մնացեր է գետինը, պատին տակ, մէկերնիդ չի մտածեցի՞ք ձեռք երկնցնել, գոնէ հարցում մը ընել այդ ողորմելիին...*

*Ահ, ամբոխներու անգթութիւնը, երբեմն, նոյնիսկ երբ կը տառապին անոնք...:*





Ատանայի Պէրճան գաղթակայանին կողմէ հացի բաշխում։

# Աւերներուն Վրայ



Դուրսը, աւերեալ քաղաքին մոխիրներուն ու փլատակներուն մէջ կ'երթանք թափառիլ:

Զարչափուքի ու Եէնի-Մահալլէի բացատանները վրաններու տակ բնակող հազարաւոր վերապրողներու մէջէն ենք հիմա... Մեզ կը պաշարեն, մեր վրան կ'իյնան հոծ ու զանգուածային խուժումով մը, որուն տակ պիտի խեղդուէինք, ընկճուէինք՝ հոս տիրող դժոխային դարչահատութենէն արդէն չնչարդելուած... Ամէնքն ալ աղերս մը ունին Պատուիրակութեան ընելիք և իւրաքանչիւրն իր ցաւը կը նկարէ առաջ քշել անոր մօտ... Բայց ո՞ր մէկուն հասնիլ, ո՞ր մէկուն բուժել, ո՞ր մէկուն խօսք հասկցնել... Ամէ՛նքն ալ արգահատանքի արժանի, ամէ՛նքն ալ օգնութեան ու պաշտպանութեան կարօտ...

Վեհապետեան Սրբազան՝ հայրական սաստով մը՝ ետ կը մղէ ամբոխը, որ ա՛լ սկսած է ճնշող, ջախջախիչ դառնալ իր խելայեղ դիմումին մէջ մեր չորսդին... Վերապրողները քիչ մը կ'ընկրկին, միջոց տալով մեզի շարժելու մեր քայլերն ու թեւերը... Եւ մինչ Սրբազանը կը քաջալերէ զիրենք իր արտասանիչող խօսքերովն ու աջակցութեան խոստումներովը՝ խմնայուածքս կանգ կ'առնէ ՝աղեխարշ երեւոյթով դէմքի մը վրայ... Կայ մըն է, ցուպը ձեռքին, գլուխը վեր բռնած, որ իր ա-

*զազուն մարմնոյն բովանդակ կորովովը պրկուած, ծառացած, Սրբազանին ետին կեցեր՝ անոր խօսքերուն մտիկ կ'ընէ սարսռագին ուշադրութեամբ մը... Ու այդ կոյրին տեսքը զիս կը խռովէ, ու կը խորասուզէ տարօրինակ խորհուրդներու մէջ... Ո՞վ է այդ մարդը, ի՞նչպէս վերապրեր է, ո՞ւր փախչեր է իր աչքերուն գիշերին մէջէն՝ վրիպելու համար Աղէտին հարուածներէն... Արդեօք տեսա՞ծ է ան երբէք, և եթէ տեսած է երբեմն Սասնան, ո՞րքան բաղդաւոր ըլլալու է հիմա, որ կը խնայուի իրեն իր հայրենի երկիրն աւեր աւերակ տեսնել... Բայց մինչ իր ցուպը մոխիրներուն ու փլատակներուն անհաւար զգայնութիւնը չի՞ տար իրեն, մինչ իրեններուն ողբն ու վայնասունը լսելով այնքան չի՞ տանջուիր իր մթամած էութիւնը, որքան պիտի տառապէր եթէ կարող ըլլար տեսնել իր չուրջը թափուած արիւնն ու իր գլխին վրայէն սաւառնող արհաւիրքը... Ու կոյրը կ'երթայ հիմա աւերակներուն մէջէն, աղէտեալներու ամբոխը կ'արմնկէ, անոր չուրջ, անոր մէջ, ամէն քայլի կանգ կ'առնէ, ու ականջները անկած բոլոր ձայներուն՝ մտիկ կ'ընէ իրեններուն տառապանքին... Ու կ'երթայ նորէն, կ'երթայ անվերջ ու աննպատակ թափառայածութեամբ մը՝ իր աչքերուն ու հոգւոյն գիշերին մէջէն... Ա՜հ, Աստուա՜ծ, ի՜նչ ճակատագիր, ի՜նչ տեսիլ, ի՜նչ յաճախանք՝ Սասնայի աւերներուն վրայ դեգերող այդ կոյրը...:*

*
* *

*Մէկ քանի վրաններու տակ կը մտնենք... Հողին վրայ պառկած հիւանդ մանկիկներ, որոնց չուրջ կը հսկեն իրենց ցաւագին մայրերը... Արեւուն կիզիչ տաքութիւնը փուռի մթնոլորտ մը շինած է հոն... Ահռելի է վիճակը այդ վրաններուն տակ պառկող հիւանդնե-*

յուն… Բիչերը պիտի ազատին, հակառակ իրենց հասած բժշկական խնամքներուն… Այդ վրաններէն դուրս ելլելնուս՝ բան մը ուշադրութիւնս կը գրաւէ անոնց չուրջ… Փոքրիկ հողակոյտեր կը տեսնեմ, փոքրիկ հարիւրաւոր հողակոյտեր, որոնք դեռ նոր կազմուած են…

— Ի՞նչ է աս, կը հարցնեմ աղէտեալներուն, ինչո՞ւ դիզած են հողի այս կոյտերը…

— Մեր պզտիկներն են, կը պատասխանեն անոնք, մեր մեռած պզտիկներն են, որ հոս, մեր վրաններուն քովիկը թաղեցինք, սարսափի օրերուն՝ չի համարձակելով հեռուն, գերեզմանոց տանիլ զանոնք… Մէկ ձեռքով անոնց աչուկները կը գոցէինք, մինչ միւսով քիչ մը հող կը փորէինք անոնց դիակները թաղելու համար…

Ու կը փախչիմ, կը հեռանամ այդ վրաններէն ու հողակոյտերէն, սրտիս փլատակը, արցունքս ու հեծկլտուքս տանելու համար մեկուսի անկիւն մը…։

*
* *

Ճամբան ծանօթներու կը հանդիպիմ։ Վրաս կուգան ինչպէս ազատարարի մը պիտի դիմէին։

— Դուն Պարթեւեանը չե՞ս…

— Է՛, ի՞նչ կայ որ…

— Ճար մը գտի՛ր, ամա՛ն, մեզ այս տեղէն հանելու…

— Իմ ձեռքէս ի՞նչ կուգայ որ, տղա՛ս… Համբերելու էք. այսքան տանջուողներու հետ՝ մարդ իր տանջանքը կը զգա՞յ…

— Բայց մենք ա՛լ այս երկիրը չը պիտի կենանք…

— Ո՞ւր պիտի երթաք…

— Նորէն Արտասահման, Ամերիկա՛…

Ի զո՜ւր Արդարութեան յոյսը կը շողացնեմ այդ եղ-

*կեղիններուն աչքին: Չէին ուզեր հաւատալ: Չէին ուզեր լսել իսկ՝ Թուրքէն գալիք արդարութեան ու փոխարինութեան խօսքը:*

*— Իրե՛նց ըլլայ, կ'ըսեն, իրե՛նց ըլլայ* հուրրիյէթ*նին ալ,* ատալէթ*նին ալ,* մուսաւաթ*նին ալ... Գլուխնի՛ն փարատի... Մենք պիտի երթա՛նք...*

*Ու բան մը չի կրնար եւ կեցնել զիրենք այն անտեղիտալի, անվերածելի որոշադրութենէն գաղթելու, հեռանալու իրենց հայրենի երկրէն, ուր ա՛յնքան աղւոր երազներով վերադարձած էին դեռ քանի մը ամիս առաջ իրենց երկար տարագրութենէն...:*

*
* *

*Գիշերը, Առաջնորդարանի սրահին նստարաններուն վրայ կը պառկիմ... Այդ սրահին պատուհաններէն՝ աւերակներուն վրայ թառած բուի մը պէս՝ ժամերով դուրս կը նայիմ, աչքերուս բովանդակ սեւեռումովը, աներեւակայելի եղածին ահաւոր իրականութիւնը դիտելու... Հոսկէ իմ առջեւս կը պարզուի, կը հորիզանուի աւերումի ամբողջ համայնապատկերը, որ լուսնին պայծառութեան տակ աւելի եղերական կերպարանք մը կ'առնէ քան ցորեկուան լոյսին... Փլատակներու անհատեսիլ տարածութեան վրայ յաղթական կը ցցուին Եաղ Ճամիի և Քէմէր-Ալթը ճամիի մինարէները, որոնց քով պարտուածի երեւոյթով կ'ուրուագծուին հսկայական կմախքները Հայ-Բողոքականաց Եկեղեցիին, Մուշեղեան Վարժարանին և մէկ քանի ուրիշ այրուած հաստատութիւններու...*

*Եւ գիշերին մէջ, մինակ, երկարօրէն, ցաւագինօրէն կը խորհիմ. «Այս աւերակոյտը քանի մը օր առաջ քաղաք մըն էր որ տենդոտ ու հրայրքոտ կեանքով մը*

կը խայտար... Ի՜նչ սէրեր, ի՜նչ կիրքեր, ի՜նչ գիրկընդխառնումներ, ի՜նչ երազներ ու երանութիւններ, որոնք իրենց թափը կ'առնէին գիշերուան այս պահերուն, քանդուեցան ու թաղուեցան գետնի հաւասարած երդիքներու այս մոխրակոյտին տակ»...

Ու նստարանին վրայ կ'իյնամ, քանի մը ժամ մրափելու...:



# ՀԱՅՐԱՊԵՏԸ

*Անոր վեհաշուք տեսիլը վրդովիչ յաճախանքի մը պէս կուգայ մտքիս առջեւ, ու կը յածի Կիլիկեան Արհաւիրքէն հոն տպաւորուած համայնապատկերին վերեւ։ Անոր եղերական սիլուէթը մթաստուերող վեղարը Կիլիկեան մեծ Սուգը կը գմբէթէ մտածումիս մէջ...*

*Անիկա տուաւ ինծի Կիլիկեան Սարսուռներուս ամենէն խռովիչը, ամենէն խորունկն ու ամենէն տեւականը, և չեմ կրնար այս ցաւագին էջերը վերջացնել, առանց իմ ջերմեռանդ, իմ խանդաղատագին հիացումս ընելու այն սքանչելի հոգիին վրայ՝ զոր տրուեցաւ ինծի գտնել Աւերեալ Կիլիկիոյ Հայրապետին, Տ. Սահակ Վեհ. Կաթողիկոսին մէջ... Ու այնքան աւելի պէտքը կը զգամ ներսիդիս յարգանքի այս ուշացած հատուածին, որքան բուռն է բաղձանքս արդարութիւն ընելու մէկու մը, զոր՝ հեռուէ հեռու լսուած զրոյցներու վրայ՝ բարոյապէս անիրաւած ըլլալու խղճահարութիւնն ալ ունիմ...*

*Առտուն, Սիսի մայրաւանքէն հասած հեռագիր մը կ'իմացնէ մեզի, թէ նոյն իրիկուն Ադանա պիտի ժամանէ Կիլիկիոյ Հայրապետը։*

*Կ'որոշենք ընդ առաջ երթալ իրեն, քաղաքէն դուրս, ամայի դաշտին մէջ...։*

*Իրիկնադէմին՝ Վեհապետեան Սրբազանը, Ադանեան հայրսուրբը, Ադանացի տէրտէր մը ու մեղաւոր՝ կառք մը կը նստինք ու կը շտապենք քաղաքէն դուրս, Սիհունի կամուրջը կ'անցնինք ու կը բացուինք դաշտին անսահմանութեանը մէջ, այգիները տանող ճամբուն վրայ...։*

Հետերնիս միականի ոստիկան-զինուոր մը ունինք միայն՝ մեր թանկագին կեանքերուն ապահովութեանը համար... Ու ամայի ճամբուն սկիզբէն իսկ մեր առջեւ կ'ելլեն հազարաւոր, տասնեակ հազարաւոր քիւրտ մշակներ, որոնք՝ մանգաղները ուսերնուն՝ հունձքի արտերէն կը վերադառնան... Ջարդողներու խումբն է ասիկա, որ իր բիւրաւոր դաշունող նայուածքները մեր վրան կը տնկէ, նայուածքներ՝ որոնց վայրագութեանը մէջ զարմանքի սա խորհուրդը կ'արտայայտուի կարծես. «Ինչպէս այս սեւազգեստները, այս կեավուրները յանդգներ են սանկ առեն մը քաղաքէն դուրս ելլել, երբ Հայ մշակներն անգամ կը նախընտրեն քաղաքին մէջ անօթի մեռնիլ՝ քան դուրսի վտանգները դիմագրաւել...»:

— Ո՞վ սրի՛, կ'ըսեմ Վեհապետեան Սրբազանին, ո՞վ սրի՛, եթէ սանկ մեզ մորթեն հոս...:

Սրբազանը երկինք կը վերցնէ իր աչքերը՝ Ամենակալին հետ ունեցած իր սովորական ընտանութեամբը ապահովցնելու համար զիս և... ինքզինքը, այդպիսի ահաւոր հաւանականութեան մը դէմ: Կը խնդա՛նք... Ըրածնիս տարօրինակ հերոսութիւն մը չէ՛ արդէն. գիտենք թէ Վեհափառը զինուորական եսքօրթով մը կուգայ Սիսէն, և թէ Ատանայի վալին մէկ քանի զինուորներով ալայ պէյին ղրկած է անոր ընդառաջ...:

Պաղ-Թէփէսի կոչուած տեղն հասած ենք հիմա, ուրկէ ժամուկէսուան հեռաւորութեամբ մը մեր ետին կը մնայ Ատանան... Հոն կառքէն կ'իջնենք ու կը սպասենք, աչքերնիս հորիզոնին սեւեռած, դէպի այն կողմը, ուրկէ կ'ակնկալենք Վեհափառին գալուստը...:

Ամրան հրաշալի իրիկուն մըն է: Մթնոլորտը անհուն ու անապակ պայծառութիւն մըն է համակ: Արեւը դանդաղօրէն կ'իջնայ Պուլկար Տաղի, Տորոսի մէկ օղակին, թիկունքն ի վար...:

*Մեր խումբէն բաւական հեռու կեցած՝ կը սպասէ* ալայ պէյին, *մէկ քանի զինուորներով, վայրին կողմէ Վեհափառին համար դրկուած մասնաւոր կառքի մը քով։ Չենք մօտենար իրեն, մինչեւ որ Վեհափառը հասնի․․․։*

*Եւ ահա, յանկարծ, հորիզոնին վրայ սեւ կէտ մը կը նշմարուի, որ երթալով կը խոշորնայ, կը զանգուածանայ․․․ Վեհափառն է, իր ձիաւոր հետեւորդներով ու զինուորական* եսքօրթով*․․․ Մէջտեղէն, ճերմակ ձիու մը վրայ նստած, վեղարը գլխուն, աչքերուն սեւ ակնոցներ դրած, խորհրդաւոր Ձեւի մը պէս, կուգայ, կը մօտենայ Ան իրիկուան խորքէն, հանդիսաւոր ու յաղթականաւոր յամրընթացութեամբ մը․․․*

*Ու պահ մը այնպէս կը թուի ինծի, որ ձիաւոր թափօրին առջեւէն դագաղ մը կը տարուի, Կիլիկիոյ Հայութեան Դագաղը․․․*

*Բայց կը սթափիմ, ու ընկերներուս հետ կը փութամ Վեհափառը դիմաւորելու։*

*Ան հասած է արդէն* ալայ պէյին *մօտ, ձիէն վար իջած, ու կառքին քով ոտքի կանգնած կը սպասէ, որ մենք մերձենանք իրեն․․․*

*Ու մտքէս չի կրնար ելլել երբէք հոգեցունց այն երեւոյթը, որուն առջեւ կը գտնեմ այդ պահուն ինքզինքս․․․*

*Վեհափառը, գետինը կանգուն, լռին, կը հեծկլտայ ու կ'արտասուէ․․․ Իմ կարգիս կը ծռիմ, աջը առնելու․․․* ***Երբէք այդքան ջերմեռանդութեամբ համբուրած չեմ*** *կրօնաւորի մը ձեռքը․․․*

Ալայ պէյին *կառք կը նստեցնէ Վեհափառը, անոր ձախ կողմը կը բազմի, ու կը հրաւիրէ Վեհապետեան* ***Սրբազանը****, որ իր դիմացը նստի․․․ Այս անքաղաքավար* թէքլիֆը *քաղաքավարութեամբ կը մերժուի Սրբազանին կողմէ, սա կարուկ պատասխանով․*

*— Շնորհակա՛լ եմ, մենք կառք ունինք․․․*

*Ու մենք ալ մեր կառքը կը մտնենք։*

*Եւ ահա՛ Կաթողիկոսական Թափօրը կը շարժի դէպի*

*քաղաք...։ Պուլկար-Տաղի կատարներուն վրայ պարզուող դիւթական վերջալոյսի մը առջեւէն կը վազենք հիմա դէպ ի Ատանա, դէպ ի մեր աւերներն ու աղէտեալները...։*

*Կամուրջը կ՚անցնինք ու յաղթական մուտք մը կը գործենք քաղաքին մէջ, ուրկէ պարտուածի պէս դուրս ելեր էինք քանի մը ժամ առաջ... Թուրք սրճարաններու առջեւ չնթռկած խուժանը, մեզ տեսնելուն, ոտքի կ՚ելլէ, բարեւի կը կենայ, ու խոնարհ ու ոչխարային նայուածքով մը հազիւ կը համարձակի նայիլ մեզի,* սուարի *զօրքերէ մեզ հետեւուած, պաշտպանուած, պատուուած տեսնելով...*

*Ու կը հասնինք Առաջնորդարան։ Աղէտեալներու ամբոխը խռնուեր է հոն, փողոցները, բակը, Վեհափառը տեսնելու, անոր շրթներէն մխիթարութեան խօսք մը լսելու, անոր աչքերէն կարեկցութեան նայուածք մը տեսնելու համար...*

*Ու Վեհափառը կը խօսի, ու երբե՛ք, երբե՛ք տըրուած չէ ինծի լսել հոգի մը, որ այնքան վեհօրէն բարբառի, այնքան աղեխարշօրէն արտայայտէ ցաւին սըրբութիւնը, աղէտքին զարհուրանքն ու մարդկային ու ճակատագրական անարդարութեան դէմ խղճմտանքին բողոքն ու ընդվզումը...։*

*Կիլիկեան Արհաւիրքին մէջէն իր առաջին անցքն ընելէ կուգայ Կիլիկիոյ Հայրապետը, որ իր ճամբուն երկայնքը՝ արցունքէ պղտորած աչքերովը տեսած, համրած է իր հօտէն քանիներո՜ւ դիակները, դաշտերուն մէջ ինկած, անգղերէ ու գայլերէ յօշոտուած...*

*Ու դեռ մտքիս մէջ մահուան ղօղանջի մը պէս կը կուտայ՝ Հայրապետին շրթներէն այդ գիշեր թռած սա գերագոյն աղաղակը.*

*— Եթէ իմ Աստուածս այս անօրէններուն, այս գազաններուն ալ Աստուածն է, ես Աստուծոյ չե՛մ հաւատար, ես Աստուծոյ չե՛մ հաւատար...։*

# ԿԻԼԻԿԵԱՆ ՄՂՁԱՒԱՆՋԸ

## Իր Կնոջ Ու Քոյրերուն Ի Խնդիր

*Անցեալ շաբթու Պոլսոյ մեր թերթերէն չեմ յիշեր ո՞ր մէկուն մէջ կարդացի, թէ վերջապէս Երզնկայէն Թղի հասեր էր և անկէ Բոլու կ՚ուղեւորէր Ատանայի աղէտեալներէն ականաւոր վաճառական Պզտիկեանը, որ իր կնոջ ու քոյրերը կը փնտռէ՝ զանոնք առեւանգող Թուրքերուն հետապնդելով...*

*Ասիկա սովորական այն լուրերէն չէր որոնց մեր թերթերուն «Ազգային»ի բաժնին մէջ ամէն օր կը հանդիպինք և զորս կը կարդանք կ՚անցնինք՝ տառապանքի ամենատխուր պատմութիւններու, արհաւիրքի ամենախժդուժ մանրամասնութիւններու վարժուած, անոնցմով ա՛լ յափրացած մարդու անայլայլութեամբ մը։*

*Այդ լուրին մէջ բան մը կար որ աղէտքի բոթէ՝ մը աւելի խոր կը ցնցէր էութիւնը, աւելի բուռն խռովք մը, աւելի անձկոտ մտալլկում մը կը պատճառէր քեզի։*

*Ես այդ լուրին յաճախանքը կ՚ապրիմ, անոր յարուցած քերթուածին փոթորիկը կը տանիմ գլխուս մէջ քանի մը օրէ ի վեր։*

Կարելի՞ է երեւակայել աւելի ահաւոր ու աւելի աղեխարշ տռամ մը՝ քան պարագան այդ մարդուն, որ Կիլիկիոյ արիւնոտ ճամբաներէն լեռ ու ձոր ինկած իր կինն ու քոյրերը կը փնտռէ...

Վիքթօր Հիւկօի տիտանեան հանճարէն միայն կըրցած է յղացուիլ անոր մօտ պատկեր մը, զոր կարդացած ըլլալ կը յիշեմ Իննսուն Երեքի հոգեցունց էջերուն մէջ: Որդեկորոյս մայր մըն է որ Վանտէի արհաւրամած առապարներուն մէջ կը յածի՝ ներարձակ ու խելայեղ, և որ գիշերներու մահասարսուռ լռութիւնը կը լեցնէ իր կողկողագին աղաղակով.

—Զաւակնե՛րս, զաւակնե՛րս, ո՞ւր էք, ո՞ւր էք, զաւակնե՛րս կ'ուզե՛մ...

Բայց աւելի եղերական, աւելի զարհուրական բան մը ունի Պզտիկեանին հետախուզումը իր կնոջ ու քոյրերուն:

Ալէտաքի յեղակարծ ուրականին մէջ զանոնք կորսնցուց... Վերջէն անոնց դիակները փնտռելու ելաւ... Բայց ի զո՜ւր Ատանայի մոխիրները խառնեց, աւերները քրքրեց, ի զո՜ւր դաշտերն ու անոնց բոլոր փոսերը խուզարկեց, ի զո՜ւր Սիհունին խորքերը մխրճուեցաւ ու անոր եզերքներուն երկայնքը թափառեցաւ քաշկրտուեցաւ:

Եղբօրը, զաւակներուն ու բոլոր իր միւս կորսուած սիրելիներուն դիակները մէկիկ մէկիկ գտաւ, բայց իր կնոջմէն ու քոյրերէն ո՛չ մէկ մնացորդ, ո՛չ մէկ ծուէն, ո՛չ մէկ ոսկորի կտոր...

Ուրեմն կ'ապրէին անոնք:—Եւ այս գաղափարը շատ աւելի մթագնեց, դառնացուց իր հոգին, քան չը պիտի ընէր թերեւս անոնց մահուան ստուգութիւնը:

Կ'ապրէի՜ն... Բայց ո՞ւր, ի՞նչ ձեռքերու մատնուած, ի՞նչ գրկերու մէջ... Որովհետեւ լսեր, հաստատեր էր ան, թէ

թուրքեր առեւանգեր, սպաներ էին իր կինն ու երկու քոյրերը... Հազար անգամ անոնց մահը պիտի չի տար իրեն այն անդոհը, այն գալարող, սիրտ ճանկռտող հեծեծուքը, ամբողջ այն տանջանքի գեհենը, զոր անոնց կեանքը կը դնէր, կը վառէր իր ներսիդին... Ահռելի իրականութեան առջեւ խորտակուած՝ պահ մը ափերուն մէջ առաւ գլուխը, աչքերը գոցեց եւ յուսահատօրէն համակերպիլ խորհեցաւ իրեն վիճակուած անագորոյն դժբաղդութեան... Բայց իր նահանջող մտածումին մէջ յանկարծ մխուիլն զգաց պաղատագին նայուածքներու... Իր կինն ու քոյրերն էին որ զինքը կը կանչէին, եւ իրեն ըսել կը թուէին. «Պիտի լքե՞ս մեզի, պիտի չի գա՞ս մեզ փրկելու, անգո՛ւթ...»:

Մարզը սարսռաց, թօթուուեցաւ ու իր էութեան բովանդակ թափովը ցցուեցաւ իր չարաչուք բաղդին դէմ, բռունցքը վերցուց, ու անոր վրայ վազեց՝ անդառնալի, սպառնական ու կատաղի խիզախումով մը...

Ու կ'երթա՜յ կ'երթա՜յ ան հիմա, աչքերը հորիզոնին սեւեռուն, ոտքերը հովերուն տուած, կարծես անոնց մէջէն յայտարար հառն առնելու համար իր կնկանն ու քոյրերուն, կ'երթա՜յ, անտարբեր՝ իր չուրջ յածող արհաւիրքին եւ իր ճամբուն խութերուն ու դարաններուն... Երբեմն կանգ կ'առնէ, ականջը գետնին կը դնէ ու վայրկեան մը մտիկ կ'ընէ հողին խուլ ձայներուն, անոր աննենգ խոստովանութիւններուն... Ու նորէն ոտքի կ'ելլէ, ու կը քալէ, կը քալէ, կը քալէ, քաղաքներէն, գիւղերէն, անտառներէն կ'անցնի հապշտապ, գիշերները մռայլ ամայութեան մէջէն կ'երթա՜յ մենաւոր, իր ապերասան հետապնդումէն մղուած, տարուած, կ'երթա՜յ առանց ետին նայելու, իրեններուն աղաչաւոր նայուածքը միայն տեսնելով իր առջեւ ու այդ նայուածքին

*թախանձանքէն քաշուած, քաշկռտուած, կ'երթա՛յ, հեւասպառ, անկասելի, անտեղիտալի, ինք իր վրայ կարծես թաւալելէն...*

*Ու կը մտածեմ, թէ ո՛րքան ցաւագին Հայուհիներ դեռ կը մնան Պզտիկեանի կնկան ու քոյրերուն վիճակին մէջ, և որոնք իրենց ազատումին հետապնդող անոր պէս էրիկ մը կամ եղբայր մը չունին։*

*Բայց ըսէ՛ք, կարելի՞ է երեւակայել աւելի աղեխարշ, աւելի եղերական, աւելի խենդեցնող պատկեր մը, քան տեսիլն այս մարդուն, որ Կիլիկիոյ արիւնոտ ճամբաներէն լեռ ու ձոր ինկած՝ ամբողջ աշխար՝ կը վազէ իր առեւանգուած կնոջն ու քոյրերուն ի խնդիր...*



# ԳԵՐՄԱՆ... ՀԱՅԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ



*Բայց նախ այս բառին իմաստը ճշդե՛նք։*

*Ի՞նչ է «Հայասիրութիւն»ը։*

*Մեր քանդուելիք պատրանքներէն մէկն է աս, եւ երանի՜ թէ վերջինն ըլլար։*

*Անիկա մեր ցաւագար ունայնամտութեան մէջէն ծնած պատիր ու անամէջ յաւակնութիւն մը կ'ենթադրէ լոկ։ Ուրիշ ոչի՛նչ։*

*«Հայասիրութիւն»ը այն դատարկ ու մակաբոյծ բառերէն է որոնց հետ երկարատեւ սովորութեամբ մը ա՛լ չենք անդրադառնար իրենց իմաստին անիրականութեանը կամ իրենց բո՛ւն իսկ նշանակած բանին չգոյութեանը։*

*Հակառակ որ աշխարհիս ամենէն լքուած, ամենէն մատնուած, ամենէն քամահրուած ցեղն ըլլանք, տակաւին կը յամառինք կոր կարծել թէ մեզ սիրողներ կան, կրնան ըլլալ։*

*Այս ապուշ ինքնախաբէութիւնը մեծ դեր ունեցաւ մանաւանդ վերջին քանի տարիներու ընթացքին մեր կրած անհնարին դժբաղդութիւններուն մէջ։*

*Մենք չի հասկցանք դեռ սա տարրական ճշմարտութիւնը, թէ ազգ մը սոսկ իր տառապանքներուն համար չեն* սիրեր*, թէ մորթուիլը, շատ թուով ու շարունակ մորթուիլը, մեզի տիտղոս մը չի կրնար ըլլալ օտարներու սիրոյն։*

*Ընդհակառա՛կը, ակարները, կոտորուողները — որքան ալ խուժդուժ անարդարութեան զոհեր ըլլան անոնք — համակրութիւն չեն ներշնչեր մարդկութեան ստուարագոյն մասին. անոնք տաղտկալի են, «գլխուցաւ» կը դառնան շուտով, և ամենէն առատագութ արգահատանքն իսկ երես կը դարձնէ իրենցմէ, եթէ «երկար ըլլեն»...*

*Մենք չի սորվեցանք թէ՝ մեր ապրած այս օրերուն՝ ժողովուրդ մը ո՛չ իր կրօնքովը և ո՛չ ալ իր ցաւերուն ահագնութեամբն է որ օտարներուն սիրելի կրնար ըլլալ, այլ իր նկարագրին գեղեցկութեամբը, իր բարքերուն հրապոյրովը, իր մասնայատուկ ձիրքերովը, իր հանճարներովը ու իր սեփական որոշ քաղաքակրթութեամբը:*

*Դժբաղդաբար, այս առաւելութիւններուն շատութենէն չէ որ կը տուայտինք, և անկեղծ ըլլալու համար՝ պէտք է խոստովանինք թէ այս տեսակէտով շատ ալ սիրուելիք բան մը չունինք...*

*Զգե՛նք մեզ քիչ մը մօտէն ճանչցողներուն վրայ մեր հպումին թողուցած ողբալի տպաւորութիւնը, շահի մէջ դաժան,* rapace, *առնազուրկ ցեղի մեր չափազանցուած ու տխուր համբաւը, և մեր ուրիշ դեռ կարգ մը բացասական ու խորշեցուցիչ կողմերը, մենք մեր անցեալէն ժառանգած մեծ բաներ մըն ալ չունինք պարծենալիք: — Անիի աւերակները չե՛ն որ մեզ պիտի փրկէին՝ մարդկութեան գորովին ու հիացումին մէջ, որքան ալ յարգելի, շահեկան ու մեզ համար նուիրական հնութիւններ ըլլան անոնք: Ո՛չ ալ Նարեկացիին միսթիքական բանաստեղծութիւններն են որ պիտի ապահովէին մեզի տիեզերական երախտագէտ սքանչացումը:*



**ԴԱՒԻԹ ԷՖ. ՈՒՐՖԱԼԵԱՆ**

Վճռաբեկի ատեանի անդամ, սպաննուած Ապրիլ 1ին

Ասոնք և ասոնց պէս մէկ քանի ուրիշ նիհար փաստերն եղան, սակայն, որ վերջին ասանըհինգ տարիներու մեր եւրոպական ու ամերիկեան հայանպաստ պրօպականտին առձեռն motif-ները կազմեցին աւելի կամ պակաս ճարտար ու աւիւնոտ հռետորներու գրչին տակ կամ լեզուին վրայ:

Ասո՞վ, ասոնցմո՞վ է որ աշխարհը épater պիտի ընէինք և պաշտելի պիտի դառնայինք օտարին...

Մենք նոր սկսած էինք ճլորիլ և չատ յուսալից էր մեր քաղաքակրթական վերածնունդն ու զարթօնքը: Բայց այդ չարժումին հետ միաժամանակ սկսաւ ու մեր գլխէն պակաս չեղաւ այնուհետև փորձանքը, այնպէս որ մեղադրելի չենք մենք զմայլանք հարկադրող մտաւորական չքեղ իրականացումներու դեռ հասած չըլլալնուս համար:

Բայց ի՞նչ բան մեզ կը ստիպէ անպատճառ մեր չուրջը փնտռել և յաճախ ինքնախաբօրէն հաստատել ապացոյցները այն տարփանքին, զոր մենք չենք կրնար ներչնչած ըլլալ:

Մեր սրտին մուրացածոյ զգացումն է որ կը մղէ մեզի կարծել, թէ մեզ կը սիրեն, թէ կը գուրգուրան մեր վրայ, թէ հոգի կու տան մեզի համար, երբ պարզապէս կը մեղքնան մեզի, կը կարեկցին մեր դժբաղդութեան, կ'ողորմին մեր ցաւերուն: Եւ տակաւին ա՛ս անգամ տարակուսելի է յաճախ...

Մենք մեր վրայ չենք նայիր և ելե՛ր ենք սիրուելու ...Ո՛վ խեղճութիւն...

Մենք կը նմանինք իրենց չունեցած գերազանցութեան, իրենց չունեցած չնորհներուն ու հրապոյրներուն ինքնաբաւ համոզումովը լեցուած այն ծիծաղելի պառաւներուն, որոնք կը կարծեն թէ իրենց ճամբուն

վրայ զոհեր կը ձգեն, թէ բոլոր իղձական սրտերը իրենց ետեւէն կը հառաչեն, մինչդեռ իսկապէս իրենց համար փոյթ ընող, իրենց ուշադրութիւն իսկ դարձնող չէ կայ ...

«Հայասէր»ներուն դիմելով ջարդուեցանք։ Ջար-դուելով «Հայասէր»ներուն դիմեցինք, ու նորէն ջար-դուեցանք... Ու այս անգամ դեռ նոր ջարդուած՝ կըր-կին «Հայասէր»ներուն խաբուսիկ մտածումին կը կառ-չինք...

Անոնք բան մը բրած չունին, սակայն, մեր այս թախանձոտ երախտագիտութիւնը արդարացնելու կամ քաջալերելու համար։ Ընդհակառա՛կը, ամէն բան ըրին որպէս զի մենք վազ անցնինք իրենց մեր մասին տա-ծած սխրալի գուրգուրանքէն։ Բայց չէ՛, մենք անանկ ապերախտ ուրացումներու ընդունակ չենք և այնքան դիւրաւ ձեռքէ չենք հաներ մեզի շռայլուած (.՛) բա-րեկամութիւնները, չենք հրաժարիր մեզի ուխտուած (.՛) պաշտամունքէն ...

Կիլիկեան վերջին աղէտները մեզ վերջնապէս հի-ասթափած ու բուժած ըլլալու էին այդ հիւանդ պատ-րանքէն։ Մեր «Հայասէր» բարեկամները տեսանք թէ ի՛նչպէս իրենց սէրն ապացուցին մեզի ... Եւ անոնցմէ ոմանք— դէթ մէկը՝ Քլէմանսօն — հզօր դիրքերու վրայ էին, և կրնային օրին մէջ գծուած քիչ մը բուռն ժէս-թով մը շատ բան փրկել մեր վիթխարի կորուստէն ... Բայց անոնք նախընտրեցին նոր «վարկ բանալ» — Բի-շօնին պատմական բառովը — Երիտասարդ-Թուրքիային, մեր երակներուն մէջ Ծեր-Թուրքիոյ թողուցած պուտ մը արիւնին խնայել, զայն պահպանել գիտցած չըլլա-լուն համար...

Եւ ահա՛, անգամ չարթնու, մեր Պոլսահայ թերթե-

րը Գերման «Հայասէր»ներու ուսատուոր յայտնութիւնը կը բերէին միտքերան ... Գերման պատուելի մը՝ Հէս Ֆաուէր Շմիտ և դեռ չեմ գիտեր ուրիշ ի՛նչ «Հէս»եր Պատրիարքարան այցելէր, Բիւզանդիոնի խմբագրատունը հանդիպեր և մնած տեղերնին հանդիսաւոր հաւաստիքներ տուեր են եղեր Գերման «Հայասիրութեան» մասին ... Ինչո՞ւ չէ՛, Գերման «Հայասիրութիւն»ը մէկ ուրիշ ու նորագոյն տեսակն է մեր ճանչցած ու երանելիօրէն վայելած ամենազգի «Հայասիրութեան» ...

Խօսեցէ՛ք ինծի այս Գերման «Հայասիրութեան» վրայ, և ես պատրաստ եմ ձեզի մտիկ ընել խանդավառ ու ջերմեռանդ հաւատքով մը, բայց թոյլ տուէ՛ք որ նախ թուեմ ձեզի մէկ քանին այդ Գերման «Հայասիրութեան» ամենաթարմ ապացոյցներէն, զորս անձամբ հաստատելու առիթն ունեցայ Կիլիկիոյ մէջ: — Պատրիարքարանի առաջին պատուիրակութիւնը՝ իր Մերսին ժամանումին յաջորդ օրերէն մէկը՝ զիս ղրկեց Ատանա - Մերսին Գերմանական երկաթուղիի տնօրէնին մօտ, խնդրելու համար անկէ ձրի փոխադրել Ատանայի անօթի աղէտեալներուն մեր ղրկելիք առօրեայ հացը: Գերմանացին՝ խնդրանքս լսելէ վերջ՝ սկսաւ պատմել ինծի, թէ Գերմանացիք շատ կը սիրեն Հայերը, թէ ամէն տեսակ օգնութիւն պատրաստ են ընել անոնց, թէ Քայզեր Վիլհելմը արդէն հեռագրեր է իրենց որ իր հաշւոյն կերակուր մը կերցնեն Ատանայի աղէտեալներուն, թէ ընկերութիւնը Պէյրութ գրեր է և ամբողջ clinique մը հաստատելու չափ վիրաբուժական գործիքներ բերել կուտայ կոր, վիրաւորեալները դարմանելու համար ևն. ևն.: Ամբողջ ժամ մը գլուխս ուռեցուց այս խոստմնաւոր խօսքերովը, նամակներ դրաւ առջևս և խնդրեց, ստիպեց որ կարդամ, կարծես հաւատացնել ուզելով իր

ըսածներուն դէմ մէկ մասին ճշմարտութեանը: Բայց դեռ պատասխանն առած չէի իմ պարզ ու համեստ խնդրանքիս: Եւ երբ կրկնեցի զայն, Գերմանացին ափ ի բերան թողուց զիս, ըսելով թէ չէր կրնար ըմբռնել այդ առաջարկը, որովհետեւ ընկերութիւնը Ատանայի դէպքէն 1000 ոսկիի չափ վնաս ունեցած էր զոր պիտի պահանջէր կառավարութենէն, և եթէ հիմայ Հայերուն հացը ձրի փոխադրէր, կառավարութիւնը պիտի իրաւունք ունենար իր պահանջը մերժելու՝ առարկելով թէ ընկերութիւնը ի վիճակի պիտի չըլլար Հայերուն հացը ձրի փոխադրելու եթէ իսկապէս վնասուած ըլլար...

Հրաշալի տրամաբանութիւն, այնպէս չէ՞, և որքա՞ն աւելի վսեմ «Հայասիրութիւն», զոր յօդս կը ցնդեցնէր 1000 ոսկիի ծիծաղաշարժ գումարի մը այսպէս ապահով գանձումին մտահոգութիւնը...

Անպարագրելի զզուանքով մը համակուած՝ դուրս ելայ տնօրէնին դրասենեակէն:

Գերման «Հայասիրութեան» առաջին դրական ապացոյցն էր զոր ունեցեր էի:

Վերջէն Ատանայի մէջ պիտի լսէի այդ «Հայասիրութեան» աւելի պերճախօս փաստերը:— Երկաթուղիի Գերման երկրաչափները երկու, երեք, մինչև հինգ ոսկի պախշիշ տուեր էին Հայ սպաննող Թուրքերուն, որոնց սա հարցումը կ՚ընեն եղեր նախապէս. «Քանի՞ Հայ սպաննեցիր դուն»: Ու պախշիշը՝ խրախուսիչ դահիճի իր սպաննածներուն թիւին համեմատութեամբ կը տրուէր:

Դարձեալ Գերմանացիներ եղեր էին՝ Թրփանիի գործարանը խռնուած հազարաւոր տնօթիներու փոքրաքանակ հաց նետելով անոնց լուսանկարն առնողները, երբ անոնք հացերը իրարու ձեռքէ կը յափշտակէին...

*Ահաւասիկ Գերման «Հայասիրութիւն»ը, իրակա՛նը, ա՛յնպէս, ինչպէս տրուեցաւ ինծի ճանչնալ զայն։*

*Բայց «Հայասիրութիւն»ը, որ քաղաքականապէս երբէք չահաւէտ չեղաւ մեզի, օտար քաղաքականութեան համար խիստ յաճախ և արդիւնաւէտօրէն չահագործելի ապրանք մըն է։ — Չըլլա՞յ թէ Գում-Գափուի նեղկճուկ փողոցներէն մինչև Կիլիկեան աւերները՝ Գերման «Հայասիրութեան» մը այս նոր յառնումը դերերու փոփոխում մը ըլլայ Գերմանիոյ և Անգլիոյ միջև, յորմէ հետէ այս վերջինին դարպասէն աւելի հաճոյք զգալ կը թուի Երիտասարդ-Թուրքիան։*

*Արտասահմանէն նոր հասած թերթի մը մէջ կը կարդամ. «Գերման դիւանագէտ մը յօդուածով մը բացատրած է թէ Անգլիոյ դրդմամբ է որ Օսմ. երեսփոխանական պատուիրակները չուզեցին Պերլին երթալ։ Անգլիա կը ջանայ նաև Ֆօն տէր Կոլց փաշայի պաշտօնը չեզոքացնել։ Գերման դիւանագէտը կը թելադրէ այս մասին գործունէութիւն ցոյց տալ՝ երկրորդական դիրքի մէջ չի մնալու համար»։*

*«Հայասիրութիւն» … Ատանկ բան չէ՛ եղած ու չի՛ կայ։ Եթէ երբէք պատահած է, ու այսօր ալ շատ քիչ անգամ կրնայ դեռ պատահիլ, որ մեր դատը այս կամ այն օտարին անկեղծ պաշտպանութեան արժանանայ, ատիկա՛ ալ մեր* սիրելութեան *շնորհիւը չէ՛, այլ պարզապէս՝ արդարութեան ու ճշմարտութեան սիրոյն։*

*Թո՛ղ այս տողերուն մէջ մասնաւոր փափաք մը չի տեսնեն մեր ժողովուրդը յուսադրկելու։ Հաւատքը մարդուս մեծագոյն ուժն է, բայց սխալ ըմբռնումներու վրայ հիմնուած հաւատքը՝ անոր ուշ կամ կանուխ սայթաքումը, տկարացումն ու անկումն է։*

*«Հայասիրութիւն»ը մեր մտայնութեան մէջ արմա-*

տացած այդ սխալ ըմբռնումներէն է։ Եւ մենք՝ մեր մասին՝ Թոյլ պիտի չի տանք որ առանկ պիտակ ըմբռնումներ մեր ժողովուրդին միամտուԹիւնը քաջալերեն, վաղը աւելի դառն յուսախաբուԹիւններ պատրաստելու համար անոր։

Ո՛րքան անգամ որ «ՀայասիրուԹեան» եւ «Հայասէր» ի խօսքը լսենք, մենք պիտի չի դադրինք գոչելէ.
— Ձէ՛, բարեկամնե՛ր, մեզ սիրող չի՛ կայ, մենք մեր գլխուն ճարը նայի՛նք...։



# Տապանաքարի Մը Ձետեղումը

*Կառավարութիւնը փութկոտ շտապ մը ցոյց կու-տայ կոր Ատանայի խնդրոյն հետ վերջացնելու, զայն վերածելով իր ամէնէն երեւութապէս կարգադրուած ձեւին։*

*Իզմիրի զինուորական-հրամանատար՝ Իսմայիլ Ֆազըլ փաշա, որ Ատանա ղրկուած էր Պատերազմական Ատեանին նախագահութիւնը Քէնան փաշայի հետ բաժնելու համար, իր «գործը վերջացուցեր» և Պոլիս դարձեր է, ուր Ս. Պատրիարք Հօր հետ ունեցած իր մէկ տեսակցութեան մէջ ըրած է կարգ մը յայտարարութիւններ, որոնց ամբողջութիւնը անո՛նք միայն կրնան ըմբռնել որոնք այս կսկծալի խնդրին բոլոր փուլերուն ու մանրամասնութիւններուն ուշադիր ու անձկոտ մտքով մը հետեւեցան։*

*Ֆազըլ փաշա ինքն ալ ուրեմն չուզեր ճանչնալ Հայոց բացարձակ անպարտութիւնը Կիլիկեան Արհաւիրքին մէջ, և պատասխանատուութեան բաժին մը կը հանէ անոնց՝ արդարացուցած ըլլալու համար անոնց հանդէպ Օսմանեան «Արդարութեան» բռնած դիրքը Աղէտքէն վերջը։*

*Եւ ի՞նչ փաստերու վրայ կը հիմնուի վսեմաշուք փաշան իր այս «անխտրական» — ու այս բառը շատոնց*

*«անաչառ»ին հոմանիշն ըլլալէ դադրած է — դատումին ու եզրակացութեանց մէջ։*

*Ո՛չինչ նոր․ միշտ միեւնոյն յանկերգը, մեր գիտցածը։*

*Հայերը Սահմանադրութենէն ետքը «անխոհեմութիւն»ներ գործեր են եղեր, որոնք տեղի տուեր են իսլամներուն մէջ գրգռումի։ Հայերը թէև «ապստամբական» նպատակ չունէին — այսքանն ալ կ'ընդունի կոր նէ ա՛լ ի՞նչ կ'ուզէք — բայց իրենցմէ ոմանց անհեռատես շարժուձեւերը վտանգաւոր կասկածներ և թիւրիմացութիւններ ստեղծեր են իսլամներու մէջ, ևլն. ևլն.։*

*Ատոնք Նորին Վսեմութենէն իմանալու պէտք չունէինք։ Մենք առջի վայրկեանէն ճանչցեր, ընդուներ և հրապարակաւ խոստովաներ էինք ատոնց մէջ կեցած կոյր մը ճշմարտութիւնը։ Եւ մեր ամենէն... «յեղափոխական» կուսակցութիւնը, Դաշնակցութիւնն անգամ իր պաշտօնական օրկանին՝* Դրօշակի՝ *վերջին թիւով դառնօրէն կը ձաղկէր մեր երիտասարդութեան մէկ տիպացու և անխորհուրդ մասին սխալ հասկցուած ազգայնականութիւնն ու աւելի ողորմելի, աւելի վտանգաւոր — զի շատերուն համար տեսակ մը տխուր, արհեստ, գոյութեան իրաւունք դարձած —* յեղափոխականութիւնը։

*Ատոնք սակայն կրնա՞ն եղեր Ֆազըլ փաշաներու ձեռքին մէջ ալ իբրև արդարացուցիչ, գէթ մեղմացուցիչ պարագաներ հակադրուիլ կատարուած անսահման եղեռնին։ Մենք պիտի փափաքէինք, ընդհակառակը, Ֆազըլ փաշայի պէս մաքուր համբաւ վայելող Թուրքերէ լսել թէ նո՛յն իսկ* ապստամբական *ձգտում մը կամ խլրտում մը — եթէ երբէք գոյութիւն ունեցած ըլլար — իրաւունք չէր տար Իսլամներուն Հայերը ջարդել այնպէս, ինչպէս ջարդեցին... Կ'երեւի թէ մեր Թուրք հայ-*

*բնակիչները այս յուսամիտ գիտակցութեան հասած տեսնելու համար քանի մը դար ջարդուելու ենք դեռ պարբերաբար...*

*Ա՛լ աւելորդ է յուսալ, սպասել, որ երբ և իցէ բացարձակ արդարութիւն ըլլայ մեզի այս ահաւոր խնդրոյն մէջ։ Ժէօն-Թիւրքերը չը պիտի կրնան ընդունիլ և հաչակել, թէ Հայերը առանց յանցանքի, առանց հիմնական պատճառի, կեցած տեղերնին կոտորուեցան իսլամ հայրենակիցներէն, թէ այս կոտորածը Հայուն արիւնը խմելէ, անոր պատիւը պղծելէ և անոր ինչքը աւարի տալէ զատ ուրիշ շարժառիթ չունի... Ասիկա չեն կրնար ընդունիլ, զի իրենց ազգային արժանապատուութեան վիրաւորանք մը կը տեսնեն ատոր մէջ...* Արժանապատուութեան *սխա՞լ թէ շիտակ ըմբռնում, ասիկա չեմ ուզեր վիճիլ. իրողութիւնը կը հաստատեմ միայն։*

*Այսուհանդերձ ո՛րքան ալ մարդկային ըլլար վերջապէս իրենց այս ընթացքը, կրնային արդարագործութեան քիչ մը աւելի կամք դնել իրենց կայացուցած վճիռներուն մէջ... Երբ Ճէվատ, Մուսթաֆա Րէմզի, Ապտիւլ Գատէր, Իհսան Ֆիքրի քանի մը ամիսով անուանական բանտարկութեանց և Սատանայէն շատ հաճելի հեռացումներու կը դատապարտուին, և Մուշեղ Սեբազան՝ ցկեանս բերդարգելութեան, ո՞ր ուղեղը կրնայ համաձայնիլ ատոր... Ուրիշ հարց է թէ՝ չը համակերպինք տէ ի՞նչ պիտի ընենք... Բայց ո՞ր խղճմտանքը կրնայ անվրդով դիտել Պաղտատի Գատէրի անպարտ արձակումը այն առարկութեամբ՝ թէ զինքը ամբաստանող փաստեր չի կային։ Չէ՞ր բաւեր Դաւիթ Ուրֆալեանի ծերունի հօր ամբաստանութիւնը, չէ՞ին բաւեր Կաթողիկոսին և քրիստոնեայ հոգեւոր պետերուն մատնանշումները, չէ՞ին բաւեր այնքան կիներու սարսը-*

ռեցուցիչ վկայութիւնները... Կը մոռնամ, սակայն, որ ըստ Շէրիի խալամի մը դատապարտութեան համար քրիստոնեաներու վկայութիւնը չընդունուիր... Ու «Սահմանադրութիւնը Շէրիաթին հակառակ չէ» ևն.— գիտէ՛ք ծանօթ եղանակը... Իհսան Ֆիքրիի դէմ ալ ամբաստանութիւններուն ամենէն սոսկալին չի կրնար կոր ժայթքիլ եղեր իր Իթիտալներուն արիւնազանգ դէզէն...

Եւ մինչ անդին մէկ կողմէն բանտերը կը լեցուին տանջանքով, Սատանայէն աքսորեալներ ճամբայ կը հանուին դէպ ի Թիարպան, կախաղանին չուանները նոր անմեղներու ճիտին համար կը իւղոտուին. մինչ անդին եղեռնախնդիր չարիքը Մարաշի վրայ կ'իյնայ և մինչև Զէյթունի շուրջը կը յածի, — ասդին տենդոտ խրաբանցում մը կը տեսնենք խնդիրը փակելու, հեւ ի հեւ աճապարանք մը մէջտեղէն մեռելը վերցնելու...

Տապանաքարի մը զետեղումին է որ կ'աշխատուի ամէն կողմէ, ներսէն թէ դուրսէն...

Պոլսոյ վերջին Թղթատարը Թելագրական լուրը կը բերէ Դաշնակցութեան և Իթթիհատին միջև միացումի ... դատարկ բանաձևերու շուրջ, որոնք գոնէ նոր ըլլալու առաւելութիւնն ալ չունին, բայց որոնք կրնան ինքնախաբէութեան դեռ կոյս մնացած հորիզոններ բանալ մեր ծանծաղամիտ ժողովուրդին առջև... Թո՛ղ նախ ըսեն մեզի, թէ Իթթիհատը կ'ընդունի —Ընկերակցութեանց Արդ. Ցօղուածին վաւերացումէն ետք — ազգային կուսակցութիւններու գոյութիւնը, չէ նէ՞ մի օրէնքի բացառութիւն մը կ'ուզուի ընել... Դաշնակցութեան համար։

Զգե՛նք այս չփոթ կէտերը և աչքէ չի հանե՛նք անդին տապանաքարին զետեղումը...

Կ'երեւի թէ ամենքս ալ որոշում տուած ենք՝ եթէ

*ոչ մասնակցելու՝ դէմ խոնարհելու, հաւանելու այդ գերեզմանումին առջև։ Արդէն անո՛նց որ չեն ուզեր համակերպիլ՝ ուրիշ բան չի մնար, եթէ ոչ գլուխնին դարձնել ու արցունքնին սրբել...*

*Կեցէ՛ք սակայն, բա՛ն մը ունիմ ըսելիք, եղբա՛յրք.*

*— Այս մեռելը Հայունը չէ՛, գիտցած եղէք, այս մեռելը մի՛ այն է որ Հայունը չըլլայ, Այս մեռելը Թուրքինն է, և անոր ամենէն նուիրական բանին, անոր խղճին դիակն է, որուն վրայ ահա՛ ամէննին մէկ են եղեր տապանաքար մը զետեղելու համար...։*

*Ես չեմ կրնար ինքզինքս արգիլել մտածելէ, թէ Ժէօն-Թիւրքերը սխալ գործեցին, թէ իրենց Եւրոպացի այսօրուան բարեկամները շատ սխալ ու աղէտաւոր խրատներ տուին իրենց, թէ իրենք չարաչար խաբուեցան՝ չփնտռելով օտարներէն և անոնց ամենէն անարգէն «Նենգամիտ Ալպիօն»էն՝ կարծելով թէ Արդարութենէն խուսափելով այս երկիրը կրնայ փրկուիլ և անոր ապագան ապահովուիլ...*

*Օտարները խաբեցին ձեզի, ու դուք զձեզ կը խաբէք հիմա, Ժէօն-Թիւրքե՛ր... Դո՛ւք այս երկրին վերականգնումին համար իր կեանքն ու հոգին տալու Հայէն աւելի կամաւոր, Հայէն աւելի պատրաստ, Հայէն աւելի անկեղծ ու բոլորանուէր ցեղ չէիք կրնար գտնել, երեւակայել իսկ... Ու դուք Հայուն հոգին ծակծկեցիք, Հայուն կեանքին արիւնի ու աւերի մէջ թալթըլիլը տեսաք, ու զլացաք անոր քիչ մը արդարութիւն...*

*Հիմա, զետեղեցէ՛ք այդ տապանաքարը Կիլիկեան Դաշտին վրայ։ Բայց մի՛ մոռնաք, թէ օր կուգայ՝ երբ զղջումով ձեր գլուխը կը զարնէք այդ տապանաքարին։*



# ԺԱՄՈՒՆ ԲԱԿԸ

*Հոն էր, մեր աչքին առջեւ, մեր ճամբուն վրայ, — ժամուն բակը։*

*Գերեզմաններն իրենց հանգստարան ընտրած, երեսնին տապանաքարերուն տուած, կենդանիներէն յուսակտուր իրենց ցաւը մեռելներուն ըսելու ձեւով մը, պառկեր կը մրափէին ոմանք, ծառերուն զով շուքին մէջ, մինչ ուրիշներ՝ Ս. Ստեփաննոսի դուրսի կամարներուն տակ, կռնակնին պատերուն, քով քովի կծկտած՝ իրենց* տէրտը *կ'որոճան...*

*Անդին, անկիւն մը, ներս քաշուած մէկ քանի սենեակներու մէջ, որոնց Արհեստանոց անունը կուտան եղեր, իրենց ողորմելի փաթթիներուն տեսքը, մանաւանդ իրենց տաժանքի ընկերուհիներուն ու իրենց ճիժ ու պիժերուն խլրտումն ու տնական նիստուկացը միայն տեղաւորումի մը տպաւորութիւնը կը թողուն, և կ'ամբողջացնեն խեղճութեան այս սրտաշարժ տեսարանը։*

*Օրական մէկ երկու հեղ իրենց քովէն, իրենց մէջէն կ'անցնիմ, և առանց մտիկ ընելու իրենց ձայներուն, առանց քայլ մը յամենալու իրենց շուրջ, կը լսեմ իրենց թախծագին պատմութիւնը, որ ա՛լ ոչինչ ունի նոր, կամ գաղտնի մնացած, ինծի համար։*

Կը ճանչնամ զիրենք, ու գիտեմ իրենց վիճակին ամբողջ ահաւորութիւնը՝ դեռ հազիւ երկու ամիս առաջ իրենց պարագային մէջ գտնուող հարիւրաւորներ տեսած ըլլալու՝ ուրի՛շ ժամու մը բակը...

Եգիպտոս, Աղեքսանդրիոյ Հայոց ժամուն բակն էր ատ, ուր իրարու ետեւէ եկող, ինկող գաղթականներուն թիւը 500ի կը հասնէր, ամէնքն ալ Կիլիկեան Արհաւիրքէն փախստականներ: Տեղական կառավարութենէն հալածուած, վրաններու տակ եղկելիօրէն պատսպարուած, եկեղեցիին գրեթէ ամբողջ չրջափակը բռներ էին: Հոն գոնէ Իզմիրի ժամուն բակին հովանաւոր ծառերն ու պաղպաջուն դամբանաքարերը չկային: Տեղ տեղ, մէկ քանի լերկ ու վտիտ արմաւենիներ անստուեր կը ցցուէին արեւուն մէջ, որուն կիզիչ ճառագայթներուն տակ, կրակէ հողին վրայ, գաղթականները կը խաշուէին, կը խորովուէին օրն ի բուն:

Անոնց ապրուստին հոգը ամբողջապէս կ'իյնար տեղւոյն Ազգային Հոգաբարձութեան վրայ, զի Գահիրէի Բարեգործականը չէր ուզեր — եւ իրաւա՛մբ — խարել Կիլիկիոյ համար հանգանակած իր կարեւոր գումարները, անոնցմէ բաժին հանելով գաղթականներուն ալ:

Ու բնականաբար դժգոհութիւններ ծայր տուին երկու կողմէն, տրամադրութիւնները խստացան փոխադարձաբար, զզուանքները իրարու դէմ լարուեցան, զայրացան, ու տեղի տուին ցաւալի միջադէպերու, որոնց մէջ դժուար պիտի ըլլար, անշուշտ, մէկ կողմին իրաւունք տալ եւ միւսը մեղադրել:

Հոգաբարձութիւնը չէր կրնար հասնիլ գաղթականներու բոլոր կենսական պէտքերուն. Բայց զրկանքն ու թշուառութիւնն ալ համբերութեան չափ մը ունին: Ու բառ մը աւելի, բառ մը պակաս, ահա՛ փոթորիկ

մըն է կը պայթէր ժամուն բակը... Մինչև իսկ անհրաժեշտ կարծուեցաւ բօլիս բերել նստեցնել հոն, աւելի դաժան անպատեհութիւններու առաջքն առնելու համար... Ես մեկնեցայ գացի, ու չեմ գիտեր ի՛նչպէս վերջացաւ Աղեքսանդրիոյ ժամուն բակին պատմութիւնը, կամ ի՛նչպէս չարունակուեցաւ, զի չեմ կարծեր թէ վերջացած կրնայ ըլլալ ան... Ո՞ւր պիտի քշէին այդքան հարիւրաւոր գաղթականներ, ի՞նչպէս պիտի կրնային ազատիլ կամ թեթեւնալ անոնց անխուսափելի բեռէն... Անցեալները մեր թերթերուն մէջ յայտարարութիւն մը կարդացի Եգիպտահայոց Առաջնորդին կողմէն ստորագրուած, որով նորագոյն գաղթականներու կ՚ազդարարուէր ո՛չ մէկ ակնկալութիւն չի դնել Եգիպտոսի ազգային հաստատութեանց վրայ...

Հիմա, դրեթէ միեւնոյն բանն է որ կը պատահի Իզմիրի մէջ, միայն թէ նուազագոյն համեմատութիւններով: — Մեր ժամուն բակն ալ, ինչպէս կը լսեմ, անցածները, գիշեր մը, լեցուն է եղեր ամէնկայազ խռովութիւններու, ժամկոչ աղբարներուն ու գաղթականներուն միջեւ կատաղի կռիւներ մղուեր են, ու մազ մնացեր է որ գործը բօլիսին հասնի... Ուրիշ անգամ մըն ալ գոց դուներ խորտակուեր են գաղթականներուն կողմէ... Եւ ահա՛, վերջապէս, Ազգ. Քաղխնամը, ճարահատ, արմատական դարմանի մը դիմել կ՚որոշէ, և գաղթականները իրենց երկիրը ղրկելու համար հանգանակութեան կը ձեռնարկէ Իզմիրի Հայ հասարակութեան ուղղուած յայտարարութեամբ մը, որ հրատարակուեցաւ Իզմիրի Դաշինք օրաթերթին մէջ:

Պիտի փափաքէի որ այս բոլորը եղբայրական լայն ոգւով մը կատարուէր լինէր, և ա՛լ պատճառ չի տրուէր նորանոր դայ՚մակրական ու ցաւալի երեւոյթներու:

Գաղթականները մեր ազգային դժբաղդութեան շրջուն պատկերներն են որոնց ի տես աւելի ճշգրիտ ու գիտակից ըմբռնումը կ'ունենանք մեզ հեռուէն կամ մօտէն շրջապատող իրականութեան և մեր ցեղային ճակատագրին։ Պէտք է ներողամիտ ու անյիշաչար ըլլանք անոնց հանդէպ, նոյն իսկ աչք գոցենք յաճախ անոնց արատներուն ու մոլորանքներուն, գիտնալով որ թշուառութեան խարաններ և սայթաքումներ են անոնք։

Անոնց մէջ կրնան ընկերային փտութեան տարբեր գտնուիլ, մարդիկ՝ որոնց համար ազգին նիհար ու սպառած կռնակին վրայ բուծանելու պատեհութիւն մը եղած ըլլան ներկայ դժբաղդ պարագաները։ Մինչեւ իսկ ըսող եղաւ ինծի, թէ այնքան անբարոյացած է ցեղը, որ մօտակայ հանքերու մէջ աշխատող Հայ բանուորներ՝ գաղթականներու նպաստ տրուիլը լսելով՝ ուզած են ձգել իրենց գործը, իրենց քրտինքին արդար ու մաքուր վաստակը, երթալ իրենց բաժինը յափշտակելու համար բաշխուող մառաղէն... Եւ երկար ու թախանձոտ յորդորներ պէտք եղեր են՝ այս թշուառները ետ կեցնելու համար իրենց անարգ մտադրութենէն։

Այս բոլորը կրնայ տխուր իրականութիւնն ըլլալ։ Բայց՝ ատով հանդերձ՝ ես շիտակ չեմ գտներ ամէն գաղթականի մէջ անպայման խաչագող մը կամ մակաբոյծ մը տեսնելու կամ կասկածելու հակումը, և՝ ամէն պարագայի տակ՝ հիմա ատենը չէ՞ այդ մտահոգութեամբ զատումներու և զանազանութիւններու հետամուտ ըլլալու։

Գաղթային այս չարիքն անոնցմէ է զորս եթէ շատ խառնես մէջէն աղէտ կրնայ ծնիլ։ Լաւագոյն կերպը անոր անխտիր ու ամբողջական վտարումն է ամէն զոհողութեան գնով։

*Իզմիրի Աղքատախնամը այս արթուն գիտակցութենէն առաջնորդուած կ'երևի, իր վերջին ձեռնարկին մէջ, զոր գլուխ հանելու համար կը յուսայ հասարակութեան սիրայօժար աջակցութիւնը իրեն հետ պիտի ունենայ։*

*Միայն թէ ամէն խնամք ու միջոց ձեռք առնելու է ապահովելու համար գաղթականներու դէպի իրենց ծննդավայրերը վերադարձին նկատմամբ, որպէսզի անոնք՝ մեր ժամուն բակէն հեռանալով՝ չերթան, չուխտաւորուին, չի տախտապարին ուրիշ հայ գաղութի մը ժամուն բակը...։*





Առաջին անգամ կախուած վեց Հայերը

# ԱՆԴԱՐՄԱՆԵԼԻՆ

Երիտասարդ-Թուրքերը թո՛ղ հպարտ զգան ինք-զինքնին, զի վերջապէս յաջողեցան — ի՛նչ տխուր յաղթանակ — մեզ բռնադատել խոստովանելու սա դժնդակ մտածումը՝ թէ մեր վիճակը աւելի յուսահատական է այսօր Թուրքիոյ մէջ՝ որքան չէր եղած Համիտեան բռնակալութեան ամենէն չարաշուք շրջանին իսկ:

Ի զո՛ւր պիտի ջանայինք ծածկել այս գերագոյն յուսահատութիւնը, ինչպէս կը թուին ընել մայրաքաղաքին թերթերէն ոմանք, խօսքի լաւատեսութեան ծամածուռ, բռնազբօսիկ ու պաճուճապատ ճիգերով: Այդ յուսահատութիւնը մեր ամենուս սրտին վրայ չոքած է, անիկա մթագնած է մեր ազգային ներքին կեանքին հորիզոնը, և ցաւագին կեղծիք մը պիտի ըլլար մեր կողմէն զայն ուրանալ փորձելը, կամ ողորմելի ինքնախաբէութիւն մը՝ անոր անտարբեր ու անկէ զերծ ձևանալը:

Արդէն, եթէ մենք լռենք ալ, արտասահմանեան մեր մամուլը չի լռեր, չի ծածկեր այդ յուսահատութիւնը, ընդհակառակն, անոր զօղանջը կը հնչեցնէ հետզհետէ աւելցող յամառութեամբ մը: Հեռուէն ու մօտէն մեզի հասնող ձայները ուրիշ բան չեն ըսեր մեզի: Վրդովուած, փոթորկած խղճմտանքի խելայեղ աղաղակը, զոր Շաքլեան կը բարձրացնէր Դաշինքի սիւնակներուն մէջ՝ ամենէն աղե-

չարժ արտայայտութիւնն էր ներկայ վայրկեանին յուսահատ գիտակցութեան։

Եւ այդ յուսահատութիւնը խօսքով չէ միայն որ երեւան կու գայ մեր խրախճանութեան մէջ. անիկա մեր ազգային կեանքին երկու ամենէն տխրօրէն յատկանշական երեւոյթները կը սեղմէ այս պահուս, — արտագաղթի յարաճուն հոսանքը, և դաւանափոխութեան ջղաձգական շարժում մը։ — Յուսահատներ կը գաղթեն, կ'երթան հայրենի երկրէն, անվերջ ու խուճապական կարաւաններով։ Յուսահատներ Փեթրոսպուրկ կը դիմեն հեռագրական աղերսանքով, ուղղափառութեան մէջ ապաւէն մը փնտռելու...

Կիլիկեան չարաղէտներու խնդրին մասին վերջին կերպարանքը՝ հոգեբանական ուրիշ վիճակի մը չէր կրրնար հասցնել մեզի։ — Ահաւոր Զուլումէն վերջ՝ Արդարութեան անողորմ այդ զլացումը մեզի՝ մերկապարանոց ի յայտ բերաւ նոր ռէժիմին կամ Երիտասարդ-Թրքութեան մեր նկատմամբ սնուցած դաւերն, կասկածոտ ու թշնամական տրամադրութիւնները։

Ինչե՞ն է մեզի դէմ ուղղուած անըմբռնական այս զլացումը, այս անվերածելի, անհերքելի անվստահութիւնը, ինչո՞ւ ո՛րքան սխալօրէն կատարուած գիրկընդխառնումներէն ետքը՝ ո՛րքան շուտով ուծացանք իրարմէ, ո՛րքան անգթօրէն, ո՛րքան կայծակաբար անիրաւուած, խոշտանգուած, զրկուած ու լքուած գտանք մենք զմեզ անոնցմէ, որոնց հետ դեռ երէկ յաւիտենական եղբայրութեան համբոյրներ փոխանակեցինք, մեր նահատակներուն դիակներուն վըրայ միասին ծունկի եկած...

Ա՜հ, թո՛յլ տուէ՛ք ինծի, երիտասարդ-թուրքե՛ր, որ յիշեմ ձեզի մէկ քանի ճշմարտութիւններ, որոնք

անհրաժեշտ է որ միանգամ ընդ միշտ լուսաբանուին, հասկցուին, վճռուին մեր ու ձեր միջեւ։

Ոխի ու ատելութեան ունայն ու վիրաւորիչ խօսքեր չեն որ պիտի նետեմ ձեր երեսին։ Ի՞նչ օգուտ վրիժառու փուազներէն, երբ տասնեակ հազարաւոր դիակներու, անսահման աւերներու եւ անոնց շուրջ, անոնց վրայ քաշկռտուող մարդկային խլեակներու, ամէն օր մեռնող անհամար վերապրածներու առջեւ կեցած ենք։ Մահասարսուռ այս իրականութեան ի տես ի՞նչ կ'արժէ բառերու ամենէն կատաղութիւնը։ Ես նորէն պիտի խօսիմ ձեզի եղբայրական հոգիով մը, որուն մէջ բոլոր այդ ահաւոր իրականութիւնէն կը մնայ միայն կոյր, անողոքելի, անմաքառելի ճակատագրականութեան մը անդունդը։

Դո՛ւք, եղեռնագո՛րծ թուրքե՛ր, ուզեցի՞ք Հայուն մէջ ջնջել ապագայ վտանգ մը, որ գոյութիւն չունէր, չէր կրնար ունենալ երբէք, այս երկրին համար։

Ահա՛ բո՛ւն ճշմարտութիւնը, որուն մէջ կը կայանայ ձեր սխալին ահաւորութիւնը, եւ մեր դժբաղդութեան անհունութիւնը։

Դուք կարծեցիք թէ պէտք չէր թոյլ տրուէր Հայուն՝ սահմանադրական ռէժիմին հովանւոյն ու պաշտպանութեան տակ արդարադատօրէն (?) կազդուրուիլ, իր վէրքերը դարմանել, ուժովնալ, զարգանալ եւ օր մը... ի վիճակի ըլլալ ձեզի դէմ ծառանալու։ Պէտք էր անոր մտաւորական ու ֆիզիքական յառաջդիմութեան բնական ընթացքը տասնեակ տարիներով ետ ձգել, զայն չարաչար իր աղէտներու անելքերու հորձին մէջ պահել, շունչ առնել չի տալ անոր, որպէս զի չըլլա՛յ որ ան գլուխ վեր առնէր, աչքերը հեռուն սեւեռէր ու յանդուգն ու «դաւաճան» երազներու փորձութիւնէն տարուէր... Ըսէ՛ք, այս չէ՞ր ձեր ներքին մտածումը Հայերուն նկատմամբ։

*Ձեր ներողութիւնը կը խնդրե՛մ խօսքերուս անվերապահ անկեղծութեանը համար: Բայց դուք, էֆէնտիլե՛ր, հակառակ ձեր բազմադարեան* խուրնազ*ութեան ու մերինէն այլապէս սուր ձեր քաղաքական հոտառութեանը, չի ճանչցաք, չի հասկցաք այն* պօշպօղազ *ու եղկելի ցեղը, որ Հայն է, և որ՛ ուրիշին համար ամէն սնապարծութեան ընդունակ՝ իր պահպանութեանն ու բարձրացումին համար գերագրական ապիկարութեամբ մը միայն օժտուած է:*

*Դուք ոչի՛նչ, բացարձակապէս ոչինչ ունէիք վախնալիք անկէ, և ամէն առաւելութիւն ունէիք զայն սիրաշահելուն, անոր հետ եղբայրաբար և վեհանձնօրէն վարուելուն մէջ:*

*Դո՛ւք, երիտասարդ-թուրքե՛ր, չըմբռնեցիք Հայուն հոգեբանութիւնը, այդ որբ, բարեսիրտ, ողորմուկ սրտախանդաղատեցնող, լացնող հոգեբանութիւնը. չի գիտցաք, կամ չուզեցիք գիտնալ, թէ անուշ խօսք մը, ազնիւ ժէսթ մը, գորովագութ նայուածք մը պիտի բաւէր յաւիտեան, որ Հայը իր հոգին* ղուրպան *բերէր ձեզի համար./.*

*Յիշեցէ՛ք, երիտասարդ-թուրքե՛ր, յիշեցէ՛ք Սահմանադրութեան հռչակումին՝ օսմանեան բոլոր ցեղերուն մէջէն Հայերուն ցոյց տուած պաշտելի անյիշաչարութիւնը. ամենէն աւելի անիրաւուածը, ամենէն աւելի աղ՚րասան ու հոգեւին խանդավառութիւնը կը զգար ու կ՚արտայայտէր ձեզի հետ ու ձեզի հանդէպ, իր հարիւր հազարաւոր մեռելները մոռնալով, անոնց արիւնը* հէլալ *ընելով ձեզի:*

*Ահ, դուք կրնայիք Հայուն այդ գերմարդկային անյիշաչարութիւնը անգամ մըն ալ շահիլ, երիտասարդ-թուրքե՛ր, եթէ միայն յանձն առնէիք անոր* 20.000 *կիլիկեան դեռ չի պաղած զոհերուն փոխարէն՝ վրիժխարի Եղեռնը սարքող* 5-6 *գլխաւոր ոճրագործները* զոհել...

*Բայց աւելին չըրի՛ք, չուզեցի՛ք ընել... Ու Արդարութեան անունով անյղանալի քաջութիւնն ալ ունեցաք դեռ Հայեր կախաղան հանելու Կիլիկեան դիականակոյտին վրայ, ողորմելի ու անպատասխանատու խաժամ մարդասպաններու հետ...*

*Ինչպէս չի յուսահատինք այս բոլորէն ետքը, երբ կը տեսնենք կոր ամէն օր երիտասարդ-թուրք ազգայնամոլ ու այլամերժ քաղաքականութեան հետամուտ հայաջինջ վախճանները:*

*Զէյթունի խնդիր մը կայ մէջտեղը՝ որ ատենէ մը ի վեր մտքերը կը զբաղեցնէ ու կը չարչարէ:*

*Կիլիկեան Թանդուլին կարծես տրամաբանական ու անհրաժեշտ պսակումն է որուն կը հետապնդուի կոր հոն, այդ սեւ ու խորոխտ բարձունքն ի վեր:*

*Մէջքը կոտրեցին, կողերը պատռտեցին, ու հիմա անվթար մնացած գագաթին է որ կ'ուզեն իջեցնել վճռական հարուածը,* coup de grâce*ը:*

*Կը թուի թէ այսպէս է անոնց կամքը Օսմանցիութեան սահմանադրապաշտ ու ազատաշունչ առաջնորդներուն:*

*Ո՞վ կրնայ ատոր դէմ կենալ և այդ վճիռին դժնէ ու նանիր չարութիւնը ողոքել՝ չի լսուիր, չի հասկցուիր դատապարտուած ճշմարտութիւններու թախանձոտ յեղյեղումներովը:*

*Բայց թո՛ղ ներուի ինծի այս մասին ալ քանի մը բառ զրուցել օրուան մեր տէրերուն, մեր ճակատագրին վեհապետօրէն իշխողներուն:*

*Ի՞նչ կը տեսնէք հոս, ո՛վ երիտասարդ-թուրքեր, ի՞նչ կը կարծէք տեսնել Զէյթունի այդ ցից ապառաժներուն վրայ.— Հայ անկախութեան ձգտումներուն մարմնացում մը, Հայ ազգային անջատական դիտումնե-*

բուն կռուան մը, այնպէս չէ՞... Ո՛րքան միամիտ է ձեր այդ կարծիքը, կամ ո՛րքան նենգամիտ...։ Հայութեան, Հայ ազգասիրութեան տիրացուները միայն պիտի գուցէ չզգային, թէ ի՛նչ ամպածրար աւազի մը վրայ հիմնուած է Զէյթունի այդ աղէտաւոր առասպելը, զոր Համիտեան բռնակալութիւնը ատեն մը շահագործեց, և զոր ձերինները ալ կը շահագործեն կար այսօր Կիլիկիոյ մէջ ծայրէն միւսը՝ վերադրող Հայութիւնը ճզմելու և անոր գլխուն նորանոր փորձանքներ պատրաստելու համար։

Բայց ատե՛ն է որ այդ աւանդավէպը քանդուի, և ես համազուծիս ամբողջ կորովովս ահա՛ կը կանգնիմ ձեզի դէմ, ո՛վ երիտասարդ-թուրքեր, յայտարարելու համար ուրի՛շ ճշմարտութիւն մը, զոր պէտք էր գիտցած ըլլայիք արդէն, և որուն պէտք է ուշադրօրէն ու վերջնապէս հաւանիք, եթէ չէք ուզեր ձեր պատասխանատուութեան մին ալ նանախ անցը մեզ նորէն անիրաւել։

Այդ բացարձակ ճշմարտութիւնը սա՛ է թէ Զէյթունը երբե՛ք եղած չէ՛ և այսօր ալ չէ՛ ինչ ձեր երեւակայած մարմնացումը Հայ անկախութեան գոյութիւն չունեցող խաչալի մը։ Ի՞նչ կ'ըսեմ, Զէյթունը ազգասէր իսկ չէ՛։ Անիկա ինքիրմէ և իր անձնական խաղաղութենէն զատ ուրիշ բան սիրած չէ երբեք։ Այդ ափ մը ժողովուրդը, որուն կարճամտութիւնը ձեր աչքին փուշ է եղեր — այնքան յանդգնօրէն աններդաշնակ երեւալով հայկական ընդհանուր ապստամբութեան վերեւ, այդ ափ մը ժողովուրդը ՄԻԱՅՆ ու ՄԻՄԻԱՅՆ ԻՆՔԶԻՆՔԸ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒ համար է որ զէնքի դիմած է, ամէն անգամ որ իրեն պատահած է զէնքի դիմել։ Զէյթունի «ապստամբութիւն» ըսուածները՝ Զէյթունի «ինքնապաշտպանութիւն»ներն եղած են լոկ, ուրիշ ոչի՛նչ։ 95-96ին Համիտի սարքած հայկական ընդհանուր ջար-

դերուն զոր երթալու վախն էր որ Զէյթունը մնաց իր քարերուն ու սարերուն ետին պատնէշուելու։ Եւ վերջին 14 տարուան ընթացքին՝ Զէյթուն այն միակ վայրն եղաւ, — իմացէ՛ք, ո՛վ երիտասարդ-թուրքեր, — այն միակ վայրը, ուր Հայ յեղափոխականները չի կրցին ոտք կոխել, զի Զէյթունցին սպառնաց անոնց սպաննել կամ Համիտի կառավարութեան յանձնել զիրենք... Ահա՛ ձեզի՝ իր իսկական գոյնին ու նկարագրին մէջ՝ ձեր կողմէն Հայ Անկախութեան Ռահվիրայ երեւակայուած Զէյթունցին, որ ազնուութեան ու քաղաքական իմաստութեան դաս կրնար տալ դարերով դաշտաբնակ ու քաղքենի իր արենակիցներուն, եթէ անոնք պէտք ունենային այդ տեսակ դասի։

Եւ այս ալ մը անմիտ ու ազգային զգացումէ զուրկ ըլլալու աստիճան ինքնատէր ու «խոհեմ» ժողովուրդին չէ՞ք կրնար կոր ներել ջարդուիլ չուզելու եւ իր ժայռերուն ապահովութեան մէջ խաղաղօրէն ապրելու իր... այլանդակ յաւակնութիւնը...։

Երիտասարդ-թուրքե՛ր, դուք փոխանակ կասկածով ու խեթիւ նայելու քաջ Զէյթունին՝ հպարտ զգալու էիք անով, հոն տեսնելու էիք օսմանեան հայրենիքին հաւատարիմ ու անոր պատիւ բերող [illegible], եւ ձեր աղմուկաղոյն փառասիրութիւններէն մէկն ըլլալու էր անոնցմէ կազմուած գումարտակ մը ունենալ օսմանեան բանակին մէջ, իրենց բնորոշ տարազով, եւ ինչպէս Անգլիացին կը պարծենայ իր սկովտիական Հայլէնտէրներովը, դուք ալ պարծանք զգալու էիք՝ «Մեր Զէյթունցի զինուորները» ըսելով... Ա՜հ, որքան հեռու ենք Օսմանցիութեան այս գեղեցիկ ու պանծալի իրականացումներէն, ու որքան մխրճուած ենք, աւա՜ղ, ցաւերն, արիւնին, տիղմին ու յուսահատութեան մէջ...։

*Դիակները կը թաղուին, վէրքերը կը գոցուին, արցունքները կը ցամքին, արիւնները կը սրբուին, աւերները կը վերականգնին, Աղէտքը կը դարմանուի, բա՛յց, բա՛յց, մեր հոգիներուն մէջ կոտրած, խորտակուած, բան մը կայ, հաւատքի աւեր մը, յուսահատութեան ցաւ մը որ կը մնայ անդարմանելին...:*



# Կը Խաբուիք Կոր, Թուրքեր...



Տասնըհինգ տարին է ի վեր տիեզերական խղճմտանքը ձեզի դէմ իր զայրոյթն ու անէծքը կը պոռթկար, «քաղաքակիրթ» մամուլին ամենէն նշանաւոր օրկաններուն մէջէն, ձեր երէկուան բէժիմին տակ խոշտանգուող քրիստոնեայ ժողովուրդներուն տառապանքն ու արիւնը ձեր վզին բեռցնելով շարունակ:

Ձեր անկեալ վեհապետը, Համիտ, մէկէ աւելի անգամներ փորձեց գնել ճշմարտութեան ձայնը, և յաջողեցաւ ալ, երբեմն, կաշառքի ուժով, «լռութեան դաւադրութիւնը» սարքել եւրոպական լրագրութեան մէկ մասին մէջ, կամ աւելի անարգ գործի մը, ստութեան, կեղծիքի ու խեղաթիւրումի գործին յանձնառու ընել կարգ մը ախրահաչակօրէն խանութպան թերթեր:

Բայց ձեր ու մեր արիւն-արցունքէն քամուած Համիտեան ոսկիները չի կրցան մինչեւ վերջը բռնակալ արիւնազանգ բէժիմին ապահովել ծախուած, պոռնկացած մամուլին մեղսակցութիւնը: Մէկ **Տէկպաի** մը, **Ֆիկառօի** մը կամ պան մը նոյն իսկ **Թանի** մը փոխարէն՝ գտնուեցան տասնեակ ուրիշ մաքուր ու անխարդախ լրագիրներ, որոնք Միւնիր փաշայի, Եըլտըզի այդ հաւատարիմ ձեռնասունին, չի գործակատարները ճամբեցին իրենց դռներէն, գտնուեցան Քլէմանսօի, Ժօրէսի, Ռօշֆօրի, Ֆրանսիս տը Փրէսանսէի պէս հզօր ու արդա-

բակորով հրապարակագիրներ, որոնք կաշառուած մամուլը մերկացուցին ու խարանեցին, ամօթալի խաղքութեան մը մատնելով զայն և Համիտի ու իրեններուն գիւայլին ուրախութիւնը փարելուն մէջ թողուցին: Այնուհետեւ ճշմարտութեան առջեւ տակաւ տեղի տալ, զայն ընդունիլ ու խոստովանիլ ամչցուեցան այն թերթերն իսկ որոնք Համիտեան ոճիրներուն պաշտպանութեանը համար վարձուեր, «խոշոր գումարը» չօշափեր, գանձեր, ծախսեր էին:

Հիմա դերերը փոխուած են:

Կաշառքը ձեր կողմէն չէ՛ որ կը տրուի կոր Եւրոպացիներուն, այլ անո՛նց կողմէն՝ ձեզի, — կաշա՛ռքը, որ այս անգամ բարոյական հանգամանք մը ունենալուն համար նուազ աղտոտ, նուազ անարգ ու նուազ պըժգալի չէ՝ քան Համիտին արիւնոտ ոսկիներով կատարուած եւրոպական խղճի սակարկութիւններն ու գընումները...

Ահ, մեզի համար, — հաւատացէ՛ք, ո՛վ Թուրքեր, — արգահատանքի անսահման խռովք մըն է դիտել ձեր սա տարապայման խանդավառութիւնը, սա խելայեղ յաղթանակումն ու հրճուանքը՝ անցեալ շաբթուան Թանինի մէջ խմբագրականին առթիւ, որ ձեր «գործին կուգայ», ձեր սխալ ընթացքը կ'արդարացնէ, և զոր դրօշի մը պէս վեր բռնելով մեր աչքը խօթել կը ջանաք...

Դուք «կանխիկ դրամ»ի տեղ առեր էք այդ խօսքերը, անոնց անկեղծութեանը հաւատալ ուզեր էք, ու կ'աճապարէք մեզի ալ անոնցմով համոզել՝ վազ անցնելու Արդարութեան մեր տարրական պահանջներէն և մեր Հրաժարեալ Պատրիարքին բողոքներն ու խնդրանքները չեղեալ նկատելու...

Իրա՛ւ որ կը մեղքնանք ձեզի, ո՜վ անգիտակից թուրք եղբայրներ, ձեր այդ միամիտ յափշտակութեանը համար՝ Եւրոպական ճաճանչին ձեզի նպաստաւոր, ձեր Բէրլին ձեռնտու կարծուած հրապարակութեանց առջեւ:

Կը մեղքնա՛նք ձեզի, կ՚արտասուե՛նք ձեր վրայ, այո՛, որովհետեւ տասնըհինգ տարին է ի վեր մեր սեկերով վազցուած արիւնին վրայ այդ թերթերը հեղեղներով միայն վազցուցին, բայց մենք անոնց ներկայացուցած քաղաքակիրթ կեղծիքէն մինչեւ մեր կոկորդը զզուանքով լեցուած՝ կռնակնիս դարձուցինք իրենց եւ եկանք ձեր մօտ, ձեր գիրկին մէջ փնտռել մեր մարդկային իրաւունքներուն եղբայրական ճանաչումը, երբ Սահմանադրութեան առաջին ուխտաւոր արձագանգները լսեցինք՝ ազատութեան հեռաւոր ճամբաներուն վրայ...

Հիմա գո՞ւք էք, որ կ՚ազատէիք անոնց, գո՞ւք էք, որ կը կանչէիք անոնց ապականուած քուրջերուն, գո՞ւք էք, որ մեզի դէմ ձեր փառաւորը փախ տալով կ՚ելէք անոնցմէ, եղբայրներ, առջի օրուան ձեր այդ ամեհի, ու ո՛ն խուժան կեղծաւոր, անհաւատարմութեանց, այդ օ-surfilirkli...

Ձեր գործը մեզի՛ հետ է, ո՜վ թուրքեր, ու մենք ենք նորէն, որ՝ ձեռնէ զրկուած, անխտրուած մեր այս վիճակին մէջ իսկ, ձեր աչուըները պիտի բանանք այն ծուղակին դէմ, զոր անոնք լարեր են ձեզի համար... Ձգեցէ՛ք այդ օտարները, որոնք եղեր են ձեր ու մեր ազատ աչքերուն համար մեր հասարակաց հայրենիքին բարօրութեան հոգն բնաւ չունին, ձգեցէ՛ք այդ օտարները, եւ մենք մեզի հասկնանք, մենք մեզի խարսխենք մեր ներկայ կացութեան ու մեր փոխադարձ դիրքերուն ու յարաբերութիւններուն վրայ:

Ա՜յնքան չփացած, ա՜յնքան կուրացած էք, որ չէք կրնայիք հասկնալ, կռահել ձեր նկատմամբ անոնց հետեւած քաղաքականութեան ամբողջ ժպտուն ու ոսկեզօծ նենգութիւնը:

Ի՞նչ է վերջապէս եղածը, որուն համար այնքան խրար անցեր էք. — Թայմզէն վերջ՝ Թանին ալ կուգայ ահա իր քիչ մը ուշ մնացած դարպասն ընել ձեզի, ինքզինքն հերքելու, դեռ քանի մը ամիս առաջ՝ Ատանայի աղէտքին նուիրուած իր մէկ լուսաւոր տեսութեան հակառակ, Ատանայի մէջ Ռէժիի պաշտօնեայ որ եւ է հայատեաց Սիրիլիի մը չնախան սուտերուն ու զրպարտութիւններուն վարկ տալու չափ ինքզինքն ստորնացնելու գնով... Եւ դուք կը խնդաք, կը բերկրիք, կը հպարտանաք կոր ասոր համար, ո՜վ մոռացկոտ Թուրքեր... Ա՜հ, ե՞րբ պիտի բուժուիք օրը օրին ապրելու եւ ապագան չի կանխատեսելու ձեր այս հինաւուրց հիւանդութենէն... Ե՞րբ պիտի սորվիք, թէ Եւրոպական Դիւանագիտութեան այդ քամէլէօն-օրկանները եթէ մեզի կամ ձեզի նպաստաւո՛ր ալ, աննպա՛ստ ալ գրելու ըլլան՝ անպատճա՛ռ քաղաքական շահի մը, մասնաւոր ու շահախնդիր նպատակի մը համար է որ կը գրեն:

Այսօր ձեզի կը փայփայեն, ձեր անարդար դատը պաշտպանել կը ձեւանան՝ վաղը ձեզի ա՛լ աւելի դիւրաւ խուզելու, ձեր գլխուն ա՛լ աւելի մեծ փորձանք մը բերելու համար:

Չէ՞ք զգար կոր տակաւին որ այդ օտարներուն շահը, գետնաքարշ ու գերակշիռ շահը, կը պահանջէ այս երկիրը խառնակութեան, դժգոհութիւններու եւ եղբայրասպան ոգորումներու թատր մը տեսնել շարունակ: Անոնք կը քաջալերեն այսօր ձեր ազգայնամոլ այլամերժ ու դաժան ձգտումները՝ անոնց հետեւանք-

ներուն քաղաքական ու նիւթական հատոյթը գանձելու համար վայրը :

Մեր ցեղային նուիրագործուած իրաւունքներուն վրայ ձեր յանուն արշաւանքին մէջ խախտուած մի՛ զգաք ինքզինքնիդ օտարներու այդ շահադէտ թելադրանքներէն :

Օր պիտի գայ, որ անոնք մեր պէտքը զգալի պիտի ընեն ձեզի : Օր պիտի գայ, որ մեր քաղաքական աջակցութիւնը պիտի փնտռէք անոնց ամենազօրութիւններուն դէմ պաշտպանուելու համար, վայն չէ՛ թէ հիմա մեզ թրքացնելու ձեռնարկած ըլլա՛ք...

Ա՞յնքան աղաւաղ կը դառնիք ինքզինքնիդ ներքին ու զուտ խորամական վտանգներու դէմ։ Սահմանադրութիւնը այս երկրին ամէն կողմը իրագործեցիք, ձեր «ախպար ապրին» ուղն ու ծուծը թափանցել տուիք, ու՞ր է՝ հիմա ա՛լ ուրիշ բան չէ՞ մնացեր ձեզի ընելիք, եթէ ոչ Հայ ժողովուրդին ցեղային ինքնուրոյնութեան դարաւոր իրաւունքները բռնաբարել...

Օտարներէն մի՛ սպասէք ձեր ներքին քաղաքականութեան ուղեգիծը, մի՛ մոռնաք որ մեր ու ձեր տեւական ու անքակտելի համերաշխութիւնն է որ այս երկրին ճակատագիրը պիտի երաշխաւորէ ներքին ու արտաքին պատահականութիւններու դէմ... Մնացածը՝ խաբէութի՛ւն է ու ինքնախաբէութի՛ւն։

Աչքերնիդ չո՛րս բացէք, զի արդէն կը խաբուիք կոր, Թուրքե՛ր...։



# Ու Բարի Օտարները...



«La Revue»ի 1909 Նոյեմբ. 15ի թիւին մէջ՝ «Les Vèpres Ciliciennes» խորագրին տակ՝ մի ոմն Georges Vayssié, անկողմնակալութեան ու sofիւմաճpաահօնի ուշացած ցուցադրում մը կ'ընէ՝ Կիլիկեան աղէտքին շուրջը:

Ֆինօի հանդէսը, որ անմոռանալին Տիգրան Երկաթ այնքան հոյակապ էջեր նուիրեց Թուրքիոյ ճակատագրին ու Հայկական Դատին, վաճառելի խղճմտանքի մը կասկածը ներշնչած չէ մեզի: Եւ Կիլիկեան Արհաւիրքին այս ուսումնասիրութիւնն ալ իր հեղինակին նկատմամբ այդպիսի կասկած մը մեր մէջ յարուցանելու բնոյթը չունի:

Բայց կարդացէ՛ վերջ այդ յօդուածը՝ մարդ ընկճուած կը զգայ սա ցաւալին, սա ջլատիչ մտածումէն՝ թէ Կիլիկեան Աղէտքին պէս ահաւոր ու անպարագրելի եղեռնի մը հանդէպ՝ տակաւին կրնան կար գտնուիլ օտարներ, որ անկողմնակալութեան ու փաստերու մանրազննին վերլուծման խղճահար — ո՛հ, ո՛րչափ — մտահոգութիւններով, քրտնաջան ճիգեր կ'ընեն դէպքերը բացատրելու, անոնց մեղմացուցիչ պարագաներ փնտռելու, անոնցմէ պատասխանատուութեան բաժիններ հանելու դահիճներո՛ւն ալ, զոհերո՛ւն ալ հաւասարապէս... Եւ այս բոլորը՝ հիմնուելով, մէկ կողմէն, այն շահախնդիր, նենգ ու ստայօդ հաւաստումներուն

վրայ որոնք Ջարդողներուն փառաբանիչներէն կը յաջող-ուին Ջարդի վաղորդայնէն իսկ՝, և որոնք Սատանա հաստատուած մէկ քանի չէ ու հայատեաց Եւրոպացի-ներէ — Սիրիլի անարգ անունէն — հաճոյակատարօրէն կը վաւերացուէին, և միւս կողմէն՝ վերապրող հայերէն անոնց անղեկավարութիւններուն վրայ որոնց անկեղծու-թիւնը շատ յօժարութեամբ կասկածի դնելու տրամադ-րութիւնն ալ կը մատնուի օտար ուսումնասիրողին տողե-րուն մէջէն :

Թէզերու և փաստակութիւններու այս խաչաձեւու-մին ու ընդհարումին մէջ, անդին, կը մնացուի Կիլիկ-եան Աւերակոյտը, որ միակ անեղծի, անքօղարկելի, անժխտելի ճշմարտութիւնը կ՚աղաղակէ, սակայն. «Հա՛յ Իսլամները Հայերուն վրայ ինկան, անոնց տունը քան-դեցին, մուխը մարեցին, անոնցմէ տասնեակ հազարա-ւորներ կոտորեցին, անոնց կիները ու աղջիկները բռնա-պղծեցին, անո՛նց ունեցածն ու չունեցածը աւեր-ա-ւարի տուին... Նայեցէ՛ք այս փլատակներուն, նայե-ցէ՛ք այս կործանուած տաճարներուն, այս հրկիզուած հաստատութիւններուն, այս մոխրացած, գետին հաւա-սար դարձած բնակութիւններուն... Նայեցէ՛ք աւերակ-ներուն վրայ քաշկռտուող սովալլուկ ու անպատսպար թշուառներուն, որբերուն, որբեւայրիներուն... Նայեցէ՛ք և ըսէ՛ք, թէ այս բոլորը վիճաբանութիւն կը վեր-ցնե՞ն...» :

Պ. Ժօրժ Վայսիէ գրքե՛րն ալ մոխիր ըրեր է, գտնե-նե՛րն ալ : Սասունցիներուն պատմութիւնը մեզի համար նորութիւն չունի, բայց եկեղեցիներունն ալ կրկնու-թիւնն է պարզապէս այն կարգի զրպարտութիւններուն ու քաշքշուք բարբառանքներուն, որոնք կաշառածներու-յանձնարդ օրերն իսկ Figaroին ու Journalին մէջ հրատ-

ցուեցան Ատանայի հայատեաց օտարներուն կողմէ՝ ապա-Թղթակիցներու խողովակովը:

Հայերը Կիլիկեան Թագաւորութիւն մը հաստատելու ձեռնարկեր են եղեր... Գաղտնի ընկերութիւններ կազմեր են եղեր այս նպատակով... «Ակիտացիան» մինչեւ դպրոցներն ու եկեղեցիները մուտ գտեր է եղեր... Թատերական ներկայացումներ տուեր են եղեր ուր Տիգրան Թագաւորը կուգայ եղեր Թուրքերը անիծել և քարոզել ամէն Հայու պարտականութիւնը աշխատելու ազգային անկախութեան համար... Ատանայի Առաջնորդ Մուշեղ Եպիսկոպոսը—խե՛ղճ, վայրագօրէն զրպարտուած Սրբազանս— եկեղեցին բեմէն՝ իր սքեմին տակէն՝ երկու հատ րէվօլվէր հաներ է եղեր օր մը, և զանոնք ժողովուրդին երկարելով պոռացեր է եղեր. «Ահաւասի՛կ, ո՛վ Հայեր, այն աղօթքները, որոնց պէտք ունինք հիմա: Ծախեցէք մինչեւ ձեր շապիկը, և զէնքեր գնեցէք անիծեալ Թուրքէն ինքզինքնիդ ազատելու համար»...:

Պէտք կա՞յ այլ եւս հերքելու այս չնական սուտերը, որոնք Ոճիրէն վերջը հնարուեցան, Ոճիրը արդարացնելու դժոխային դիտումներով:

Պ. Վայսիէի յօդուածին մէջ հայերուն դէմ բերուած ամբաստանութիւններէն հատ մը միայն իբրեւ նորութիւն մեր ուշադրութիւնը կը գրաւէ, և այդ մէկ հատին ալ բացարձակապէս անհիմն հանգամանքը կուգայ աւելորդ անգամ մըն ալ ապացուցանել Թրքական ամբաստանութեանց ամբողջ յօրինուածքին կեղծիքն ու ստութիւնը:

«Արտասահման հրատարակուող Հայ մամուլը, մանաւանդ Պօսթոն (Ամերիկա) հրատարակուող Ազգը եւ Հայրենիքը յօդուածներ կը հրատարակէին, զորս կարդալ ուզողին տրամադրութեան տակ կը դնենք, և ո-



Մուշեղեան վարժարանի կից Խոսքամիի գործարանին հորէն Ա. Կառավարութեան միջոցաւ հանել տրուած դիակները (33 հատ, մեծ մասամբ յօշոտուած):

րոնց մէջ ապստամբութեան ամենէն բացարձակ կոչը կ'ըլլար»...

Այս այնքան այլանդակ որքան վճռական հաւաստումը Թուրքերէն լսեր է Պ. Վայսիէ որ զայն խնամքով կը յիշատակէ իր յօդուածին մէջ։ — Ինքնին նշանակութիւն պիտի չունենար աշխարհիս միւս կիսագունդին մէկ հեռաւոր կէտին վրայ հրատարակուող երկու հայ շաբաթաթերթերու խօսքը՝ այսպիսի ծանրակշիռ խնդրի մը մէջ՝ երբ հայ մամուլին հետապնդած քաղաքականութիւնը պէտք էր գտնել իր Թուրքիոյ մէջ ունեցած օրկաններէն, առանց մինչեւ Ամերիկա երթալ փաստ փնտռելու փորձուելու։ Բայց մենք սանկ հոգեբանական նրբութիւններու վրայ չենք ուզեր յամենալ հոս, և ճակատը կը չափենք այն տաճիկին, այն հայուն, այն մարդկային էակին, որ Ատանայի կատարածէն առաջ և Սահմանադրութեան հռչակումէն վերջ Ազգի, Հայրենիքի կամ արտասահմանեան ո՛ և է հայ թերթի մէկ թիւը կարող ըլլայ բերել՝ ուր Թուրքիոյ դէմ «ապստամբութեան» ո՛ և է «կոչ» ուղղուած ըլլայ Հայերուն... Այսպիսի բան մը չի՛ կայ, չէ՛ եղած, չի՛ կրնար ըլլալ... Եւ այս վիթխարի սուտերը կը գլորուին օտար մամուլին մէջ պարզապէս հանրային կարծիքը Հայերուն դէմ նախապաշարելու համար։

Բայց մենք, զոհերս, ա՛լ կ'արհամարհենք այդ «հանրային կարծիքը», ինչպէս շատոնց արհամարհել սկսած ենք պաշտօնական Եւրոպան ու իր պառնկացած դիւանագիտութիւնը։

Մենք կ'առնենք ու կ'արհամարհենք հանրային կարծիքը այն օտարներուն, որոնք — Պ. Վայսիէի բառերովն իսկ — մեր աղէտներուն հանդէպ կրցան ու կրնան միայն մէկ երկու սուտ ինքնիրենց վճարել «արհա-

ւիրքի պզտիկ սարսուռը, գարնանային առտուան մը հանդիպումին անձնատուր, մէկ ձեռքերնին խորոված հացաչերտ մը և միւսին մէջ լրագիր մը»։

Միա՛կ բանը զոր պիտի կրնային ընել մեզի համար, և որուն շնորհը պիտի խնդրէինք թախանձագին իրենցմէ, ատիկայ ալ սա՛ էր որ չզբաղէին մեզմով ու մեզ հանդարտ ձգէին մեր ցաւին հետ։

Ու միտքս կուգայ նորէն Լեւոն Մկրտիչեան բարեկամիս մէկ սքանչելի խօսքը այդ օտարներուն երեսին նետուած Աղեքսանդրիոյ « La Réforme » թերթին իր յօդուածներէն մէկուն մէջ. «Դուք մեզ վարժեցիք մարդկային ընկերութենէն. մենք մարդեր չենք այլեւս մենք պարզապէս Հայեր ենք...»։



# Օսմանեան Արդարութիւն



*Հայկական տագնապը կը շարունակուի, հետզհետէ աւելի սուր ու աւելի շփոթ հանգամանք մը առնելով միանգամայն:*

*Կիլիկեան Աւերակոյտին վրայ Արդարութեան արեւածագը ողջունելու իր յամառ ու ցաւագին սպասումին մէջ՝ Հայութիւնը յուսախաբութեան դառնաթոյն բաժակներ կը պարպէ իրարու ետեւէ:*

*Ազգ. մեր Նախորդ Վարչութիւնը իր բովանդակ արդարախնդիր կորովն ու կամքորութիւնը սպառեր էր՝ Օսմանեան կառավարութեան մօտ ապարդիւն դիմումներու մէջ: Նորընտիր Վարչութիւնը՝ իր առաջին քայլին՝ կը բաղխի կառավարական չկամութեան պատուարին, ու ձեռնունայն կ'ընկրկի, զինաթափ ըլլալու յուսահատական տրամադրութեան մը մատնուած:*

*Դուրեան Սրբազան իր հրաժարեալի կեցուածքին մէջ կ'արձանանայ՝ մեր ազգային ցաւին ու բողոքին իբրեւ խորհրդակիր մարմնացում:*

*Խնդիրը Օսմանեան Խորհրդարանի Հայ անդամներուն, մեր* մէկուս *աղբարիկներուն է մնացեր՝ վերջնական լուծում մը յանգեցնել... Ասոնք — Հալաճեան, Արմէն Կարօ և Վարդգէս էֆէնտիներու բացառութեամբ— անցեալ ուրբաթ օր խորհրդակցութիւն մըն են ունեցեր Ազգ. Վարչութեան հետ, որուն ատենապետը, Ազարեան է-*

ֆէնտի, հաւանէր է ետ առնել իր հրաժարականը: Դեռ չենք գիտեր թէ ի՞նչ դուրս պիտի գայ այդ խորհրդակցութենէն, կամ ի՞նչ որոշուած է անոր: Բայց տրուած այս պարագաներուն մէջ՝ մարդկօրէն ուրիշ բան չենք կրնար երեւակայել որ առաջադրուած ըլլայ հոն, եթէ ոչ վերջին ժէսթի մը պատրաստութիւնը: Մեր մեպուսներէն ամենէն պերճախօսին, Զօհրապ Էֆէնտիին պարտադրուած ըլլայ թերեւս Կիլիկեան Դատը Օսմանեան Խորհրդարանին առջեւ հանելու գերագոյն փորձ մը: Ասիկա խղճի պարտք մըն է արդէն ազգին համար, որ չի կրնար համակերպիլ արդարութեան իրեն եղած անագորոյն զլացումին՝ առանց անգամ մը իր ներկայացուցիչներուն միջոցաւ բողոքի հզօր աղաղակ մը հնչեցնելու օսմանեան բարձրագոյն ատեանին առջեւ:

Անդին, Արդարութեան անպատկառ ոտնակոխումը կը շարունակուի՝ բոլոր դռներուն ետին և բոլոր ճամբաներուն մէջ... Ա՜հ, գոնէ քիչ մը ամօթխածութիւն, քիչ մը խորհրդապահութիւն դնէին այդ հրէշաւոր պղծութեան ցուցադրումներուն մէջ: Բայց չէ՛, մեր աչքին առջեւ, մեր քթին տակ, հանդիպած անկողինի կամ նստարանին վրայ մեզի կը պարզեն Արդարութեան լիրբ չնացումը, կարծես մեր սուգը նախատելու, մեր կսկիծը ծաղրելու, մեր վիրաւոր արժանապատուութիւնը անարգելու դիւային վայրագութեամբ մը:

Մէյ մը սա Սթամպօլի կոյուղիները նայեցէ՛ք... Պապ-Ալիի պողոտային վրայ կը հանդիպիք Իհսան Ֆիքրիին, որ օրօրալէն-չորրորալէն կ'երթայ, գրավաճառներու ցուցափեղկերուն առջեւ կանգ կ'առնէ, ծանօթներու և բարեկամներու բարեւները կ'ընդունի ու կը փոխանակէ, սրճարանները կը բազմի, սուրճ մը, Նարկիլէ մը, և

*անա՛ նախարարական դուներէ կը մտնէ կ'ելլէ, Բերա կանցնի, Օթէլ Ռուայալը կը հանգստանայ, Թօքաթլըեանին կը ճաշէ, ու չեմ գիտեր որ կողմնակի փողոցները կը յօմանայ...*

*— Ի՞նչ գործ ունիս հոս, գաղա՛ն, որ հազարաւոր անմեղներու արիւնը մտնելէ կը դառնաս...*

*Երեսդ կը նայի, արհամարհոտ, ու խրոխտաբար կը պատասխանէ.*

*—Այո՛, կը հասկնամ, աքսորեալ կը կարծէիք զիս, բայց աքսորավայրս չի սիրեցի, Եգիպտոս գացի գործերս կարգադրելու, հոս եկայ Հիլմի փաշային հետ տեսակցելու, մօտերս իր բարձր հաւանութեամբը Իզմիր պիտի հաստատուիմ... աքսորուի՛մ...*

*Ու կը ժպտի, սինիք ժպիտովը ոճրագործներու, որոնք իրենց «գործը գիտեն», որոնք իրենք զիրենք ապահոված են արդարութեան պատուհասին դէմ, ու լեզու կը հանեն անոր...*

*Բայց ասդին դարձի՛ր, ու տե՛ս սա ձորձերու մէջ քաշկռտուող մարդը, որ Բերայի շիտակ ճամբուն վրայ մուրացկանի մը ողբալի երեւոյթը կը պտտցունէ:—Չե՞ս ճանչնար զինքը: Սիսի զինուորական հրամանատար Մէհմէտ էֆէնտին է, զոր Հայերը պաշտպանած, պահպանած ըլլալուն համար պաշտօնանկ ըրեր և իր* օղուխ-չօճուխով *անօթի ու թշուառ ձգեր են...*

*— Բարե՛ւ, ազնի՛ւ, պատուակա՛ն մարդ, աս ի՛նչ վիճակ է քու վիճակդ, ի՞նչ եղաւ քեզի...*

*—Ի՞նչ ընեմ, բարեկա՛մ, ասիկա իմ վարձատրութիւնս է... Զիս պաշտօնանկ ըրին Հայերը փրկած ըլլալուս համար, և ես այսօր թշուառութեան մէջ եմ...*

*Ու այս դժնդակ, այս ահռելի, այս սիրտ բզքտող*

ու հաւատք սպաննող իրականութեան վկայ ըլլալէ վերջը, դեռ պիտի յուսա՛նք, դեռ պիտի սպասե՛նք արդարութեան, դեռ պիտի ապրի՛նք այս երկրին մէջ, դեռ անուշ բարեկամներ պիտի ուզեն որ խօսինք, գրենք, գործենք ապագայի լաւագոյն կարելիութիւններու վստահութեամբը... Ով ինքնախաբ խեղճութիւն...։

ՎԵՐՋ

# ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿԸ



ԶԱՐԻՖԻՆ ՀԱՆԴԻՊ Ա.

## ԿԻԼԻԿԵԱՆ ԱՐՇԱՒԻՐՔԸ



## ԿԻԼԻԿԵԱՆ ՍԱՐՍՈՒՌՆԵՐ

## ԿԻԼԻԿԵԱ, ՄՂՁԱՒԱՆՋԸ

